### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8 — ՕԳՈՍՏՈՍ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ



### ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



### ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ



### ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



### ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

# Содержание





# ՀՈԴՎԱԾՆԵՐ


Բ. Վ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու


## ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՖՈՐՈՒՄԸ

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայում կայացած հունիսյան խորհրդակցությունը խոշոր իրադարձություն եղավ ժամանակակից աշխարհի հասարակական-քաղաքական կյանքում: Խորհրդակցությունը մեկ անգամ ևս հաստատեց, որ արդիականության արմատական հարցերը կարող են լուծվել միայն կոմունիստների մասնակցությամբ: Կոմունիստներն արտահայտում են աշխատավոր մարդկության կենսական շահերը, պայքարում սոցիալական և ազգային առաջադիմության համար: Կոմունիստների համաժողովն ընդունեց հիմնական փաստաթուղթը՝ «Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները արդի էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի գործողությունների միասնությունը»:

Խորհրդակցության մասնակիցները քննարկեցին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի տոնակատարության հարցը և միահամուռ հավանություն տվեցին «Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի մասին» դիմումին:

Խորհրդակցությունն աշխարհի ժողովուրդներին դիմեց «Անկախություն, ազատություն և խաղաղություն Վիետնամին», «Խաղաղության պաշտպանության» կոչերով, միաժամանակ ընդունեց այլ կարևոր փաստաթղթեր:

Խորհրդակցության փաստաթղթերում, պատվիրակությունների ներկայացուցիչների ելույթներում տրված է ժամանակակից աշխարհի սոցիալ-քաղաքական ճշմարտացի բնութագիրը՝ մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական կիրառման օրինակ: Մեր օրերում աշխարհում հեղափոխական պրոցեսներ են ծավալվում: Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում միավորվում են արդիականության երեք մեծ ուժեր՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, միջազգային բանվոր դասակարգը և ազգային-ազատագրական շարժումը: Իմպերիալիզմը սոցիալական պրոգրեսի գլխավոր խոչընդոտն է, կոմունիստական շարժման գլխավոր հակառակորդը: «Ժողովուրդները,— խորհրդակցությունում իր ելույթում ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,—

ճխստ հաշիվ են ներկայացնում իմպերիալիզմին։ Նրա մեղքով չլուծված են մնում այն արմատական պրոբլեմները, որոնք սուր կերպով ծառացած են մարդկության առջև և որոնք մարդկությունը կարող էր հաջողությամբ լուծել արդեն այսօր»։

* * *

Պատերազմը և խաղաղությունը, ինչպես նաև պատերազմի ու խաղաղության գաղափարները եղել են և այժմ էլ մնում են ժողովուրդների հուզմունքի էական շարժառիթները։ Ավելին. մեր օրերում մարդկության սոցիալական ճակատագրի մեջ ունեցած դրանց դերը հասնում է գագաթնակետին։ Պատերազմ մղելու միջոցների արմատական փոփոխությունների բերումով հասարակական զարգացման հեռանկարները զգալի չափով կախման մեջ են ընկնում այն բանից, թե պատմական պրակտիկայով հնարավորություններից որը կարող է իրացվել՝ պատերազմը, թե՞ խաղաղությունը։ Ռեալիստորեն գնահատելով իրականությունը, մեծագույն պատասխանատվություն զգալով ժողովուրդների բախտի համար, ՍՄԿԿ-ն և մյուս կոմունիստական ու բանվորական կուսակցություններն իրենց ուշադրությունը կենտրոնացրել են խաղաղության ապահովման, մեր դարի արմատական պրոբլեմներից մեկի լուծման վրա։ Ելնելով լենինյան հիմնական գաղափարներից, մի անգամ ևս նրանք բացահայտեցին պատերազմի և խաղաղության դիալեկտիկան, այդ հակադրությունների զարգացման տենդենցները, դրանք դարաշրջանի սոցիալական կյանքի բաղադրատարրերը դառնալու կոնկրետ մեխանիզմները և ուղիները։ Դրա հետ միասին 1969 թ. հունիսին Մոսկվայում կայացած միջազգային խորհրդակցությունում կոմունիստները նորից ահազանգեցին, կոչ անելով մարդկությանը՝ միավորել ուժերը պայքարելու ընդդեմ ջերմամիջուկային պատերազմի, հանուն խաղաղության, դեմոկրատիայի, հասարակական առաջադիմության, սոցիալիզմի։

Պատմության մեջ առաջին անգամ Մարքսն ու Էնգելսն էին, որ խաղաղության պրոբլեմները արծարծեցին պատմության մատերիալիստական ըմբռնման, հետևաբար ճշմարիտ գիտության տեսակետից։ Գիտական կոմունիզմի հիմնադիրները առանձին խաղաղարարների հակապատերազմական պամֆլետների թղթակույտերի վրա բարձրացրին պատերազմների սոցիալական էության և դրանց հաղթահարման պայմանների մատերիալիստական ըմբռնման կուռ շենքը։ Նրանք բացահայտեցին պատերազմի և քաղաքականության, քաղաքականության և էկոնոմիկայի կապը, ցույց տվին, որ պատերազմը մեկ երկրի կամ մի քանի երկրների տիրապետող դասակարգերի քաղաքականության գործիքն է, որի միջոցով ավելի են հարստանում կեղեքողները բացարձակ ավարի, ռազմատուգանքների կամ այլ եղանակներով։

Պատերազմների սոցիալական էության, դրանց դասակարգային բնույթի և նպատակի ըմբռնման այդ մտավոր սխրագործությունը շարունակեց Վ. Ի. Լենինը պատմության նոր փուլում։ Մոնոպոլիաների տիրապետությունը բնորոշելով որպես պարազիտային և մեռնող կապիտալիզմ, Լենինն անվարան մնաց պրոլետարիատի առաջավոր դիրքերում, որի սուբյեկտիվ շահերը ներդաշնակ են հասարակական առաջադիմության օբյեկտիվ պահանջներին։ Պատմական պրոցեսի էության և բովանդակության լենինյան ըմբռնման մեջ



առանձնահատուկ տեղ են գրավում պատերազմի և խաղաղության հարցերն այն դարաշրջանում, որի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցումն է։

Եթե առաջին համաշխարհային պահերազմին նախորդած ժամանակաշրջանում և պատերազմի տարիներին Լենինի հիմնական հոգսն էր թույլ չտալ, որ բանվոր դասակարգին, աշխատավորական մասսաներին մոլորեցնեն սոցիալ-շովինիստական ֆրազով, հակազդել նացիոնալիստական շմոլքի բորբոքմանը և, մերկացնելով պատերազմի դասակարգային, իմպերիալիստական բնույթը, ստեղծված ճգնաժամային իրադրությունն օգտագործել ի շահ հեղափոխության, ապա մեծ Հոկտեմբերից սկսած առաջ եկան փոփոխություններ։ Որակապես նոր պայմաններում Լենինն սկսեց որոնել նոր լուծումներ, որոնք պետք է ապահովեին պատերազմի, խաղաղության և հեղափոխության հարցերում պրոլետարական լայն զանգվածների պատկերացումների առավելագույն համապատասխանությունը պատմական նոր պայմաններին և համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման նոր պահանջմունքներին։

Ի տարբերություն կապիտալի անբաժան տիրապետության ժամանակաշրջանի, երբ Լենինը ժխտում էր իմպերիալիստական պատերազմը դեմոկրատական հաշտությամբ ավարտելու հնարավորությունը, նույնիսկ մեկ երկրում սոցիալիստական հեղափոխության դեպքում նա ձևակերպեց նոր գաղափարներ։ Հակառակ դոկտրինյորների «միակողմանի, այլանդակ, մեռյալ» պատկերացումների, նա ուղղակի նշեց, որ առաջին անգամ իրական հնարավորություններ են ստեղծվել հաջող պայքար մղելու հանուն դեմոկրատական հաշտության, հանուն միջպետական հակասությունների լուծման հին, իմպերիալիստական եղանակի ավարտման, նոր, հակաիմպերիալիստական եղանակի։ Ավելին, հեղափոխական պայքարի մեծ տեսաբանը և պրակտիկը հաշտության դեկրետով կատարեց այն առաջին քայլը, որը պատմական պրակտիկայի բերումով դարձավ ձևակերպված նոր գաղափարների ճշմարտացիության չափանիշը։

Լենինյան նոր գաղափարների էությունը, նախ, արտահայտում էր պատերազմի, խաղաղության և հեղափոխության հարաբերակցության բնույթի դիալեկտիկան. երկրորդ, մերկացնում էր տարբեր պայմաններում՝ խաղաղության և պատերազմի պայմաններում պրոլետարիատի ազգային և ինտերնացիոնալ շահերի հակադրման գիտականորեն սնանկ և քաղաքականորեն ռեակցիոն կոնցեպցիան, որի հեղինակներն էին երկրորդ ինտերնացիոնալի լիդերները, երրորդ, ժխտում էր պատերազմների ճակատագրական անխուսափելիությունը պատմության նոր փուլում, որը բնութագրվում է, մի կողմից՝ Ռուսաստանի պես վիթխարի երկրում կատարված սոցիալիստական հեղափոխության փաստով, իսկ, մյուս կողմից՝ գիտատեխնիկական հեղափոխությամբ, որի անխուսափելի հետևանքը պատերազմի այնպիսի կործանարար միջոցների աճն է, որոնք հնարավոր են դարձնում բացառելու պատերազմը քաղաքականության զինանոցից, բոլոր դասակարգերի նպատակների իրագործման միջոցներից։

Այն պատմական փաստը, որ Լենինը, հանուն սոցիալիստական հեղափոխություն կատարած միակ երկրում հասարակության կյանքի արմատական նորացման, հաշտությունը գերադասեց «հեղափոխական պատերազմից», որ մղվում էր համաշխարհային պրոլետարական հեղափոխության վե-

րացական հնարավորության կարծեցյալ շահերի օգտին, պրոլետարական
առաջնորդի միանշանակ ակտը չէր: Դա սոցիալիստական հեղափոխության
նոր տեսության և նոր իրադրության նոր պահանջների ծնունդ հանդիսացող
գաղափարների և գործողությունների բաղկացուցիչ մասն էր. դա շուտով
վերածվեց ինքնուրույն կոնցեպցիայի, որը հսկայական ազդեցություն գոր-
ծեց հեղափոխության զարգացման հետագա ընթացքի վրա: Հաշտության
դեկրետը ձևավորված կոնցեպցիայի առաջին փաստաթուղթն էր: Դրան հա-
ջորդեց Բրեստը: Մերժելով իր բազմերանգ ընդդիմախոսների բազմազան,
հուզական «փաստարկումները», Լենինը հասավ Բրեստի հաշտության պայ-
մանագրի կնքման:

Դա դասակարգային պայքարի պատմության մեջ ոգու և գործողության
մի անօրինակ սխրագործություն էր: Վերանայվում էին նախորդ դարաշրջա-
նում տարածված պատկերացումները պատերազմի, խաղաղության և հեղա-
փոխության հարաբերակցության վերաբերյալ: Խաղաղությունը սկսեց հա-
կադրվել պատերազմին ո՛չ միայն որպես պրոլետարիատի դասակարգային
տակտիկա, այլև ստրատեգիական շահերի արտահայտություն, սոցիալիզմի
համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման արտահայտություն:
Իր լիակատար ծավալմամբ սոցիալիստական հեղափոխությունը ամբողջովին
պարտական էր դառնում ոչ թե պատերազմին և նույնիսկ ոչ թե «համաշխար-
հային հեղափոխական հրդեհին», այլ խաղաղությանը: Խաղաղությունը, և
բնավ ոչ պատերազմը, դառնում էր նոր հասարակարգի հաղթանակի անհրա-
ժեշտ պայմանը: Խաղաղությունը դարձավ հեղափոխության ինքնազարգաց-
ման, երկրի ներսում գոյություն ունեցող և առաջացող հակասությունների
լուծման արտաքին պայմանը:

Դրական լուծումների հետ մեկտեղ լենինյան այս հարցադրումը կազ-
մում էր բանվորական շարժման ներսում «ձախ» հեղափոխական ֆրազի և
հեղափոխական ավանտյուրիզմի դեմ մղվող պայքարի հիմքը: Իսկ այդպիսի
պայքարի անհրաժեշտությունը թելադրվում էր հեղափոխական փոթորկի և
գրոհի ժամանակաշրջանում ծայրահեղ հեղափոխական սենտենցիաների և
թեթևամիտ գործողությունների սիրահարների բնական բազմապատկումով:

Պատերազմի, խաղաղության և հեղափոխության փոխհարաբերություն-
ներում Լենինի կողմից նոր «ենթակարգում» մտցնելը էական դեր խաղաց ո՛չ
միայն իր ժամանակի գործնական քաղաքականության տեսանկյունից: Դա
խորապես բովանդակալից է և մեթոդոլոգիական նշանակություն ունի: Ընդ
որում, ինչպես վկայում են հեղափոխական և բանվորական ու կոմունիստա-
կան շարժման տասնամյակները և դրանց հետ կապված պայքարն ընդդեմ
իմպերիալիստական պատերազմների, այդ սկզբունքային, լենինյան դրույթի
մեթոդոլոգիական նշանակությունը դեռևս պահպանվում է: Այսօր դա գոր-
ծում է ճիշտ այնպես, ինչպես կես դար առաջ:

Դրա անվիճելի ապացույցն այն ընդհանուր ոգին է, որ տիրում էր կոմու-
նիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի խորհրդակցու-
թյունում: Միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործիչների
ելույթներում, խորհրդակցության հիմնական փաստաթղթում՝ «Իմպերիա-
լիզմի դեմ մղվող պայքարի խնդիրներն արդի էտապում և կոմունիստական
ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ու-
ժերի գործողությունների միասնությունը», «Խաղաղության պաշտպանության
կոչում» գերակշռում էր միջազգային շարժման մյուս բոլոր խնդիրների հան-



դեպ պատերազմի կանխման պայքարի առաջնությունն ապահովելու անհրա-
ժեշտության մոտիվը: Այդ հարցադրման միտքն այն է, որ պատերազմի և
խաղաղության պրոբլեմի լուծման շուրջն են կենտրոնացած արդիականու-
թյան մնացած բոլոր կոնֆլիկտները: Այս առաջին: Երկրորդն այն է, որ ա-
ռանց պատերազմի կանխման խնդիրը լուծելու սոցիալիստական հեղափո-
խության կոչը նույնպիսի դատարկ ֆրազ է, նաև այն, ըստ որի համաշ-
խարհային սոցիալիստական հեղափոխության ուղին իբր միայն նոր համաշ-
խարհային պատերազմն է: Կոմունիստների գործողությունների ծրագրում
համաշխարհային ջերմամիջուկային աղետը կանխելու պայքարի առաջնա-
հերթ նշանակության հատուկ ընդգծումը թելադրված է, վերջապես, նաև այն
տխրահռչակ թեզը պսակազերծելու անհրաժեշտությամբ, թե «կամ պատե-
րազմը կհասցնի հեղափոխության, կամ հեղափոխությունը կկանխի պատե-
րազմը», և ժամանակակից օպորտունիզմի այլ ենթադրություններ:

Ձգտելով հասնել իմպերիալիստական պատերազմների բացառման, ու-
րեմն և՝ հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գո-
յակցության քաղաքականության սկզբունքների իրականացման, կոմունիստ-
ները, սակայն, չեն բացարձակացնում այդ կուրսը, այն, Լենինի խոսքերով
ասած, չեն դարձնում «դոգմա բառիս վատ իմաստով, ինչ որ մեռած, կարծ-
րացած, քարացած բան» (Երկեր, հ. 14, էջ 123): Կոմունիստները իրենց
հակապատերազմական գործունեությունը երբեք չեն հակադրում պայքարի
մյուս բոլոր ձևերին, առանձնապես դասակարգային պայքարին, ինչպես դա
փորձում են ներկայացնել «ձախ» օպորտունիստները: Իմպերիալիստական
պատերազմների դեմ մղվող պայքարը չի հակադրվում ոչ առանձին կապի-
տալիստական երկրի ներսում պրոլետարիատի դասակարգային պայքարին,
ոչ էլ ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարին:

Իմպերիալիստական պատերազմների, հնարավոր համաշխարհային
ջերմամիջուկային պատերազմի կանխման համար մղվող ճակատամարտը
ո՛չ միայն մարքսիստ-լենինյանների կարծիքով, այլև օբյեկտիվորեն հանդի-
սանում է դասակարգային պայքարի յուրահատուկ ձև, միջպետական մակար-
դակով մղվող դասակարգային պայքարի ձև:

Նավալվելով և անշեղորեն սրվելով «վերազգային» մասշտաբով, այդ
պայքարն իր էությամբ դասակարգային է: Այն արտահայտում և պաշտպա-
նում է բանվոր դասակարգի, բոլոր սոցիալիստական և մերձսոցիալիստա-
կան ուժերի արմատական շահերը: Այն ոչ միայն արտաքին, այլև միջազգա-
յին բարենպաստ պայմաններ է ստեղծում սոցիալիզմի, համաշխարհային
սոցիալիստական սիստեմի ինքնազարգացման համար, կապիտալիստական
տիրապետության կենտրոններում պրոլետարիատի դասակարգային պայքա-
րի ծավալման, ազգային-ազատագրական շարժման մեջ զարգացման ու-
կապիտալիստական ուղիների որոնումներն ընդլայնելու համար և, ինչպես
ընդգծվեց խորհրդակցությունում, կապիտալիզմի, նրա հակասությունների,
նրա անբուժելի խոցերի «ինքնաարտահայտման» համար:

Այլ կերպ ասած, միջազգային կոմունիստական շարժման մեջ պատե-
րազմի, խաղաղության և հեղափոխության «ենթակարգման» հարցերի վե-
րաբերյալ լենինյան գաղափարների և լուծումների հաստատումը, սկզբում
միայն Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակից և
մանավանդ սոցիալիստական պետությունների համաշխարհային սիստեմի
կազմավորումից հետո խաղաղության ապահովման խնդիրները առաջին

պլան մղելը, նախ արտահայտում են հասարակական կյանքի օբյեկտիվ պահանջմունքը «համաշխարհային զարգացման պատասխանատու պահին», երկրորդ, էական նշանակություն ունի համաշխարհային հեղափոխական պրոցեսի հաջողությունների համար, երրորդ, կազմում է այն պայքարի համաձայնեցված պլատֆորմը, որը մարքս-լենինյան կուսակցությունները մղում են բանվորական շարժման ներսում ու նրա սահմաններից դուրս՝ ամեն հնարավոր օպորտունիստական և անարխիստական հոսանքների ու դրսևորումների դեմ։

Դասակարգերի և քաղաքական կուսակցությունների կողմից իրականության, նրա հատուկ օրինաչափությունների օբյեկտիվ դիալեկտիկայի արտահայտումը միանշանակ չէ։ Ի տարբերություն պատմականորեն իր դարն ապրած և ռեակցիոն ուժեր դարձած դասակարգերի, բանվոր դասակարգը բոլորից շատ է շահագրգռված հասարակական առաջադիմությամբ։ Դա պայմանավորված է նրա հասարակական դիրքով։ Հանդիսանալով հիմնական արտադրաուժ, որը ստեղծում է գլխավոր նյութական արժեքները, բանվոր դասակարգը հետևողականորեն շահագրգռված է որքան կարելի է ճիշտ ընթանալ հասարակական զարգացման ուղիներով։

Ելնելով քննարկվող պրոբլեմի հսկայական նշանակության խոր ըմբռնումից, մարքս-լենինյան կուսակցություններն աննահանջ պայքար են մղում բանվոր դասակարգի տարբեր ջոկատների ազգային և ինտերնացիոնալ շահերի ու պարտականությունների հակադրման դեմ՝ խաղաղության և պատերազմի ոչ-միատեսակ պայմաններում։ Պետք է ընդգծել, որ այս հարցում ևս կոմունիստները հետևում են լենինյան ավանդույթին, զարգացնում են այն, հաշվի առնելով պատմության արդի էտապի առանձնահատկությունները։

Հայտնի է, թե Լենինը և լենինյանները ինչպիսի ուշադրություն էին նվիրում միջազգային պրոլետարական համերաշխությանը և ինչպիսի անհաշտություն էին ցուցաբերում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դավաճանների հանդեպ։ Դեռևս դարասկզբին բնութագրելով սոցիալ-դեմոկրատիայի դավաճանությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմին, Ռոզա Լյուքսեմբուրգը զայրույթով գրել է. «Կոմունիստական մանիֆեստի պատմական կոչն այժմ էական լրացում է ստանում և, Կաուցկու ուղղմամբ, հնչում է այսպես՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք խաղաղ ժամանակ և իրար կոկորդ պատռե՛ք պատերազմի ժամանակ»»։ Հոկտեմբերյան հեղափոխությունը, բարձր պահելով «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» սրբազան կոչը, պատմական փորձի ուժով բացահայտեց միջազգային պրոլետարական համերաշխության մեծագույն իմաստը, հատկապես հեղափոխության և պատերազմների դաժան փորձություններում։

Բայց իրականության դիալեկտիկան չշրջանցեց պատերազմի և խաղաղության պրոբլեմի նաև այդ կողմը։ Եթե դարասկզբին բանվորական շարժման մեջ ստեղծվեցին ներմուծված պատկերացումներ միջազգային պրոլետարական համերաշխությունը խաղաղ ժամանակ ապահովելու և պատերազմի պայմաններում պրոլետարներին իրարից անջատելու անհրաժեշտության մասին (հայրենիքը պաշտպանելու նպատակով, «մոռանալով», որ այդ հայրենիքը բուրժուական է, ուստի և խոսքը կարող է վերաբերել պատերազմող երկրների ազգային բուրժուազիայի շահերի օգտին պրոլետարիատի տարանջատմանը), ապա այժմ դրությունը փոխվել է։ Տեղի է ունեցել հայացքների կերպարանափոխություն։ Սկսել է տարածվել այլ միտք՝ տարանջատում խաղաղ պայմաններում, միավորում պատերազմի ժամանակ։ Ընդ որում, դա «փաստարկվում է» տեղական պայմանների յուրահատկությամբ, պայքարի այն խնդիրների և ձևերի առանձնահատկությամբ, որոնք բխում են տարբեր երկրների սոցիալ-տնտեսական զարգացման ոչ-միատեսակ մակարդակից, մի բան, որը ետին պլան է քաշվում իբր միայն պատերազմների պայմաններում։ Սակայն այս դեպքում էլ դժվար չէ տեսնել, որ սայլը դրված է եզից առաջ, ինչպես որ երևույթների նկատմամբ դասակարգային մոտեցման մարքսիստական սկզբունքը փոխարինված է նացիոնալիստականով։ Իսկ դա ոչ միայն գիտականորեն սնանկ է, այլև քաղաքականապես ոչ անվտանգ, քանի որ աչքաթող է արվում, որ պատերազմը քաղաքականության շարունակությունն է, որ պատերազմին նախորդում է քաղաքական պայքարը, որը դասակարգային պայքար է իր ամբողջ ծավալով, և որ, հետևաբար, պրոլետարիատը, նրա ստեղծած սոցիալիստական պետությունները, ամբողջ միջազգային կոմունիստական շարժումը, չամրապնդելով ինտերնացիոնալ համերաշխությունը, չապահովելով միասնական գործողություններ, չեն կարող թողտվություն չանել ի նպաստ պատերազմի։

Հենց այս տեսանկյունով էլ եղբայրական կուսակցությունները Մոսկվայի միջազգային խորհրդակցությունում համակողմանիորեն քննարկեցին ազգային և ինտերնացիոնալ փոխհարաբերությունների ոլորտում օպորտունիստական պատկերացումների դեմ մղվող պայքարի հարցերը։ Նրանք նշեցին, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացման, այդ սիստեմին բնորոշ բոլոր ներհատուկ հակասությունների սրման պայմաններում, այսպես կոչված՝ ռազմաարդյունաբերական կոմպլեքսի, այսինքն՝ խոշորագույն մոնոպոլիաների և պետական ապարատի զինվորականության դաշինքի, իմպերիալիստական շատ պետությունների քաղաքականության վրա այդ դաշինքի չարագուշակ ազդեցության աճի պայմաններում չկա ավելի կարևոր խնդիր, քան իշխանության գլուխ կանգնած և օպոզիցիայում գտնվող կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական, հակամիլիտարիստական ուժերի գործողությունների միավորումը։ Որովհետև միայն սոցիալիստական պետությունների միասնության միջոցով, որը տնտեսական և ռազմական արդյունավետ հակազդող ուժ է ստեղծում իմպերիալիզմի ռազմական մեքենայի հանդեպ, միայն կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, ինչպես նաև ամբողջ աշխարհի մյուս դեմոկրատական կազմակերպությունների գործողությունների միասնության միջոցով կարելի է հաջողությամբ դիմագրավել իմպերիալիզմին՝ նրա ռազմական ոտնձգությունների մեջ։

Բայց կոմունիստների միասնության ու համախմբման կարելի է հասնել միայն աջ և «ձախ» օպորտունիզմի դեմ սկզբունքային պայքար մղելու միջոցով, որոնց միավորող սկզբունքը նացիոնալիզմն է։ Հանդես գալով տարբեր դրսևորումներով, այն միշտ էլ վնասաբեր է հակաիմպերիալիստական, մանավանդ հակամիլիտարիստական պայքարի պրակտիկայի համար։ Դրա ցայտուն օրինակն է Չինաստանի կոմկուսի ղեկավարության նահանջը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից, նացիոնալիզմի, մեծապետական շովինիզմի դիրքերը գլորվելը։ Գրեթե տասը տարի առաջ գրոհ սկսելով կոմունիստական շարժման սկզբունքային գծի վրա, Չինաստանի կոմկուսի ղեկավարությունն այդ գծի ռևիզիան պսակեց 9-րդ համագումարի որոշումներով։

Չինական այժմյան ղեկավարության մեծապետական դրույթների հետ անխզելիորեն կապված գերիշխանական նկրտումներն արդեն իրենց արտահայտությունն են գտել այն ընթացքի մեջ, որ տեղի է ունենում վատից դեպի վատթարագույնը, բանավեճից ու պառակտումից դեպի կապերի խզումը և թշնամական գործունեությունը, դեպի հակասովետական ուղղակի զինված գործողությունները։ Բայց դա էլ սահման չէ։ Երկրում մտքերը մասսայականորեն տոգորվում են շովինիզմի, չարամիտ հակասովետիզմի ոգով, բանվորներին ու գյուղացիներին ներարկում Չինաստանի փրկչական դերի միտքը, ժողովրդին կողմնորոշում «սոված մնալ և պատրաստվել պատերազմի», Սովետական Միության դեմ ուղղված ինչպես սովորական, այնպես էլ մեծ միջուկային պատերազմի։

Եվ այս ամենը կատարվում է արդի դարաշրջանում պատերազմի և խաղաղության պրոբլեմներին Չինաստանի ղեկավարների ընդհանուր մոտեցման շրջանակներում, Մաո Ցզե-դունի այն տխրահռչակ դրույթին համապատասխան, ըստ որի պատերազմը պատմական դրական երևույթ է, որի միջուկային տարբերակի կրակի մեջ հնարավոր է մարդկության կեսի ոչնչացումը։ Պեկինի տեսական դրույթները, քաղաքական արկածախնդրությունը, պատերազմական հիստերիայի մշտապես շիկացվող մթնոլորտը և հատկապես նրա պրակտիկ գործունեությունը տարակույս չեն թողնում, որ, ինչպես ասաց Լ. Ի. Բրեժնևը խորհրդակցությունում, «Չինաստանի արտաքին քաղաքականությունը փաստորեն կապերը խզել է պրոլետարական ինտերնացիոնալիզմից, կորցրել դասակարգային սոցիալիստական բովանդակությունը»։ Իսկ դա նոր մոմենտ է մտցրել հակաիմպերիալիստական միասնության պրոբլեմում։

Այս իրադրության մեջ, ընդգծեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարը, «կոմունիստական շարքերը խարխլելու, հակաիմպերիալիստական ուժերը տարանջատելու գծին մենք կարող ենք և պետք է հակադրենք համախմբման մեր հաստատուն կամքը, դեպի միասնություն տանող մեր գործերն ու համատեղ գործողությունները»։ Դա անհրաժեշտ է, մանավանդ որ, չարաշահելով կոմունիստական շարժման մեջ եղած տարաձայնությունները, բուրժուական պրոպագանդան կրակը կենտրոնացնում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի բուն սկզբունքի դեմ։ Բորբոքելով մանրբուրժուական կրքեր, նա թխեց և սկսեց տարածել «սահմանափակ սուվերենության» տխրահռչակ տեսությունը, որի համաձայն պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքն իբր ինքնըստինքյան ժխտում է բանվորական և կոմունիստական շարժման ազգային ջոկատների անկախությունը, սուվերենությունը, նրանց իրավահավասարության բուն հնարավորությունը։

Պրոլետարիատի ազգային շահերը նրա ինտերնացիոնալ շահերին հակադրելու օպորտունիստական կուրսի հակագիտականության ու քաղաքական ռեակցիոնության մերկացումը և այդ հարցի շուրջը իմպերիալիզմի գաղափարախոսների զանազան չարաշահումների դեմ մղվող պայքարը կազմում են արդի դարաշրջանում պատերազմի ու խաղաղության պրոբլեմի դրական լուծման համար կոմունիստների ընդհանուր պայքարի անկապտելի մասը։

* * *

Պատերազմի և խաղաղության հարցերում կատարվող արմատական փոփոխություններն առավել ճշտորեն են արտահայտում այդ սոցիալական



հակադրությունների դիալեկտիկան։ Մարդկության դասակարգային պատմության վեց հազար տարվա մեջ առաջին անգամ աշխարհում ստեղծվել է մի իրադրություն, երբ պատերազմը դադարում է ճակատագրական անխուսափելիություն, իսկ խաղաղությունը՝ ճակատագրական ժամանակավորություն լինելուց։

Մարքսիզմը նման սոցիալական իրադրության առաջացման պոտենցիալ հնարավորությունը, նույնիսկ անկասելիությունը կանխագուշակել է դեռևս անցյալ դարում։ Իսկ մեր դարասկզբում Լենինն արդեն հնարավոր համարեց կոնկրետացնել գիտական մատերիալիզմի հիմնադիրների կանխատեսությունը։ Լենինին է պատկանում պատերազմների բացառման բարենպաստ իրադրության բաղկացուցիչ մասերի միտքը, իրադրություն, որին հասարակական զարգացման օբյեկտիվ ընթացքով, նորագույն պատմական դարաշրջանի հիմնական դասակարգերի հակամարտության արդյունքների բերումով, վիճակված էր ստեղծվելու միայն XX դարի կեսերին։ Այդ իրադրության գլխավոր գործոնները Լենինը համարում էր, նախ՝ բանվոր դասակարգի դրության արմատական փոփոխությունները— սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական զարգացման շնորհիվ պրոլետարիատի վերածվելը իրավազուրկ և ստրկացված դասակարգից ազատ դասակարգի, դարաշրջանի սոցիալական պրոցեսներում տիրապետող և գերիշխող դասակարգի. երկրորդ՝ դարասկզբին նկատված հեղափոխությունը պատերազմ մղելու միջոցների ասպարեզում— պատերազմի միջոցների ավերիչ ուժի այնպիսի թռիչքը, որը նրան զրկում էր ամեն մի իմաստից, պատերազմը դարձնում քաղաքականության անպետք միջոց։

Հոկտեմբերյան հեղափոխության հետ առհասարակ հասարակության կյանքում, մասնավորապես պատերազմի և խաղաղության պրոբլեմների լուծման գործում սկսվեց բանվոր դասակարգի տեղի ու դերի արմատական փոփոխությունների վերաբերյալ լենինյան գաղափարների իրականացումը։ Բանվոր դասակարգը դարձավ այն առաջին աշխատավոր դասակարգը, որին հաջողվեց հեղափոխական պայքարի միջոցով ո՛չ միայն դուրս գալ նվաստացման ու ճնշվածության վիճակից, այլև ձեռք բերել տիրապետող դեր։ Դրա հետ մեկտեղ բանվոր դասակարգը, նվաճելով քաղաքական տիրապետություն, շարունակում է մնալ հասարակության հիմնական արտադրուժը, որը բազում թելերով կապված է այն ամենի հետ, ինչը առնչված է նյութական և հոգևոր արժեքների ստեղծման պրոցեսի հետ։ Այստեղից էլ նրա խոր, հաստատ հավատարմությունը խաղաղության գործին, հասարակության կյանքից պատերազմները բացառելու նրա շահագրգռվածությունը։

Սակայն դա բավական չէր բանվոր դասակարգին պատերազմների սանձազերծումը կանխելու ունակ գործոն դարձնելու համար։ Նրան սպասում էր զարգացման մեծ ուղի. հարկավոր էր, որ պրոլետարիատի դիկտատուրան ազգայինից (մեր երկրում գոյություն ունեցող և համաշխարհային քաղաքականությունը որոշելու անկարող դիկտատուրայից) վերաճեր ինտերնացիոնալ դիկտատուրայի (մի շարք երկրներում գոյություն ունեցող և համաշխարհային քաղաքականության վրա վճռական ազդեցություն գործելու ունակ դիկտատուրայի). հարկավոր էր, որ համաշխարհային հեղափոխական շարժման բոլոր ջոկատները դասակարգային հակաիմպերիալիստական մարտերի բովում առնականանային դառնալու համար մի գործոն, որն ունակ լիներ բացառելու արդի դարաշրջանում պատերազմների ճակատագրական բնույ-

թը։ Եվ բանվոր դասակարգը, համաշխարհային հեղափոխական շարժումը, հաղթականորեն անցնելով այդ խիստ բարդ ուղին, գտնվեցին պատմության օբյեկտիվ ընթացքով առաջադրված խնդիրների բարձրության վրա։

Մյուս գործոնը՝ նոր իրադրության այն բաղկացուցիչ մասը, որի շրջանակներում պատերազմները դադարում են ճակատագրական անխուսափելիություն լինելուց, կազմավորվեց փոքր-ինչ տարբեր ուղիներով, բայց ժամանակի տեսակետից՝ միևնույն ժամկետներում։ Առաջին համաշխարհային պատերազմը Լենինի մեջ կասկած չթողեց, թե արտադրաուժերի և ռազմական տեխնիկայի զարգացումը կհասնի այնպիսի մակարդակի, որը հետագա հասարակական առաջադիմության հնարավորությունն ուղղակի կախման մեջ կդնի պատերազմը հասարակության կյանքից բացառելու անհրաժեշտությունից։ Լենինը, Ն. Կ. Կրուպսկայայի վկայությամբ, ասում էր, թե «կգա այնպիսի ժամանակ, երբ պատերազմն այնքան կործանարար կդառնա, որ նա առհասարակ անհնար կլինի»․ երկրորդ համաշխարհային պատերազմը և հետպատերազմյան զարգացումը իրականություն դարձրին լենինյան հիպոթեզը։

Ատոմային ու ջրածնային զենքի, դրանք նպատակակետին հասցնելու միջոցների ստեղծումը շատ խոր տեղաշարժ հանդիսացան պատերազմի խորտակիչ կարողության գործում։ Ակներև դարձավ, որ փաստորեն անսահման կործանարար ուժ ունեցող նոր զենքն ինքը համաշխարհային պատերազմը դարձնում է քաղաքականության ոչ-պիտանի միջոց։ Ջերմամիջուկային զենքի գլոբալ գործադրման պայմաններում պատերազմն անիմաստ է դառնում հատկապես այն պատճառով, որ պոտենցիալ հակառակորդները ունեն հավասար չափով անսահմանափակ կործանարար հնարավորություններով օժտված զենք։

* * *

Պատերազմ մղելու նորագույն միջոցների հարկադրական մշակումն ու արտադրությունը, որոնց նպատակն է առաջադիմության ուժերը պահպանել իմպերիալիզմի միջուկային շանտաժից, հանդիսացան սոցիալիզմի դարակազմիկ ավանդը նախ՝ երրորդ համաշխարհային պատերազմը կանխելու և, երկրորդ, ավելի ընդհանուր խնդրի լուծման՝ պատերազմները քաղաքականության միջոցներից բացառելու գործում։ Պատերազմի միջոցները զարգանալով, պատերազմը զրկում են արդարացումից։ Սա է արդի դարաշրջանում պատերազմի և խաղաղության զարգացման օբյեկտիվ տրամաբանությունը։

Բայց համաշխարհային պատերազմի բացակայության համար մարդկությունը պարտական է ոչ միայն այդ տրամաբանությանը։ Վճռող են հանդիսանում բոլոր հեղափոխական առաջադիմական ուժերի կամքն ու գործողությունները, որոնց անձնվեր պայքարով անհաղթահարելի պատնեշ է կանգնեցվում նոր պատերազմի ճանապարհին։ Ընդգծելով այդ, միջազգային խորհրդակցության մասնակիցները հիմնական փաստաթղթում գրել են. «Մարդկությունը մեր դարի վերջին երրորդը թևակոխեց առաջադիմության և ռեակցիայի, սոցիալիզմի և իմպերիալիզմի ուժերի պատմական հակամարտության սրման պայմաններում...

Համաշխարհային հեղափոխական շարժումը, չնայած նրա առանձին ջոկատների կրած դժվարություններին և անհաջողություններին, շարունակում է հարձակումը։ Իմպերիալիզմը չկարողացավ հակադրոհների օգնությամբ ուժերի ընդհանուր հարաբերակցությունը փոխել իր օգտին։ Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների տնտեսական, քաղաքական և ռազմական հզորության աճի, ինչպես նաև նրանց խաղաղասիրական արտաքին քաղաքականության շնորհիվ, միջազգային պրոլետարիատի ելույթների, իմպերիալիզմի դեմ, ազգային ազատագրության համար պայքարող բոլոր մարտիկների ելույթների, խաղաղության պաշտպանության շարժման լայն թափի շնորհիվ հաջողվեց թույլ չտալ համաշխարհային պատերազմի սանձազերծում»։



Մոսկվա։ Կրեմլ։ 1969 թվականի հունիս։ Երկու շաբաթ շարունակ կոմունիզմի միջնաբերդին էր գամված համայն մարդկության ուշադրությունը։ Այստեղ բեղմնավոր կերպով աշխատում էին և կարևորագույն որոշումներ ընդունեցին նրանք, ովքեր ներկայացնում են հինգ մայրցամաքների կոմունիստների բազմամիլիոնանոց գնդերը։ Նրանք մշակեցին իմպերիալիզմի դեմ ուղղված համատեղ գործողությունների մարտական պլատֆորմ, նախագծեցին հակաիմպերիալիստական պայքարի ակտիվացման ուղիները, միջազգային կոմունիստական շարժումը հարստացրին պատմական նոր փորձով։ Շնորհակալությամբ և հույսով ընդունված խորհրդակցության արդյունքները արդեն սկսել են բեղմնավոր ազդեցություն ունենալ ամբողջ աշխարհի կոմունիստների պայքարի վրա, այն խիզախ մարդկանց, որոնք, Գորկու խոսքերով ասած, իմաստուն և անձնվեր կերպով, հպարտորեն ծառայում են ճշմարտությանը, արդարությանը, գեղեցկությանը և խաղաղությանը։

ՊՐԱՍԿՈՎՅԱ ԻՍԱԵՎԱ

# ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԸՄԲՌՆՈՒՄԸ
## (1917-1922 Թ.Թ.)

*Տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հնարավորության ու անհրաժեշտության լենինյան դրույթը սովետական պետության արտաքին քաղաքականության գլխավոր սկզբունքն է։ Այն ենթադրում է միջազգային վիճելի հարցերը լուծել բանակցությունների միջոցով, հարգել ժողովուրդների իրավահավասարությունը, պետական ամբողջականությունն ու ինքնիշխանությունը, չմիջամտել ուրիշ պետությունների ներքին գործերին, փոխադարձ շահավետության պայմանով համագործակցել էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի բնագավառներում։*

*Վ. Ի. Լենինը տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքի իրականացումը համարում էր անհրաժեշտ ու հնարավոր։*

*Խաղաղ գոյակցությունը դիալեկտիկական հասկացություն է։ Այն ներառնում է ինչպես համագործակցության, այնպես էլ պայքարի տարրերը։ Միջազգային ասպարեզում կապիտալիզմի և սոցիալիզմի միջև խաղաղ գոյակցության քաղաքականությունը չի տարածվում գաղափարական պայքարի և քաղաքացիական ու ազգային ազատագրական պատերազմների վրա։ Ի տարբերություն պացիֆիստների, կոմունիստները, դատապարտելով անարդարացի ու նվաճողական պատերազմները, բազմակողմանի օգնություն են ցույց տալիս սոցիալական և ազգային ազատագրական պայքար մղող ժողովուրդներին։*

*Մշակելով խաղաղ գոյակցության քաղաքականության գիտական հիմունքները, Լենինը ցույց է տվել, որ նրանք բխում են ո՛չ թե իմպերիալիստական պետությունների խաղաղասիրությունից ու բարյացակամությունից, այլ պետությունների միջև տնտեսական կապերի անհրաժեշտությունից, երկրագնդի վրա բնական ռեսուրսների անհավասար բաշխումից և միջազգային մասշտաբով աշխատանքի բաժանումից։ «Կա ավելի մեծ ուժ,— գրել է Լենինը,— քան թշնամի կառավարություններից կամ դասակարգերից ամեն մեկի ցանկությունը, կամքն ու վճիռը. այդ ուժը համաշխարհային ընդհանուր տնտեսական հարաբերություններն են, որոնք նրանց ստիպում են ոտք դնելու մեզ հետ հարաբերություններ պահպանելու այդ ուղին» (Երկեր, հ. 33, էջ 172)։*

*Խաղաղ գոյակցությանը նպաստող գործոններից են սովետական ժողովրդի հետ միջազգային աշխատավորության դասակարգային համերաշխությունը, իմպերիալիստական պետությունների միջև հակասությունների սրումը, գաղութների ազատագրական պայքարը մետրոպոլիաների դեմ։*

*Սովետական արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքը համաշխարհային հեղափոխական պրոցեսի գործոնն է, արդիականության բնորոշ գիծը։ Բուրժուական գաղափարախոսները ջանք ու եռանդ չեն խնայել աղավաղելու սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության կուրսը, մասնավորապես խաղաղ գոյակցության սկզբունքները։*

*Ժամանակակից բուրժուական պատմաբաններ ու հրապարակախոսներ՝ Է. Գուդմենը, Լ. Ֆիշերը, Ջ. Կեննանը, Գ. Ռոբերտսը, Մ. Շուլմանը, Ֆ. Շումանը, Է. Կարրը և ուրիշներ, հակառակ ճշմարտության, փորձում են խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքները ներկայացնել որպես սովետական պետության տակտիկական քայլը՝ նվաճողական նոր պատերազմի նախապատրաստվելու համար։ Նրանք պնդում են, թե, իբր, Լենինը 1918—1920 թթ. դեմ էր խաղաղ գոյակցությանը և պահանջում էր վարել ակտիվ արտաքին քաղաքականություն՝ «բոլոր միջոցներով համաշխարհային հեղափոխությունը» տարածելու նպատակով. իբր, միայն 1921 թ. նա շրջադարձ կատարեց դեպի կապիտալիստական երկրների հետ «հարկադրական» խաղաղ գոյակցության կամ «խաղաղ համակեցության» քաղաքականությունը։ Այդ շրջադարձը պայմանավորված էր Ռուսաստանում հեղափոխության զարգացման դժվարություններով և արդյունք՝ սովետական պետության «հուսահատական վիճակի»։ Այդ պատճառով, որպես թե, Լենինը երկիրը վերականգնելու համար, քաղաքացիական պատերազմից հետո պահանջեց կարճատև դադար։*

*Վերջերս ամերիկյան «սովետագետները» հրատարակեցին* Սովետական հզորությունը և սովետական քաղաքականությունը *գիրքը, որտեղ կեղծելով սովետական արտաքին քաղաքականության սկզբունքները, նշում են, որ «կոմունիստական ստրատեգիան հենվում է խաղաղ գոյակցության անհնարինության վրա»։*

*Պատմության բուրժուական կեղծարարների հերյուրանքները հերքվում են Լենինի աշխատություններով, ուր հստակ տրված է սովետական պետության արտաքին քաղաքականության գիծը և բնութագրվում նրա պրակտիկ գործունեությունը։*

*Ինչպես հայտնի է, սովետական պետությունն իր գոյության առաջին իսկ օրից հռչակեց տարբեր սոցիալական սիստեմի պետությունների խաղաղ գոյակցությունը՝ իր արտաքին քաղաքականության սկզբունքներից մեկը։ Այդ սկզբունքը բխում էր մի երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության տեսությունից և կապիտալիզմից սոցիալիզմին անցման պատմական մի ամբողջ էպոխայի անհրաժեշտության անխուսափելիությունից, որի ժամանակ պրոլետարական պետությունը կապիտալիստական պետությունների հետ անխուսափելիորեն պետք է մտնի որոշակի տնտեսական, քաղաքական և կուլտուրական հարաբերությունների մեջ։ Դեռևս 1918 թ. սկզբին, առարկելով «ձախ կոմունիստներին» և տրոցկիստներին, որոնք գտնում էին, թե, իբր, միջազգային հեղափոխության շահերը բացառում են ամեն տեսակ հաշտություն իմպերիալիստների հետ, Լենինը վճռականորեն հայտարարում է. «Այսպիսի հայացքների տեսակետից՝ իմպերիալիստական տերությունների շրջա-*

պատում սոցիալիստական հանրապետությունը չէր կարող տնտեսական որևէ պայմանագիր կնքել, չէր կարող գոյություն պահպանել, չթքելով լուսնի վրա» (Երկեր, հ. 27, էջ 66)։

Լենինը ո՛չ միայն տեսականորեն հիմնավորեց տարբեր սիստեմի սեփականություն ունեցող պետությունների խաղաղ համագործակցության հնարավորությունն ու անհրաժեշտությունը, այլև ցույց տվեց այդ սկզբունքները կիրառելու ուղին և պատմության մեջ առաջին անգամ դրանք իրագործեց միջազգային հարաբերությունների ոլորտում։

Լենինի խաղաղության դեկրետը սովետական պետության արտաքին քաղաքականության առաջին փաստաթուղթն է, որտեղ դատապարտված է իմպերիալիստական պատերազմը՝ որպես «մարդկության դեմ ամենամեծ հանցագործություն» և պատերազմող բոլոր ժողովուրդներին ու պետություններին կոչ է արված անհապաղ բանակցություններ սկսել արդարացի, դեմոկրատական, առանց նվաճումների ու ռազմատուգանքների հաշտություն կնքելու շուրջ, ճանաչելով բոլոր ազգերի ու ժողովուրդների ինքնավարության սկզբունքը։ Կապիտալիստական շրջապատման պայմաններում երիտասարդ սովետական հանրապետությունը պետք է գտներ խաղաղ գոյակցության ուղիներ, օգտագործեր իմպերիալիստական պետությունների և առանձին երկրների ներսում բուրժուական տարբեր խմբերի միջև եղած հակասությունները։

Նույնիսկ այն ժամանակ, երբ իմպերիալիստական պետությունները հարկադրել էին սովետական հանրապետությանը զենքով պաշտպանել իր գոյությունը, կոմունիստական կուսակցությունը, ելնելով սոցիալիզմի շահերից, սկզբունքային որոշում ընդունեց բուրժուական պետությունների հետ ոչ միայն տնտեսական, քաղաքական, այլ նաև ռազմական համագործակցության հնարավորության մասին։ 1918 թ. սկզբին, երբ ռուսական ճակատում կայզերական Գերմանիան հարձակման անցավ, Լենինը այն ժամանակ պատրաստ էր որոշակի պայմաններով Անտանտի երկրների հետ բանակցություններ վարել նրանցից ռազմական օգնություն ստանալու հնարավորության շուրջը, որպեսզի «անգլո-ֆրանսիական ավազակային իմպերիալիզմից կարտոֆիլ ու զենք առնեն»[1]։

Իմպերիալիստների միջև եղած հակասությունների օգտագործման և կոմպրոմիսի հիանալի օրինակ է Բրեստի հաշտությունը։ Այդ կոմպրոմիս էր կայզերական Գերմանիայի հետ, երբ սովետական հանրապետությունը հարկադրված էր ստորագրել նվաճողական, թալանչիական հաշտության պայմանագիր, որպեսզի ստանար կարճատև դադար, պահպաներ ու ամրապնդեր սովետական պետությունը։ Լենինը բացահայտեց «ձախ կոմունիստների» ու տրոցկիստների դիրքորոշման դոգմատիկ, աղանդավորական վնասակար բնույթը։ Նրանք,— գրում է Լենինը,— Բրեստի հաշտությունը համարում էին գերմանական իմպերիալիստների հետ անթույլատրելի կոմպրոմիս և ցույց տալիս, որ «ձախերը» Սովետական հանրապետությանը մղում են Գերմանիայի դեմ նախապես հայտնի անհույս պատերազմի, օբյեկտիվորեն դառնալով միջազգային բուրժուազիայի ձեռքին գործիք, որը ձգտում էր երիտասարդ սովետական իշխանությունը խեղդել գերմանական բանակի ձեռքով։

Ինտերվենտները, կրելով ռազմական պարտություն, հարկադրված եղան

[1]. «Протоколы центрального комитета РСДРП(б). Август 1917 — февраль 1918», 1958, стр. 208.



սովետական պետության հետ հաստատել գործարար հարաբերություններ և վարել խաղաղ գոյակցության քաղաքականություն։ Այսպիսով, Սովետական հանրապետությունը, գրել է Լենինը, զենքը ձեռքին նվաճեց իր «համար պայմաններ, որոնց առկայությամբ կարող ենք գոյություն ունենալ կապիտալիստական տերությունների կողքին, որոնք ստիպված են այժմ առևտրական հարաբերությունների մեջ մտնել մեզ հետ» (Երկեր, հ. 31, էջ 516)։

Իմպերիալիստական պետությունների կառավարող շրջանները քաջ գիտակցում էին, որ առաջին համաշխարհային պատերազմից հետո առանց Ռուսաստանի մասնակցության դժվար էր վերականգնել կապիտալիստական երկրների էկոնոմիկան։ «Բուրժուական երկրներին հարկավոր է առևտուր անել Ռուսաստանի հետ. նրանք գիտեն, որ առանց այս կամ այն ձևի տնտեսական փոխհարաբերությունների՝ փլուզումը նրանց մոտ կշարունակվի այնպես առաջ գնալ, ինչպես մինչև այժմ» (Երկեր, հ. 33, էջ 247)։

1922 թ. հունվարի 6-ին Կաննում, Անտանտի երկրների գերագույն խորհրդի նիստում, պաշտոնական որոշում ընդունվեց՝ Սովետական Ռուսաստանի մասնակցությամբ Ջենովայում միջազգային տնտեսական կոնֆերանս հրավիրելու մասին։

Կուսակցության Կենտկոմը և սովետական կառավարությունը Ջենովայի կոնֆերանսի նախապատրաստման ուղղությամբ լայն աշխատանք ծավալեցին։ Սկզբից ևեթ Քաղբյուրոյի անդամներին ուղարկած գրությունում Լենինը խորհուրդ էր տալիս «այդ հարցը վերցնել... անմիջապես Ք(աղ) բյուրոյի հսկողության տակ» («Рапальский договор и проблема мирного сосуществования», М., 1963, стр. 63)։ «Չնայած, որ 1921—1922 թթ.,— հետագայում հիշում է Գ. Վ. Չիչերինը,— Լենինը երկար ժամանակ չէր ապրում քաղաքում, բայց մշտապես հետաքրքրվում էր Ջենովայի կոնֆերանսի հրավիրման հարցերով և նրա գրած անձնական գրությունների հիման վրա կազմվեցին Ջենովա մեկնող պատգամավորների ելույթները (Г. В. Чичерин. Статьи и речи по вопросам международной политики. М., 1961, стр. 284)։

Այդ շրջանում Լենինը վերլուծում է բուրժուական պետությունների արտաքին քաղաքականության ամեն մի քայլ, ուշադիր հետևում արտասահմանյան և սովետական մամուլի յուրաքանչյուր հոդվածին, ուսումնասիրում Ջենովայի կոնֆերանսին վերաբերող ամեն մի փաստաթուղթ, սովետական պատգամավորներին կողմնորոշելով վարել կայուն գիծ՝ գաղափարախոսության ու քաղաքականության սկզբունքային հարցերում չկատարել ոչ մի զիջում։

Ինչպես հայտնի է սովետական պատգամավորության ղեկավար Լենինը չկարողացավ մեկնել Ջենովա։ Պատգամավորությունը ղեկավարեց արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Գ. Չիչերինը։ Պատգամավորության կազմի մեջ մտան ականավոր սովետական դիվանագետներ Մ. Լիտվինովը, Լ. Կրասինը, Վ. Վորովսկին, ինչպես և սովետական հանրապետությունների ներկայացուցիչներ Ա. Բեկզադյանը, Ն. Նարիմանովը, Բ. Մդիվանին և ուրիշներ։

Իր ներկայացուցիչներն ուղարկելով Ջենովա, սովետական կառավարությունը ձգտում էր կապիտալիստական երկրների հետ հաստատել և ընդլայնել գործարար հարաբերություններ՝ սովետական իշխանության ճանաչման սկզբունքի հիման վրա։ «Մենք հենց սկզբից հայտարարում էինք, որ ողջունում ենք Ջենովան և կգնանք այնտեղ. մենք հիանալի հասկանում էինք և

ամենևին չէինք թաքցնում, որ գնում ենք այնտեղ իբրև վաճառականներ... գնում ենք այնտեղ նրա համար, որպեսզի ամենից ավելի ճիշտ և ամենից ավելի շահավետ կերպով քննարկենք այդ առևտրի համար քաղաքականապես հարմար պայմաններ» (Երկեր, հատ. 33, էջ 246)։

Լենինը սովետական պատգամավորությանը խորհուրդ էր տալիս կողմնորոշվել բուրժուական լագերի պացիֆիստական թևի տրամադրությամբ, ընդգծելով, որ մենք բոլորովին անտարբեր չենք թե ում հետ ենք գործ ունենալու՝ ռազմամոլ, թե պացիֆիստաբար տրամադրված բուրժուազիայի հետ։ «Վատ վաճառական կլինեք, այնուամենայնիվ, այն վաճառականը, որը չէր կարողանա յուրացնել այդ տարբերությունը և, հարմարեցնելով դրան իր գործելակերպը, գործնական նպատակների հասնել» (Երկեր, հ. 33, էջ 309)։

Հանդես գալով կապիտալիստական երկրների հետ տնտեսական հարաբերությունների զարգացման օգտին, սովետական կառավարությունը կապիտալիստական տերություններին զգուշացրեց, որ սպառնալիքի կամ կարգադրելու միջոցով սովետական պետությանը ստրկացուցիչ պայմաններ թելադրելու ամեն մի փորձ վճռականորեն մերժվելու է։ Այդ մասին սովետական պատգամավորությունը ստացավ հատուկ հրահանգ։ «Մեր,— ասել է Լենինը, — որպես պարտվածների, վկին պայմաններ փաթաթելու ամեն մի փորձ դատարկ անհեթեթություն է, որին չարժե պատասխան տալ»։ Եթե կապիտալիստները մտածում են, որ Ռուսաստանի հետ որքան ձգձգեն նորմալ հարաբերությունների հաստատումը, այնքան շուտ կստանան զիջումներ, ապա նրանց պետք է ասել, որ «Бавакань, վաղը дուf ոչինչ չеf ստանա» (Երկեր, հ. 33, էջ 254 և 260)։

Լենինն անմիջապես ղեկավարում էր Ջենովա մեկնող պատգամավորության նախապատրաստման աշխատանքը։ Նա ուշիմ հետևում էր իմպերիալիստական դիվանագետների գործունեությանը, գրում գրություններ ու նամակներ, տալիս ցուցմունքներ, ձևակերպում պատգամավորության հիմնական խնդիրները, նշում նրա աշխատանքի մեթոդները, լուրջ ուշադրություն նվիրում պատգամավորության անդամների ելույթների տեքստերի հղկվածությանը։

Դեռևս 1921 թ. սովետական կառավարությունը արտահայտեց իր սկզբունքային վերաբերմունքը ցարական կառավարության պարտքերի վճարման նկատմամբ, հայտարարելով, որ «...Ոչ մի ժողովուրդ պարտավոր չէ վճարել այն շղթաների արժեքը, որոնք նա կրել է դարերի ընթացքում» («Документы внешней политики СССР» т.IV, М. 1960, стр. 446)։

Սակայն լրիվ ու վերջնականապես չմերժելով պարտքերի մի մասի ճանաչումը, սովետական կառավարությունն այն կապում էր իրեն ռազմատուգանքներ վճարելու հետ։ Լենինի նախաձեռնությամբ ստեղծվեց հատուկ հանձնաժողով, որն ուսումնասիրեց իմպերիալիստական պետությունների զինված ինտերվենցիայի ու բլոկադայի հետևանքով Ռուսաստանի ժողովրդական տնտեսության հասցրած վնասների չափը։

1922 թ. ապրիլի 10-ին Սեն-Ջորջիո պալատում 34 երկրների ներկայացուցիչների մասնակցությամբ հանդիսավոր պայմաններում բացվեց Ջենովայի կոնֆերանսը, որտեղ նոր աշխարհի պատվիրակները բանակցություններ վարեցին Արևմուտքի դիվանագետների հետ։

Կոնֆերանսի կազմակերպիչների նպատակն էր դիվանագիտական ճնշմամբ հասնել նրան, ինչի չհասան ինտերվենցիայի միջոցով՝ տապալել սովետական իշխանությունը և Ռուսաստանում վերականգնել կապիտալիզմը։ Սովետական Ռուսաստանի մասնակցությունը կոնֆերանսին, նրանք դիտում էին, «ոչ այլ ինչ, եթե ոչ մոլորված որդու վերադարձը տուն» (Г. В. Чичерин. Статьи и речи по вопросам международной политики, М., 1961, стр. 326)։



Սովետական կառավարության դեկլարացիան, որը Չիչերինը, ի զարմանք օտարերկրյա դիվանագետների և ժուռնալիստների, սկզբում կարդաց ֆրանսերեն, հետո անգլերեն, շարադրում էր կապիտալիստական երկրների հետ փոխհարաբերության լենինյան սկզբունքները։ Պաշտպանելով կոմունիզմի սկզբունքները, ասաց սովետական ականավոր դիվանագետը,— ռուսական պատգամավորությունն ընդունում է, որ ներկա պատմական էպոխայում, հնարավոր է հին ու նոր սոցիալական սիստեմների զուգահեռ գոյությունը։ Սեփականության երկու սիստեմները ներկայացնող պետությունների միջև տնտեսական համագործակցությունը հրամայական անհրաժեշտություն է ընդհանուր էկոնոմիկան վերականգնելու համար։ Ռուսական պատգամավորությունը եկել է ոչ թե պրոպագանդելու իր գաղափարախոսությունը, այլ գործարար կապեր հաստատելու այլ կառավարությունների և բոլոր երկրների առևտրա-արդյունաբերական շրջանների հետ՝ փոխադարձության, իրավահավասարության և լրիվ ու առանց պայմանների սովետական հանրապետությանը ճանաչելու սկզբունքով («Документы внешней политики СССР», т. V, М., 1961, стр. 191—192)։

Շարադրելով տնտեսության վերականգնման սովետական ծրագիրը, Չիչերինը ցույց տվեց, որ ուժերի գործադրումն այդ ուղղությամբ կլինեն իզուր, քանի դեռ Եվրոպայի և աշխարհի վրա կախված կլինի պատերազմների վտանգը։ Դրա համար սովետական պատվիրակությունն իր պարտքն է համարում «առաջարկել ընդհանուր սպառազինումների կրճատում» (Նույն տեղը, էջ 193)։ Այսպիսով առաջին անգամ միջազգային ամբիոնից հայտարարվեց իրավահավասարության սկզբունքի հիման վրա, տարբեր սեփականության սիստեմ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության և տնտեսական համագործակցության հնարավորությունն ու անհրաժեշտությունը։ Բացի այդ, սովետական պատգամավորությունը, Լենինի հանձնարարությամբ, հանդես եկավ ընդհանուր սպառազինումների կրճատման ծրագրային առաջարկով։

Ամբողջ աշխարհի ժողովուրդների կենսական շահերից բխող սովետական կառավարության առաջարկը իմպերիալիստների լագերում առաջացրեց շփոթմունք ու տագնապ։ Ֆրանսիայի պատգամավորության ղեկավար, արտաքին գործերի մինիստր Լուի Բարտուն վճռականորեն առարկեց կոնֆերանսում ընդհանուր սպառազինումների կրճատման հարցի քննարկման դեմ, ասելով, որ այն Կաննի բանաձևում չի նախատեսված։ Բարտուի տեսակետը պաշտպանեց անգլիական պատգամավորության ղեկավար Լլոյդ Ջորջը, որը կոնֆերանսի պատվավոր նախագահն էր։ Օգտվելով բուրժուական դիվանագիտության բոլոր խորամանկ ձևերից, Անգլիայի պրեմիեր-մինիստրը քարոզ կարդացողի տոնով փորձում էր Գ. Վ. Չիչերինին համոզել, «Կոնֆերանսի նավը» չբեռնել «վտանգավոր պայթուցիկ նյութերով» ինչպիսին է սպառազինությունների կրճատման հարցը, եթե ոչ «կոնֆերանսը կտապալվի» («Документы внешней политики СССР», т. V, М., 1961, стр. 201)։

Մերժելով խաղաղ գոյակցության և գործարար համագործակցության սովետական ծրագիրը, 1922 թ. ապրիլի 11-ին արևմտյան տերությունները

սովետական պատգամավորությանը հուշագիր ներկայացրին, որը նպատակ
ուներ տնտեսապես և քաղաքականապես ստրկացնել սովետական հանրապե-
տությանը:
Արևմտյան տերությունների հուշագիրը վճռականորեն պարտավորեցնում
էր սովետական կողմին՝ ճանաչել ցարական և բուրժուական ժամանակավոր
կառավարությունների բոլոր պարտքերն ու ֆինանսական պարտավորու-
թյունները, օտարերկրյա կապիտալիստներին վերադարձնել ազգայնացված
ձեռնարկությունները, այսինքն՝ վերականգնել մասնավոր սեփականության
իրավունքը, վերացնել արտաքին առևտրի մենաշնորհը, օտարերկրացիների
վրա չտարածել սովետական իրավաբանական օրենքները: Հուշագրում նա-
խատեսվում էր նաև վերացնել օտարերկրյա կապիտալիստներին պատկանող
գործարաններում ու ֆաբրիկաներում աշխատանքի սովետական օրենքները և
սահմանել շահագործման ազատություն:
Ապրիլի 14-ին և 15-ին Լ. Ջորջի Ալբերտիս Վիլլ ռեզիդենցիայում կայա-
ցած անպաշտոնական բանակցությունների ժամանակ սովետական պատգա-
մավորությունը, պաշտպանելով սովետական պետության ինքնուրույնությունն
ու անկախությունը, վճռաբար մերժեց Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և
Բելգիայի պահանջը՝ էքսպերտ կոմիտեի զեկուցագրի հիման վրա շարունակե-
լու հետագա բանակցությունը:
Սովետական պատվիրակությունը, ի պատասխան իմպերիալիստական
պետությունների, մտցրեց իր առաջարկը, որտեղ ասված էր, որ ինտերվեն-
ցիայի և բլոկադայի պատճառով սովետական հանրապետությանը հասցվել է
39 մլրդ ռուբլու (ոսկով) վնաս, այն Ռուսաստանի նախապատերազմյան և
պատերազմի շրջանի ունեցած 18,5 մլրդ ռուբլի պարտքերից 2 անգամ ավելի
է: Սակայն արևմտյան տերությունները սովետական կառավարության պա-
հանջի դիմաց չցանկացան վերցնել որևէ պարտավորություն:
Սովետական դիվանագիտությունը, իրագործելով հակասովետական ճա-
կատի պառակտման լենինյան առաջադրանքը, հաջողությամբ օգտագործեց
իմպերիալիստական պետությունների լագերի սուր հակասությունները և առա-
ջին հերթին Գերմանիայի դժգոհությունը՝ Վերսալյան պայմանագրից:
Անտանտի երկրները, վճռականորեն մերժելով քննարկել Գերմանիայի
ռազմատուգանքի կրճատման և Վերսալյան պայմանագրի պայմանների թե-
թևացման հարցերը, հայտարարեցին, որ Ջենովայի կոնֆերանսը «վճռաբեկ
ատյան չէ» վերանայելու կնքված պայմանագիրը: «Եվ այդ դրությունը,—
գրում է Լենինը,— Գերմանիային, բնականաբար, դաշինքի է մղում Ռուսաս-
տանի հետ» (Երկեր, հ. 31, էջ 597): Երբ պարզ դարձավ, որ բանակցություն-
ները ոչ մի արդյունք չեն տալու, սովետական պատվիրակությունը ապրիլի
15-ին և 16-ին գերմանական կողմին առաջարկեց վերսկսել դեռևս Բեռլինում
սկսած սովետա-գերմանական բանակցությունները՝ պայմանագիր կնքելու
վերաբերյալ: Գերմանական դիվանագետները ողջ գիշեր աչք չփակեցին: Կա-
յացավ դիվանագիտության պատմության մեջ հայտնի գիշերային «պիժամա-
յին» խորհրդակցությունը, որտեղ ընդունվեց սովետական առաջարկը:
1922 թ. ապրիլի 16-ին Ջենովայի արվարձան Ռապալլոյում վերջնակա-
նապես համաձայնեցվեց ու ստորագրվեց դիվանագիտական ու տնտեսական
կապերի հաստատման և իրար փոխադարձ պահանջներ չներկայացնելու վե-
րաբերյալ սովետա-գերմանական պայմանագիրը: Երկու կառավարություն-
ները փոխադարձաբար հրաժարվեցին ռազմական ծախսերի ու վնասների հա-



տուցումից, ռազմագերիներ պահելու համար վճարելիք գումարից: Բացի այդ.
գերմանական կառավարությունը հրաժարվեց Սովետական Ռուսաստանի ազ-
գայնացրած գերմանական պետական և մասնավոր սեփականությունների ար-
ժեքի փոխհատուցման պահանջից:
Անտանտի պաշտոնական շրջաններում, Ռապալլոյի պայմանագրի ստո-
րագրման առթիվ, աղմուկ բարձրացվեց: Համաշխարհային մամուլը նշում էր
չսովետական դիվանագիտության մեծ հաղթանակի», «եվրոպական համերաշ-
խության քայքայման», «եվրոպական բլոկի ճեղքման», «ռուսական պատգա-
մավորների նենգության մասին և այլն: Լոնդոնի «Դեյլի տելեգրաֆ»-ը Ռապա-
լոյի պայմանագիրը կոչեց «Ջենովայի կոնֆերանսի ամենադրամատիկական
միջադեպը»: Լուի Բարտուն շանթ ու որոտ էր թափում «երկերեսանի» գերմա-
նական և ռուսական պատգամավորների հասցեին, որոնք «ստվերում թաքնված
կրկնեցին Բրեստ-Լիտովսկու հարվածը այն ժամանակ, երբ բոլոր եվրոպական
պետությունները հավաքված մշակում էին Եվրոպայի տնտեսական վերականգ-
նման պլանը», իսկ Լ. Ջորջը Ռապալլոյի պայմանագիրն անվանեց «անազնիվ
քայլ» (Н. Н. Любимов, А. Н. Эрлих. Генуэзская конференция. Воспо-
минания участников. М., 1963, стр. 75):
Դիմելով շանտաժի, սպառնալիքի և հորդորների, Անտանտը, իմպերիա-
լիստները պահանջում էին հրաժարվել Ռապալլոյի պայմանագրից: Հանդես
գալով սովետա-գերմանական հարաբերությունների միջամտման դեմ, սովե-
տական կառավարությունը Ջենովայում գտնվող իր պատգամավորներին հրա-
հանգ ուղարկեց. «Անհրաժեշտ է անպայման սկզբունքորեն և հետևողակա-
նորեն պաշտպանել Գերմանիայի հետ մեր պայմանագիրը և մեր իրավունքը՝
կնքելու նման պայմանագրեր առանց որևէ մեկին հայտնելու» (Ра-
пальский договор и проблема мирного сосуществования». М., 1963,
стр. 114):
Անտանտի պետությունները հրաժարվեցին բավարարել սովետական որևէ
պահանջ և փոխադարձ ընդունելի որոշումների ուղի որոնել: Մայիսի 2-ին
նրանք սովետական պատգամավորությանը հանձնեցին հուշագիր, որը սո-
ցիալիստական պետության ստրկացման իմպերիալիստների նոր պլանն
էր: Ծանոթանալով նոր հուշագրի հետ, Լենինը Չիչերինին առաջար-
կեց. անպայման և շտապ դադարեցնել բանակցությունները, քանի որ սե-
փականատերերին չենք զիջելու և ավելի լավ պահ չի գտնվի, իսկ բա-
նակցությունների ձգձգումը կթուլացնի մեր դիրքը (տե՛ս В. И. Ленин,
ПСС, т. 45, стр. 183):
Սովետական պատգամավորությունը, ղեկավարվելով Վ. Ի. Լենինի և
կուսակցության ցուցմունքներով, վճռականորեն մերժեց դաշնակիցների վե-
րոհիշյալ հուշագիրը: Պատասխանում ասված էր. «Ռուսաստանը հետագա-
յում էլ պատրաստ է օտարերկրյա պետություններին լուրջ զիջումներ անել,
հանուն համաձայնության, միայն բացառապես այն դեպքում, երբ մյուս կող-
մը, այդ զիջումներին համապատասխան, հավասարազոր զիջումներ կանի
հօգուտ ռուս ժողովրդի» («Документы внешней политики СССР», т. V,
1961, стр. 371):
Այսպիսով, ձախողվեցին Ջենովայի և նրա գործը շարունակող Հաագայի
կոնֆերանսները: Սովետական դիվանագիտությունը մերկացրեց և չընդունեց
իմպերիալիստական պետությունների նենգ պլանները, պաշտպանեց սովե-
տական պետության սուվերենիտետը և անկախությունը, պառակտեց բուր-
ժուական պետությունների հակասովետական ճակատը, կնքեց նրանցից մեկի

հետ իրավահավասար պայմանագիր և հաղթանակով դուրս եկավ Արևմուտքի բուրժուական ամենափորձված դիվանագետների դեմ մղած դաժան պայքարում: Սոցիալական երկու միանգամայն տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության, սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների տընտեսական համագործակցության սկզբունքների պաշտպանությունը, ընդհանուր սպառազինումների կրճատման առաջարկը նպաստեցին սովետական պետության միջազգային հեղինակության բարձրացմանը:

Սովետական պետությունը, հավատարիմ լենինյան պատգամներին, միջազգային հարաբերություններում հետևողականորեն անցկացնում է խաղաղ գոյակցության քաղաքականություն, ձգտում ապահովել ժողովուրդների անվտանգությունը և կանխել ջերմամիջուկային պատերազմը: Այդ քաղաքականությունը մեկ անգամ ևս իր արտահայտությունը գտավ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թ. հունիսի մոսկովյան խորհրդակցությունում:

Խորհրդակցությունում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ասաց. «մեզ համար խաղաղ գոյակցությունը ոչ թե ժամանակավոր տակտիկական եղանակ է, այլ սոցիալիստական հետևողականորեն խաղաղասիրական արտաքին քաղաքականության սկզբունք» («Սովետական Հայաստան», 1969 թ. հուլիսի 8), որը բարենպաստ պայմաններ է ստեղծում սոցիալիստական երկրներում նոր հասարակարգի կառուցման համար, նպաստում իմպերիալիզմի դեմ ազգային և միջազգային մասշտաբով դասակարգային պայքարի զարգացմանը և օգնում գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի ծավալմանը:

Սովետական Միությունը վճռականորեն դիմակազերծ է անում իմպերիալիստական պրոպագանդայի հերյուրանքները խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքների մասին: Պարզապես անհեթեթություն է Մաոյի խմբի զրպարտանքները Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության երկրների հասցեին, որ իբր տարբեր սոցիալական սիստեմ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը թուլացնում է հակաիմպերիալիստական պայքարը, հակասում սոցիալիստական հեղափոխության, ժողովուրդների ազգային և սոցիալական ազատագրության գործին:

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցության ընդունած հիմնական փաստաթղթում ասված է, որ խաղաղ գոյակցության քաղաքականությունն ուղղված է պատերազմի հրձիգների, զենքի ֆաբրիկանտ-մոնոպոլիստների դեմ և «համապատասխանում է ճնշման ու շահագործման բոլոր ձևերի դեմ մղվող հեղափոխական պայքարի ընդհանուր շահերին, նպաստում է բոլոր ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, տարբեր հասարակարգ ունեցող երկրների տնտեսական, գիտատեխնիկական և այլ կարգի արդյունավետ համագործակցության զարգացմանը՝ ի շահ սոցիալական առաջադիմության» («Սովետական Հայաստան», 1969 թ., հունիսի 19):

Վ. Մ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ԱՄՆ-Ի ՌԱԴԻՈՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ՍՊԱՍԱՎՈՐ

XX դարի սկզբին, կապի միջոցների բնագավառը ներխուժած գիտատեխնիկական բուռն հեղափոխությունը անսահմանորեն ընդլայնեց մասսայական ինֆորմացիայի հնարավորությունները: Մեծացել և շարունակում է մեծանալ ռադիոյի ազդեցությունը հասարակության հոգեկան կյանքի վրա:

Դեռևս կես դար առաջ, ռադիոյին, որ մասսայական ինֆորմացիայի տակավին երիտասարդ, բայց և հանրահայտ միջոց էր, մեծ ապագա էր սպավում: Սակայն այնժամ հազիվ որևէ մեկը կարողանար ենթադրել, թե այդ սքանչելի գյուտը օգտագործվելու է նաև ի չարս մարդկության:

1942 թ. փետրվարի 24-ից մի շարք լեզուներով հաղորդումներ սկսեց «Խոսում է Ամերիկայի ձայն» ռադիոկայանը: ԱՄՆ-ի կառավարությունը ռադիոն պաշտոնապես ծառայեցրեց արտասահմանյան երկրներում իր արտաքին քաղաքականությունը պրոպագանդելու համար:

Պատերազմն ավարտվելուց հետո ՍՍՀՄ-ը և սոցիալիզմի մյուս երկրները ազդարարեցին, որ իրենց քաղաքական գլխավոր ուղղությունը՝ տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության և համագործակցության, խաղաղության և անվտանգության համար մղվող պայքարի, զինաթափման ու միջազգային լարվածության թուլացման սկզբունքների իրականացումն է: Այլ է ԱՄՆ-ի քաղաքականությունը: Պատերազմը վերջանալուց անմիջապես հետո նա դիմեց «խիստ կուրսի», ապա «սառը պատերազմ» սկսեց սոցիալիզմի երկրների դեմ, որը դարձավ ԱՄՆ-ի քաղաքականության գլխավոր գիծը: ԱՄՆ-ի կառավարող շրջանները պարտավոր էին հասարակական կարծիքի առջև արդարացնել ՍՍՀՄ նկատմամբ վարվող բացահայտ ագրեսիվ կուրսը, հորինելով ՍՍՀՄ կողմից «կոմունիզմի ռեժիմի» բռնի տարածման սպառնալիքի կեղծ վերսիան:

Երկրորդ համաշխարհային պատերազմի վերջերին ԱՄՆ-ի կառավարությունը, արտաքին քաղաքականության ռադիոհաղորդումների համար, իր տրամադրության տակ ուներ վիթխարի ապարատ: Նրա տեխնիկական բազան 41 լեզուներով օր ու գիշեր հաղորդումներ տվող 36 կարճալիք ռադիոկայաններն էին: Արտաքին հաղորդումների ծրագրի ընդհանուր ծավալը օրական 170 ժամ էր: Արտաքին հաղորդումները իրականացվում էին «Ամերիկայի ձայնի»,

Եվրոպայի ԱԲՍԻԵ, Բեռլինի ամերիկյան սեկտորի ՌԻԱՍ, ինչպես նաև մի շարք մասնավոր ռադիոների միջոցով:

Արտասահմանյան երկրների ռադիոծրագրերի բովանդակության համար պատասխանատու էր քաղաքային բնակչության շրջանում տարվող աշխատանքի պետական քարտուղարի օգնականը: Նրան օժանդակում էր կոնգրեսի կոմիտեն: Որոշ ժամանակ անց, պետական քարտուղարի օգնականի ապարատը համալրվեց հոգեբանական ստրատեգիայի վարչությամբ, իսկ ավելի ուշ՝ ի հայտ եկավ Սպիտակ տան ներկայացուցչի ապարատը, որը պատասխանատու էր արտաքին ոլորտում տարվող պրոպագանդայի քաղաքականության բարձր մակարդակի համար:

1946 թ. դեկտեմբերի 15-ին «Ամերիկայի ձայնի» մյունխենյան ֆիլիալը Բալկանյան երկրներում կանոնավոր ռադիոհաղորդումներ սկսեց: Ինչպես հայտնի է, այդ շրջանում Հունաստանում պայքար էր բռնկվել միապետության ֆաշիստական ռեժիմի և երկիրը օկուպացրած անգլիական իմպերիալիզմի դեմ: Հունաստանի դեմոկրատական և հայրենասիրական ուժերի վրա հարձակվեց պրեզիդենտ Տրումենը, որը նրանց անվանեց «զինված փոքրամասնություն» և հայտարարեց. «Միացյալ Նահանգների քաղաքականությունը պետք է լինի ազատ ժողովուրդներին աջակցելու քաղաքականություն, որոնք դիմադրում են իրենց զինված փոքրամասնությանը կամ արտաքին ճնշմանը ենթարկվելու փորձերին»:

Այս խոսքերում, չնայած թվացող դեմոկրատիզմին, ամերիկյան իմպերիալիզմի մարտահրավերն էր թաքնված՝ ժողովուրդների ազատագրական շարժումներին, իսկ «արտաքին ճնշումը» դա հույն ժողովրդին ՍՍՀՄ ցույց տված համակրանքն ու բարոյական օգնությունն էր: Սրա հետ, անշուշտ, առնչվում է մի այլ փաստ ևս: 1947 թ. փետրվարի 17-ից մյունխենյան նույն ֆիլիալից «Ամերիկայի ձայնը» սկսեց իր ռուսերեն հաղորդումները ՍՍՀՄ համար: Հետագայում, երբ ընդարձակվեցին «Ամերիկայի ձայնի» հաղորդումների շրջանակները, զուգահեռաբար ուժեղացավ հակասովետական և հակակոմունիստական պրոպագանդան:

Հետպատերազմյան շրջանում ԱՄՆ-ի արտաքին ռադիոհաղորդումների կառավարական պաշտոնական ծրագրում, առաջին հայացքից, ագրեսիվ ոչինչ չկար, ընդհակառակը, այն ուղղված էր ժողովուրդների միջև «վստահության ամուր մթնոլորտի» ստեղծմանը, ԱՄՆ-ի «խաղաղ մտադրությունների ցուցադրմանը»: Ճիշտ է, այնտեղ խոսվում էր «ամեն միջոցներով սովետական ազդեցության սահմանափակման մասին», բայց դարձյալ «պատերազմը բացառվում» էր:

Շուտով, «Ամերիկայի ձայնի» ծրագրի մշակումից հետո, սենատոր Կարլ Մունդտը հայտարարեց. «Մենք գտնում ենք, որ նրանք (սովետական ռադիոլսողները) պետք է սաբոտաժի ենթարկեն պաշտպանության ոլորտի արտադրությունը, ձգձգեն հնգամյա պլանի ծրագրի կատարումը, որն ավելացնելու է գյուղատնտեսական և արդյունաբերական ապրանքների արտադրության թողարկումը: Մենք սպասում ենք, որ ժամանակ առ ժամանակ նրանք սկսեն ծլկել Ռուսաստանից... ու գան Ամերիկա, և մենք իրազեկ ռուսներից կիմանանք, թե նրանք պաշտպանական նշանակություն ունեցող ինչպիսի կառույցներ են կանգնեցնում Ուրալից այն կողմ և Ռուսաստանի պաշտպանական կենտրոններում»:

1949 թ. մայիսի 11-ին Նյու-Յորքում գրանցվեց մի նոր մասնավոր կազ-



մակերպություն՝ «Ազատ Եվրոպայի ազգային կոմիտեն»: Հիմնական աղբյուրը, որի միջոցով սա իրականացնում է իր հակասովետական ծրագիրը, «Ազատ Եվրոպայի» ռադիոն է, որի լեհերեն, բուլղարերեն, ռումիներեն, չեխերեն, սլովակերեն հաղորդումները սկսվեցին 1950 թ. հունիսից: Դա, ըստ էության, այնպիսի մի կազմակերպություն է, ինչպես «Ամերիկայի ձայնը», միայն այն տարբերությամբ, որ կոմիտեն, չքաշվելով ակնհայտ փաստերից, ցինիկաբար քողարկվում է մասնավոր ցուցանակի տակ: «Ազատություն» ռադիոն, որն իր գոյության առաջին վեց տարվա ընթացքում գործում էր «Ազատագրություն» անվան տակ, իր ստեղծվելու պատմությամբ, բնույթով ու գործունեության նպատակներով քիչ բանով է տարբերվում «Ազատ Եվրոպա» ռադիոյից:

1951 թ. ԱՄՆ-ում հիմնվեց «Բոլշևիզմի դեմ պայքարի կոորդինացիոն կենտրոնը», որը միավորում է ԱՄՆ-ի էմիգրանտական զանազան խմբերն ու, այսպես կոչված՝ Եվրոպա «տեղափոխված անձերին», որոնք հիմնականում սովետական նախկին քաղաքացիներ էին:

1953 թ. մարտի 1-ին «Բոլշևիզմի դեմ պայքարի կոորդինացիոն կենտրոնը» սկսեց իր հակասովետական հաղորդումները: «Ազատություն» ռադիոյի ՍՍՀՄ ժողովուրդների 17 լեզուներով հաղորդումները չեն ընդհատվում օր ու գիշեր: Իր ողջ գոյության ընթացքում «Ազատություն» ռադիոն բավական փաստեր է տվել հաստատելու, որ այն ԱՄՆ-ի գաղափարական պատերազմի պաշտոնական ապարատում ոչ թե ինֆորմացիոն-պրոպագանդիստական, այլ պրոպագանդիստական-դիվերսիոն, լրտեսական կենտրոն է: «Բոլշևիկների դեմ կոորդինացիոն պայքարի կենտրոնի» գործունեության նպատակը սովետական կարգերը կապիտալիստականով փոխարինելն է:

Իրականում «Ամերիկայի ձայնը», «Ազատ Եվրոպան», «Ազատությունը» ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության ռադիոպրոպագանդայի երեք կարևոր գործիքներն են, որոնցից յուրաքանչյուրը, մղվող գաղափարական պատերազմում, ունի իր դերն ու որոշակի տեղամասը: Սակայն ռադիոպատերազմ են մղում ո՛չ միայն այդ երեք կայանները: ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության ռադիոպրոպագանդայի ապարատը, կազմակերպական առումով, բավական բարդ է: Բացի թվարկված ռադիոկենտրոններից, գոյություն ունի նաև «Ազատ Ասիայի ձայնը», այսպես կոչված՝ համաշխարհային ռադիոհաղորդումների սիստեմը, որը նույնպես քողարկված է չեզոք ռադիոկայանի ցուցանակի տակ. ԱՄՆ-ն արտաքին ռադիոպրոպագանդա է մղում նաև տարբեր երկրներում տեղավորված իր զինված ուժերի ռադիոկայանների միջոցով:

Լիովին գիտակցելով գաղափարական պայքարի ծայրահեղ կարևորությունը ժամանակակից աշխարհում, ԱՄՆ-ի կառավարող շրջանները մեծ ուշադրություն են նվիրում մարդկանց ուղեղների տիրապետմանը: Դրան են, առաջին հերթին, ծառայում պրոպագանդայի բազմաթիվ տեսությունները, տարբեր տեսակ «խոսքի գնդակների» պատրաստման յուրահատուկ դեղատոմսերը, որոնք մշակում են ԱՄՆ-ի իմպերիալիստական, ռեակցիոն շրջանների պատվերները կատարող մասնագետների բանակը: Այդ գործունեության նպատակը պարզ ու հստակ սահմանել է ամերիկացի փիլիսոփա Ջարլզ Սիլին. «Վարկաբեկված և հնացած գաղափարների արդյունավետ տարածման համար, որոնց վրա հենվում է կապիտալիզմը...», անհրաժեշտ է ուժեղ հույզեր արթնացնել պրոպագանդայի իսկապես ճկուն տեխնիկայի միջոցով, որպեսզի դրանով հնարավոր լինի մոլորեցնել ու շփոթեցնել ագետներին: Առանց այդ տեխնիկայի կապիտալիզմը շատ շուտ կպարտվեր»:

1947—1953 թթ. ընթացքում ԱՄՆ-ն, ՍՍՀՄ նկատմամբ իր քաղաքականության մեջ, հիմնականում ելնում էր, այսպես կոչված՝ «զսպման դոկտրինայից»։ Խոսքը, իբր, զսպման ագրեսիվ տենդենցների մասին էր, որոնք, ըստ ամերիկյան պետական ու քաղաքական գործիչների հայտարարության, հատուկ էին ՍՍՀՄ և սոցիալիստական այլ երկրների արտաքին քաղաքականությանը։ Սակայն այդ դոկտրինայի դեմագոգիկ դատարկաբանության տակ ագրեսիվ էություն էր թաքնված։

Հետագայում «զսպման դոկտրինան» փոխարկվեց առավել ռեակցիոն «կոմունիստների հետ մղման» կամ «ազատագրության դոկտրինայով»։ Միացյալ Նահանգներն սկսեցին գաղափարական ինտենսիվ պատերազմ մղել նաև ռադիոպրոպագանդայի միջոցներով։

«Ազատագրության դոկտրինային» կառավարության արտաքին քաղաքականության պաշտոնական ծրագրի բնույթ տրվեց։ ԱՄՆ-ի ռադիոկենտրոնների գործունեությանն այդ շրջանում հատկանշական էր ո՛չ միայն քանակական, այլև «որակական ցուցանիշների» աճը, սոցիալիստական երկրների հասցեին արվող անզուսպ զրպարտանքների մեծ չափերը, նրանց ներքին քաղաքականությանը ուղղակի միջամտելը, բացահայտ լրտեսությունը, ժողովրդադեմոկրատական երկրներում ամերիկյան լրտեսական կազմակերպությունների և անլեգալ հակահեղափոխական կենտրոնների միջև կապ հաստատելը։ ԳԴՀ-ի, Հունգարիայի, Լեհաստանի համար ԱՄՆ-ի կազմակերպած ռադիոպրոպագանդան, որոշ չափով ներգործեց այդ երկրներում 1953—57 թթ. տեղի ունեցած դեպքերի վրա։

1953 թ. «Բեռլինյան օպերացիայի» ձախողումը լուրջ հարված էր ԱՄՆ-ի «ազատագրության քաղաքականությանը» և արտաքին քաղաքականության կուրսին։ Բացահայտվեց, մասնավորապես, ամերիկյան ռադիոհաղորդումների՝ որպես գաղափարական պատերազմի, գործիքի դերը։ Այդ բոլորով հանդերձ, ամերիկյան պրոպագանդան կազմակերպողների համար ռադիոն, որպես գաղափարական պատերազմի զենք, ավելի մեծ նշանակություն ստացավ։ Այդ պատճառով, շարունակելով պաշտպանել «ազատագրության դոկտրինան» և չհրաժարվելով իր քայքայիչ գործելակերպից՝ սոցիալիստական լագերի նկատմամբ, ԱՄՆ-ը ձգտում էր ռադիոպատերազմ հրահրել։ Դա ակնառու դարձավ հատկապես Հունգարիայում 1956 թ. հակահեղափոխության խռովության օրերին։ Խռովության նախապատրաստման ու բորբոքման գործում ակտիվ մասնակցություն ունեցան «Ազատ Եվրոպայի կոմիտեն» և «Ազատություն» ռադիոն։

Ընդունելով «Ազատագրության դոկտրինայի» ձախողումը և մտանանշելով, որ սոցիալիստական կարգը հնարավոր չէ վերացնել անգամ ատոմային պատերազմի դեպքում, ամերիկյան արտաքին քաղաքականություն ստեղծողները ստիպված էին զբաղվել արտաքին քաղաքականության նոր դոկտրինաների մշակմամբ։

Այսպես կոչված՝ «խաղաղ ներթափանցման դիֆերենցված քաղաքականության» բուն հեղինակը, սոցիալիստական երկրների հետ հարաբերությունների չափավոր նորմալացման պայմաններում, Ջոն Քենեդին էր։ Պրեզիդենտ ընտրվելուց ոչ-շատ առաջ նա մշակել էր Արևելյան Եվրոպայի երկրների հանդեպ ԱՄՆ-ի վարած արտաքին քաղաքականության հետևյալ հիմնական դրույթները. «Մենք պետք է պատրաստենք և Արևելյան Եվրոպայում օգտագործենք ավելի ճկուն և իրականության պահանջները բավարարող միջոցներ։



Ութ տարի առաջ գոռոզաբար հռչակած «Ազատագրության քաղաքականությունը» ծուղակ էր ու մոլորություն։ Մենք ո՛չ ձգտում և ո՛չ էլ հնարավորություն ունենք ազատագրելու Արևելյան Եվրոպան։ Պետք է ջանանք, դանդաղ ու զգույշ, ...ազատության սերմեր աճեցնել երկաթե վարագույրի յուրաքանչյուր ճեղքվածքում, թուլացնել տնտեսական և գաղափարական կախվածությունը Ռուսաստանից»։ ԱՄՆ-ի քաղաքականության այս հիմնական դրույթներն էլ դարձան այդ երկրներում 60-ական թթ. տարվող ամերիկյան պրոպագանդայի էությունը։

Նոր պայմաններում արտաքին քաղաքական պրոպագանդայի հիմքում ընկած է այն կոնցեպցիան, ըստ որի Արևելյան Եվրոպայում տեղի է ունենում «խաղաղ հեղափոխություն», որ «կոմունիստական լագերի ներսում հնարավոր է որոշ անկախություն», «մարքսիստական աշխարհայացքը ոչ միայն համախմբող, այլև բաժանող ուժ է» և որ «այդ պայմաններում անհրաժեշտ է վերականգնել ընդհատված խոսակցությունն Արևմտյան Եվրոպայի հետ, և քարը ծակել կաթիլներով»։ ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջոնսոնը զարգացրեց Քենեդիի «խաղաղ ներթափանցման» գաղափարը, առաջ քաշելով Արևելքն ու Արևմուտքը հաստատապես կամրջելու ֆորմուլան։ Գիտակցաբար աղավաղելով կոմունիստական շինարարության ժամանակակից, նոր ուղիների ու ձևերի որոնման էությունը և դրանք ընդհանրապես սոցիալիզմից հեռացում համարելով, ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության ոգեշնչողները կարծում են, որ հնարավոր է այնպիսի քաղաքականություն վարել, որպեսզի սոցիալիստական հասարակարգը աստիճանաբար վերաճի կապիտալիստականի։

Առաջնորդվելով «խաղաղ ներթափանցման» և «կամրջման» նշված նոր կոնցեպցիաներով, ամերիկյան ռադիոպրոպագանդան իր առջև տեսնում է սոցիալիզմի հանդեպ լոյալ խավերի և դրան համապատասխան վարում իր հաղորդումները։ Հիմնական խավը, որին ամերիկյան ռադիոկայանները, ամենից առաջ, ուղղում են իրենց հաղորդումներն ու ջանքերը՝ ինտելիգենցիան է։ «Ամերիկայի ձայնը», օրինակ, այդ խմբի մեջ է ներառում բարձր վարձատրվող ծառայողներին, արվեստի աշխատողներին, գրողներին, գիտնականներին, դասախոսներին։ Ըստ նրանց, սոցիալիստական երկրներում այդ պրոֆեսիայի տեր մարդիկ մի «դասակարգ են», որը կրթական մակարդակի աճին համեմատ աճում է քանակապես և վճռական ներգործություն ունենում այդ երկրների հասարակական կարծիքի ձևավորման վրա։

Այդ «դասակարգի» ներկայացուցիչների մեծ մասը, ինչպես նշում են ամերիկյան հետազոտողները, դեմ չեն սոցիալիզմին ու կոմունիզմին և այդպիսի լսողի համար ամեն մի հակակոմունիստական պրոպագանդա միանգամայն անօգուտ է։ Մինչդեռ, ամերիկյան պրոպագանդիստների կարծիքով, այդ «դասակարգի» ներկայացուցիչները օժտված են հույժ ձեռնտու մի հատկությամբ՝ անհատնում հետաքրքրասիրություն արտաքին աշխարհի հանդեպ և Արևմուտքի հոգեկան աշխարհի հետ ծանոթանալու բուռն ցանկություն։ Հենց այդպիսի լսողների վրա են հույսերը դնում ամերիկյան պրոպագանդիստները, երբ փորձում են, հենվելով այս կամ այն օրինակի վրա, խաղաղ գոյակցության կոնցեպցիաների գաղափարախոսությունը հակադրել բուրժուական դեմոկրատիայի «առավելություններին», «արվեստի անկուսակցականությանը և ստեղծագործական բացարձակ ազատությանը»։

«Ամերիկայի ձայնի» հաղորդումներում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում այն ինֆորմացիային, որին լսողն ինչ-ինչ պատճառներով չի կա-

րող ստանալ իրենց ներքին աղբյուրներից։ Լսողին պրոպագանդելն ամենևին չի սահմանափակվում նրա ուշադրությունը բևեռելով «Ամերիկայի ձայնի»՝ որպես ինֆորմացիայի աղբյուրի, հաղորդումների վրա։ Չէ՛ որ ռադիոն, ամերիկյան ռադիոպրոպագանդայի կոնցեպցիաների համաձայն, նաև հաճելի զրուցակից է։ Սիրալիր բարեկամի այդ դերը ջանասիրաբար են կատարում «Ֆորումի» հաղորդումները— իրենց երկարաշունչ, կեսժամյա զրույցների ընթացքում, որոնք ուղղված են էկոնոմիկայի և սոցիոլոգիայի, աշխարհագրության և փիլիսոփայության հարցերով խորապես հետաքրքրվող «լուրջ, ինտելիգենտ» լսողներին։

Սովորաբար «Ֆորումի» հաղորդումները վարում են ԱՄՆ-ի նշանավոր գիտնականները։ Անշուշտ, նրանց ելույթները «օբյեկտիվ» և «անկողմնակալ» բնույթ ունեն։ «Ամերիկայի ձայնը» այդ իսկ հաղորդումներում ձգտում է ակտիվ հարձակում կազմակերպել ինտելիգենցիայի վրա։

Նկատի ունենալով ավելի հեռավոր հեռանկարներ, ամերիկյան ռադիոպրոպագանդան հույսը դնում է տեխնիկական ինտելիգենցիայի առավել ցածր՝ «միջին խավի» վրա։ Այն խիստ հեռանկարային է համարվում ինչպես սոցիալիստական հասարակության վրա նրա հետագա ազդեցության, այնպես և օտար ներգործությանը ենթարկվելու ունակության տեսանկյունից։ Նման պրոպագանդա կազմակերպողների դատողությունները մոտավորապես այսպիսին են. լսողները, կապված իրենց մասնագիտության հետ, հետաքրքրվում են Արևմուտքի տեխնիկական նորություններով ու փորձով, ինչպես նաև սոցիալական, տեխնիկական և կուլտուրական բնույթի մի շարք հարցերով և այն բանով, թե ինչպես են դրանք լուծվում միջազգային մասշտաբով։

Դրա համար էլ, անտարակույս, պոտենցիալ ռադիոլսողների այդ խավին հեշտ կլինի հրապուրել, այսպես կոչված՝ «գործնական պրոպագանդայով»։

ԱՄՆ-ի ռադիոկայանները յուրահատուկ ուշադրություն և բավական շատ ժամանակ են հատկացնում հատկապես սոցիալիստական երկրների երիտասարդությանը և, առանձնապես, ուսանողությանը նվիրված հաղորդումներին։ Ամերիկյան հետազոտողների կարծիքով, սոցիալիստական երկրների երիտասարդ սերունդը նշանակալի չափով տարբերվում է իր հայրերից ու պապերից։ Նա ոչ հեղափոխության բովով է անցել, ոչ էլ պատերազմ է տեսել, ուստի «նորի» նկատմամբ որևէ հոգեբանական արգելք չի կարող ունենալ։ Հատկապես ուսանող երիտասարդությունն է «նորի հանդեպ» համարվում ամենից ավելի ընկալունակ և օպոզիցիոն։ Դրա համար էլ ռադիոհաղորդումների զինանոցում դատողություններ են արվում նաև կյանքի իմաստի, սպորտի, նորաձևության և հույժ ժամանակակից երաժշտության շուրջ։

Վերջին տարիներին «Ամերիկայի ձայնի» ՍՍՀՄ հաղորդումների տասներկու մշտական խորագրերից յոթը երիտասարդությանն է ուղղված։ Այդ ուշադրության պատճառները հեշտ է հասկանալ ու բացատրել։ Սովետական երիտասարդությունը դիտվում է որպես մեծ կենսափորձ չունեցող, «քաղաքականապես խակ» և, իհարկե, որպես երկրի ապագա։ Եվ պատահական չէ, որ «Ամերիկայի ձայնը» իր հաղորդումներում փորձեր է անում երիտասարդ ռադիոլսողների ուշադրությունը սևեռել «հայրերի ու որդիների» մտացածին պրոբլեմի վրա։ Ամերիկայի մատաղ սերնդի դաստիարակության հարցերը լռության են մատնվում, իսկ սովետական երիտասարդության համար հաղորդումներում գերակշռում են «ամերիկյան երիտասարդության» անկախության և ինքնուրույ-



նության, պատանիների ու աղջիկների ազատ ժամանակի անցկացման, նրանց նյութական ապահովվածության հերյուրանքները։

Սոցիալիստական երկրների համար ռադիոհաղորդումների նոր կոնցեպցիան նոր մեթոդներ հարուցեց ամերիկյան ռադիոպրոպագանդայի աշխատանքում։ Սակայն այդ բանը անդրադարձավ միայն հաղորդումների ձևի ու ոճի և ոչ բնավ նրանց սկզբունքային բովանդակության վրա, որի էությունը զանազան դիմակներով և, մասնավորապես, նացիոնալիզմի դիմակով, հանդես եկող հակակոմունիզմն է։

Չեխոսլովակիան սոցիալիստական համագործակցությունից կտրելու իրենց պլանների ձախողմամբ մոլեգնած, իմպերիալիստական ռեակցիայի ուժերը գործի դրեցին գաղափարական պրոպագանդայի և հոգեբանական պատերազմի բորբոքման իրենց վիթխարի մեքենան։ Հակահեղափոխական ուժերի գործունեությունը ղեկավարելու յուրօրինակ շտաբ դարձավ ԱՄՆ-ի ինֆորմացիոն գործակալության տնօրինության տակ գտնվող ՌԻԱՍ ռադիոկայանը։ Վարշավայի պայմանագրի երկրների զորքերի Չեխոսլովակիա մտնելուց հետո, ինչպես և 1953 թ. Բեռլինում հակահեղափոխական խռովության տապալման, 1956 թ. Հունգարիայում ռեակցիայի սանձարձակության կամ 1960 թ. ԳԴՀ-ի պետական սահմանի փակման ժամանակ ՌԻԱՍ-ը ծավալեց հակասոցիալիստական ակտիվ գործունեություն։ Օգտագործելով իր բոլոր կարողությունները, ՌԻԱՍ-ը վերատրանսլյացիայի էր ենթարկում ընդհատակյա ռադիոկայանների հաղորդումները և ամերիկյան գործակալությանն ու Չեխոսլովակիայում գործող հակահեղափոխական մյուս ուժերին անմիջական հրահանգներ ու ցուցումներ էր տալիս։

Բնորոշ է, որ սոցիալիստական երկրների տնտեսական զարգացման վերաբերյալ ամերիկյան ռադիոկայանների մեկնաբանությունների մատուցման ոլորտում տեղի ունեցան որոշակի փոփոխություններ։ Ընդունելով սոցիալիստական երկրների ժողովրդական տնտեսության նվաճումները, նրանք դա չէին կապում նոր հասարակարգի հետ։ Ժողովրդական տնտեսության ղեկավարման սիստեմի կատարելագործման հետ կապված փոփոխությունների ժամանակաշրջանում ամերիկյան ռադիոպրոպագանդան իր գաղափարական ազդեցության տարածման համար պարարտ հող էր որոնում։

Սոցիալիստական լագերի դեմ ԱՄՆ-ի ռադիոպրոպագանդայի հիմնական նպատակը կոմունիստական և բանվորական կուսակցությունների քաղաքական գծի խեղաթյուրումն է, մասսաների շրջանում նրանց ազդեցության թուլացումը։

Արդի էտապում սոցիալիստական երկրների դեմ ուղղված ամերիկյան ռադիոպրոպագանդան մոդեռնացված սիստեմ է, որը ճգնում է պրոպագանդել սոցիալիստական երկրները «խաղաղ ներթափանցման», «Արևելքն ու Արևմուտքը կամրջելու» քաղաքականության, սոցիալիստական գիտակցության «էրոզիայի» գաղափարներ։

Աշխարհի քաղաքական դրության փոփոխությունը ստիպում է ամերիկյան ռադիոպրոպագանդայի կազմակերպիչներին՝ ռադիոլսողներ նվաճելու նոր ուղիներ փնտրել։ Միանգամայն պարզ է, որ «Ամերիկայի ձայնի» հաղորդումների քաղաքականության «օբյեկտիվությունը» իրականում իմպերիալիստական բուրժուազիայի հակակոմունիստական, ռեակցիոն գաղափարների ջատագովությունն է։

Վ. Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

Իրավաբանական գիտությունների թեկնածու

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐՆ ՈՒ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Մեծ է սովետական իրավունքի դերը մարդկանց գիտակցականության բարձրացման, հասարակական շահերի ճիշտ գնահատման, կյանքի տարբեր ոլորտներում նրանց տեղն ու դերը կարգավորելու ուղղությամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Հասարակական գիտությունների հետագա զարգացման ու կոմունիստական շինարարության մեջ նրանց դերի բարձրացման մասին» որոշման մեջ (1967 թ.) շեշտված է հասարակական հարաբերությունների իրավական կարգավորման բնագավառում գիտահետազոտական աշխատանքներն ուժեղացնելու անհրաժեշտությունը։

Հասարակական կյանքի իրավական կարգավորումն իրականացվում է յուրահատուկ ուղիներով ու մեթոդներով։ Այստեղ էական են քաղաքացիների սուբյեկտիվ իրավունքներն ու պարտականությունները, որոնք գտնվում են որոշակի հարաբերակցության մեջ։ Այդ իրավունքների ու պարտականությունների օրենսդրական հարաբերակցությունը որոշ չափով տարբերվում է ռեալ կյանքում ստեղծվող իրավիճակից։ Պետականորեն օրինականացված կենսաձևն իրականում ոչ միշտ է համընկնում մարդկանց հարաբերություններում դրսևորվող նորմերին։

Իրավունքի սահմանված հնարավոր և պարտադիր վարքագիծն արտահայտվում է քաղաքացիների իրավունքներում ու պարտականություններում։ Սուբյեկտիվ իրավունքը որոշակի գործողություն կատարելու կամ դրանից ձեռնպահ մնալու հնարավորության չափ ու տեսակ է, իսկ պարտականությունը՝ հասարակական-պարտադիր գործողություն կատարելու կամ դրա կատարումից ձեռնպահ մնալու չափ ու տեսակ։ Ի տարբերություն բուրժուական դեմոկրատիայի, որի պայմաններում բնակչության զգալի մասի համար սոցիալական իրավունքներն ու պարտականությունները կրում են ձևական բնույթ, սոցիալիստական դեմոկրատիան ապահովում է աշխատավորների սոցիալ-քաղաքական իրավունքները և անձի ազատությունը, լայն հնարավորություններ ստեղծում պետական, տնտեսական ու հասարակական գործերի կառա-



վարմանն աշխատավորների մասնակցության համար։ Սակայն դեմոկրատական այս հնարավորությունները կարելի է իրականացնել համապատասխան պարտականությունների կատարման պայմաններում, որոնք, սակայն, չեն հակասում սոցիալիստական դեմոկրատիայի էությանը, պայմանավորված են նրանով և ուղղված են հասարակության ու նրա անդամների շահերի միասնության ապահովմանը։

* * *

Քաղաքացիների իրավունքներն ու պարտականություններն արտահայտում են օբյեկտիվ իրականության որոշակի երևույթներն ու պրոցեսները, մարդկանց օրինաչափ կապերն ու հարաբերությունները։ Այդ կապերի սոցիալիստական բնույթը պայմանավորվում է իրավունքների ու պարտականությունների բնույթով։ Սոցիալիստական հասարակարգի քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների հարաբերակցությունը դրսևորվում է որոշակի ձևերում։

Սուբյեկտիվ իրավունքը (կոնկրետ վարքագծի դրսևորման հնարավորությունը) հակադիր է իրավական պարտականությանը (պարտադիր, պետական և հասարակական հարկադրանքով ապահովվող վարքագծին)։ Սուբյեկտիվ իրավունքն ու պարտականությունն իրավական կարգավորման միասնական երևույթի տարբեր բևեռներն են։ Սուբյեկտիվ իրավունքն իրավազոր անձի շահերի պաշտպանության միջոց է, մինչդեռ պարտականությունը չունի այդպիսի հատկություն։ Դրանց իրականացումը տարբեր իրավահարաբերություններում կապված է իրավազոր և պարտապան անձի գործողությունների տարբեր աստիճանի ակտիվության հետ։

Քաղաքացին իրավունք ունի (օրենքի սահմաններում) դիմելու, որպեսզի իրեն աշխատանքի ընդունեն։ Հիմնարկ-ձեռնարկության ղեկավարը պարտավոր է բավարարել քաղաքացու պահանջը, եթե առկա են անհրաժեշտ պայմանները։ Սակայն օրենքով նախատեսված պայմանները չկատարելիս այն իրականացվում է պետական հարկադրանքի միջոցով։ Իրավունքի պահանջը չկատարելու դեպքում պետության օգնությանը դիմելը հնարավորություն է, իսկ տվյալ պահանջը բավարարելու պարտականությունը՝ պարտադիր անհրաժեշտություն։ Բայց այստեղից չի կարելի եզրակացնել, թե սուբյեկտիվ իրավունքը և պարտականությունը բացարձակ հակադրություն են, ընդհակառակը, դրանք փոխադարձ ժխտման ու բացառման բնույթ չունեն։ Սուբյեկտիվ իրավունքն ու պարտականությունը կարգավորում են հասարակական ու անձնական հարաբերությունները։ Սրանք մի նպատակ ունեն՝ բավարարել իրավազոր անձի, իսկ վերջին հաշվով՝ սոցիալիստական հասարակության շահերը։ Աշխատանքի սուբյեկտիվ իրավունքի իրականացումը կապված է ո՛չ միայն կոնկրետ անձի, այլ ամբողջ հասարակության շահերի բավարարման հետ, որովհետև առանձին անհատների շահերի պաշտպանությունը, նրանց նյութական, կուլտուրական և հոգևոր բարգավաճումը սոցիալիստական հասարակության արմատական խնդիրն է, նրա օրենքը։

Իրավունքի և պարտականության անխզելի կապը դրսևորվում է նաև այն բանում, որ մի շարք իրավահարաբերություններում նրանց բովանդակությունը համընկնում է միմյանց։ Այն, ինչ անձի սուբյեկտիվ իրավունքն է, միաժամանակ դրսևորվում է որպես նրա պարտականություն։ Օրինակ, աշխատանքի, կրթության (միջնակարգ), անաշխատունակ ծնողներին չափահաս

ժառանգների կողմից խնամելու և այլ սուբյեկտիվ իրավունքները միաժամանակ և պարտականություններ են։ Չի կարելի կարծել, թե աշխատելու, միջնակարգ կրթություն ստանալու հնարավորությունը միայն իրավունք է։ Այստեղ պարտականությունը ևս հնարավորություն է։ Դա անձի շահերը պաշտպանող, սոցիալիստական հասարակության էությամբ պայմանավորված պարտականություն-հնարավորություն է։

Սոցիալիստական հասարակարգում իրավունքների ու պարտականությունների անխզելիությունն ընդգծում էին մարքսիզմի կլասիկները։ Բանվորների միջազգային ընկերության ընդհանուր կանոնադրության մեջ (մշակված Կ. Մարքսի կողմից) գրված է. «Ընկերությունը գտնում է, թե չկան իրավունքներ առանց պարտականությունների, չկան պարտականություններ առանց իրավունքների» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, էջ 459)։

Իրավունքների ու պարտականությունների սերտ կապը պայմանավորված է սոցիալիստական հասարակության էությամբ, նրա գոյության ու զարգացման պայմաններով ու օրինաչափություններով։

Սուբյեկտիվ իրավունքների ու պարտականությունների հարաբերակցության համապատասխանությունը հասարակական հարաբերությունների կարգավորման իրավական ընդհանուր սկզբունք է։ Այն նշանակում է, որ իրավունքով կարգավորվող հասարակական հարաբերությունների մասնակիցների մի կողմի սուբյեկտիվ իրավունքներին համապատասխանում է մյուս կողմի իրավական պարտականությունը։ Համապատասխանությունը սոցիալիստական հասարակարգում իրավունքների ու պարտականությունների կապի ունիվերսալ, համընդհանուր սկզբունք է։ Չկա և չի կարող լինել այնպիսի իրավական հարաբերություն, որի կողմերից մեկը օժտված լինի իրավունքով, իսկ մյուսը՝ զուրկ պարտականությունից և հակառակը՝ մի կողմն ունենա պարտականություն, մյուսը՝ չունենա սուբյեկտիվ իրավունք։

Եթե հասարակական հարաբերություններին չտրվի իրավական հարաբերության բնույթ, եթե նրանք չկարգավորվեն իրավունքի նորմերով, ապա դժվար է պատկերացնել ո՛չ միայն իրավունքի ու պարտականության համապատասխանությունը, այլև դրանց գոյության իմաստը, դրանց դերը հասարակական կյանքում ընդհանրապես։ Իրավահարաբերությունն իրավունքի և պարտականության կենսագործման միակ ուղին է, այն օղակը, որի շրջանակներում կատարվում է իրավունքի ու պարտականության իրականացումը։ Իրավահարաբերությունը հասարակական հարաբերությունների կարգավորման, կազմակերպման պետական կարևոր միջոց է։

Սոցիալիզմի պայմաններում իրավահարաբերության մասնակիցների իրավունքներն ու պարտականությունները համապատասխանում են միմյանց, ներդաշնակ են. այստեղ հասարակության սոցիալ-տնտեսական և հասարակական-քաղաքական պայմանները բացառում են այնպիսի հարաբերություններ, որոնց մեջ կողմերից մեկը օժտված լինի լայն իրավունքներով, իսկ մյուսը՝ կրի միայն պարտականություններ։ Սոցիալիզմի հասարակական զարգացման օրենքները օբյեկտիվորեն ծնում են քաղաքացիների իրավահավասարություն, որն օրինականացնում է պետությունը։

Ի տարբերություն բուրժուական հասարակարգի, որտեղ ճանաչվում է քաղաքացիների ձևական իրավահավասարությունը, սոցիալիզմն ապահովում է մարդկանց ռեալ, փաստական, այլ ոչ միայն օրենքով սևեռված իրավահավասարությունը։ Բուրժուական պետության հռչակած կապիտալիստի ու բան-



վորի ձևական իրավահավասարությունն, իրականում, նրանց իրավունքների ու պարտականությունների անհավասարությունն է, որը պայմանավորված է սոցիալական դրության անհավասարությամբ, սեփականության միջոցների տիրապետման անարդարացիությամբ։ Սոցիալիստական հասարակության անդամների իրավունքների ու պարտականությունների հավասարությունը պայմանավորված է նրանց սոցիալ-տնտեսական պայմանների հավասարությամբ։

Սոցիալիստական պետությունը ո՛չ միայն հռչակում է կյանքի տարբեր բնագավառներում քաղաքացիների հավասար իրավունքներն ու պարտականությունները, այլև հետևողականորեն իրականացնում է դրանք։ Այդ, մասնավորապես, արտահայտվում է նրանում, որ հարկադրական միջոցներ են կիրառվում իրենց իրավունքների ու պարտականությունների կատարումից խուսափողների նկատմամբ։

Քաղաքացիների իրավահավասարության սկզբունքի ապահովման բնորոշ գիծը ո՛չ միայն պետական ու հասարակական միջոցներով պարտականությունների ճիշտ և անշեղ կատարումն է, այլև քաղաքացիների իրավունքների ու ազատությունների պետական պաշտպանությունը։ Սոցիալիստական հասարակարգում իրավահավասարության կարևոր պայմանն իրավունքների հավասար պաշտպանությունն է, պարտականությունների կատարման հավասար միջոցների կիրառումը։ Քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների համապատասխանությունը սոցիալիստական դեմոկրատիայի կարևոր առանձնահատկությունն է։ Իրավահարաբերությունը միշտ առկա է բոլոր այն դեպքերում, երբ այս կամ այն հասարակական հարաբերությունը կարգավորվում է իրավունքի նորմով, այսինքն՝ երբ առկա է իրավական նորմը, այն ակտը, որտեղ արտահայտված է տվյալ նորմը (օրենք, օրենսգիրք և այլն)։

Սահմանելով մարդկանց հասարակական անհրաժեշտ պարտադիր վարքագիծ, պետությունը դրա հետ մեկտեղ երաշխավորում է նրանց ազատության և անձեռնմխելիության իրավունքի ապահովումը։ Քաղաքացիների ազատության և անձեռնմխելիության իրավունքներն արձանագրված են մասնավորապես ՍՍՀՄ սահմանադրության 127-րդ, 128-րդ հոդվածներում, ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների քրեական դատավարության հիմունքների 4-րդ, 6-րդ հոդվածներում և այլ նորմատիվ ակտերում։ Քրեական իրավունքի նորմերը պետության և քաղաքացիների միջև ստեղծում են անընդհատ շարունակվող, մշտական բնույթի իրավահարաբերություններ, ուր քաղաքացիների ազատության և անձեռնմխելիության իրավունքին համապատասխանում է սոցիալիստական համակեցության կանոնները հարգելու, իրավական նորմերի պահանջները կատարելու պարտականությունը։ Առանց այդպիսի իրավունքի քրեական նորմերով նախատեսված վարքագծի պահպանման քաղաքացիների պարտականությունը կվերածվեր այս կամ այն անձանց նկատմամբ ոչնչով չսահմանափակված կամայականության, սոցիալիստական օրինականության կոպիտ խախտման միջոցի։

Իրավահարաբերությունը հավասարապես տարածվում է ինչպես քաղաքացիների, այնպես էլ քաղաքացիների ու սոցիալիստական պետության փոխհարաբերության բնագավառներում։ Պետությունը քաղաքացիների նկատմամբ ունի և կրում է որոշակի պարտականություններ, որոնք բխում են քաղաքացիների իրավունքների փաստացի իրականացման համար անհրաժեշտ պայմանների ապահովումից։ Եթե պետությունը նյութական և իրավական պայմաններ

ստեղծելու պարտականություն չկրի քաղաքացիների հանդեպ, ապա դժվար է պատկերացնել նրանց աշխատանքի, կրթության, սոցիալական ապահովության, պետության գործերի կառավարմանը մասնակցելու և բազմաթիվ ու բազմապիսի այլ իրավունքների իրականացումը։ Սովետական պետության պարտավորությունները պայմանավորված են նրա աշխատավորական, ժողովրդական, սոցիալիստական էությամբ, կազմում են համաժողովրդական դեմոկրատիայի և օրինականության անկյունաքարը։ Իրավունքների ու պարտականությունների համապատասխանության սկզբունքը սոցիալիստական պետության, նրա քաղաքացիների փոխհարաբերությունների բնորոշ հատկանիշն է։ Սուբյեկտիվ իրավունքների և պարտականությունների հարաբերակցությունների (իրավազորի և պարտավորյալի), այլև առանձին անձի իրավունքների ու պարտականությունը համընկնում են այն դեպքում, երբ վարքագծի հնարավորությունը միաժամանակ նաև անհրաժեշտություն է (պարտականություն)։ Այն, օրինակ, համընկնում է աշխատանքի, կրթության, սահմանադրային սուբյեկտիվ իրավունքների իրականացման իրավահարաբերություններում։ Աշխատելը և միջնակարգ կրթություն ստանալը քաղաքացու համար և՛ հնարավորություն է, և՛ պարտականություն։ Աշխատելու և սովորելու համար անհրաժեշտ պայմանների ստեղծումը պետության համապատասխան օրգանների ո՛չ միայն իրավունքն է, այլև պարտականությունը։ Այդ պարտականության կատարումը խախտելու կամ ոչ պատշաճ կատարելու դեպքում տվյալ օրգանը պատասխանատու է պետության առջև։ Բայց իրավունքներն ու պարտականությունները համընկնում են ո՛չ միայն իրավահարաբերության մասնակիցների (իրավազորի և պարտավորյալի), այլև առանձին անձի իրավունքների ու պարտականությունների միջև։ Այսպես. անաշխատունակ ծնողներին չափահաս զավակների կողմից պահելու օրենքով սահմանված իրավունքներն ու պարտականությունները միմյանց համընկնում են։ Չափահաս որդին իրավունք ունի և պարտավոր է պահել և խնամել անաշխատունակ, զառամյալ ծնողներին։ Կամ, ՍՍՀՄ զինված ուժերում ծառայելը սովետական մարդկանց և՛ իրավունքն է, և՛ պարտականությունը և այլն։

Իրավունքի նորմով սահմանված անձի որոշակի վարքագծի հնարավորությունը երբեմն նաև նրա պարտականությունն է, հասարակայնորեն պարտադիր անհրաժեշտությունը։ Այդպիսին են, օրինակ, պաշտոնատար անձի լիազորությունները, որոնք միաժամանակ և՛ իրավունք են, և՛ պարտականություն։ Հանցանքի հայտաբերման յուրաքանչյուր դեպքում քրեական գործ հարուցելը քննիչի ու դատախազի և՛ իրավունքն է, և՛ պարտականությունը։ Կամ՝ պահանջվող պայմանների և փաստաթղթերի առկայության դեպքում սովետական քաղաքացուն կենսաթոշակ նշանակելը սոցիալական ապահովության օրգանների իրավունքն ու պարտականությունն է։

Ընդհանրապես իրավունքներն ու պարտականությունները համընկնում են, երբ հասարակության զարգացման պայմաններին ու պահանջներին համապատասխան քաղաքացիները կատարում են իրենց իրավական պարտականությունները։ Նման դեպքերում, թեև օրենքում կամ այլ իրավական ակտում չի նշված տվյալ գործողությունը կատարելու քաղաքացիների սուբյեկտիվ իրավունքը, բայց այն ոչ միայն ենթադրվում է, այլև կա։

Սովետական մարդկանց ճնշող մեծամասնության համար իրավական պարտականությունների կատարումը դարձել է կենսական պահանջ, և դրանց կատարումը հավասարազոր է սուբյեկտիվ իրավունքի իրականացմանը։ Սովետական մարդիկ, իրականացնելով սուբյեկտիվ իրավունքները, նպաստում են սոցիալիստական դեմոկրատիայի զարգացմանը։ Դրա համար կոմունիստական կուսակցությունն ու պետությունը ձեռք են առնում անհրաժեշտ միջոցներ աշխատավորների հասարակական ակտիվությունը բարձրացնելու, նրանց իրավունքների իրականացումը ապահովելու համար։



Իրավունքների և պարտականությունների համընկնումը հասարակության սոցիալ-տնտեսական և կուլտուրական առաջադիմության արդյունք է։ Մարդկանց նյութական պայմանների բարելավումը, գիտակցության ու կուլտուրական մակարդակի բարձրացումը, հասարակական կյանքի սոցիալիստական գոյաձևը հանգեցնում են այն բանին, որ քաղաքացիները ճիշտ են հասկանում իրենց տեղն ու դերը հասարակական հարաբերությունների սիստեմում, շահագրգռված են դրանց զարգացման ու կատարելագործման համար։ Իրավունքների ու պարտականությունների համընկնումը հասարակության զարգացման, նրա կազմակերպվածության աստիճանը որոշող գործոն է, որը պայմանավորված է օբյեկտիվ (հասարակական կյանքի սոցիալիստական ձևով) և սուբյեկտիվ պայմաններով։ Սուբյեկտիվ պայմանները ո՛չ միայն մարդկանց բարձր գիտակցականությունն են, այլև օբյեկտիվ իրավունքի նորմերում սովետական հասարակության զարգացման պահանջների ճիշտ և գիտական արտացոլումը։ Այդ պահանջներն իրենց կենտրոնացված արտահայտությունն են գտնում կոմունիստական կուսակցության, սովետական ժողովրդի առջև դրված խնդիրներում, որոնք պետական ուժ են ստանում իրավունքների նորմերում։ Վերջիններս սահմանում են մարդկանց նպատակահարմար և անհրաժեշտ վարքագծի այնպիսի կանոններ, որոնք ելնում են հասարակական կյանքի զարգացման հեռանկարներից և տվյալ պայմաններում առավել ռացիոնալ են համակցում հասարակության յուրաքանչյուր և բոլոր անդամների շահերը։ Դրանք պրակտիկորեն դրսևորվում են աշխատավոր մասսաների անհրաժեշտ, նպատակահարմար և պարտադիր վարքագծի գիտակցման և դրա հիման վրա կառուցվող կոնկրետ գործողությունների ու վարքագծի մեջ։

ՍՄԿԿ ծրագրում նշված է, որ պետական ու հասարակական կազմակերպությունների ողջ սիստեմը, կոմունիստական ինքնավարության միասնական նորմերը հանգեցնում են իրավունքների ու պարտականությունների ներդաշնակության։ Իրավունքների ու պարտականությունների միասնությունը նյութական ու կուլտուրական բարենպաստ պայմանների ստեղծման հետ մեկտեղ պահանջում է կազմակերպչական ու դաստիարակչական լայն գործունեության ծավալում։ Սրան են ուղղված մեր կուսակցության ջանքերը։

Աշխատավորների դաստիարակության խնդիրը կուսակցությունը լուծում է, ամենից առաջ, արտադրական, աշխատանքային գործունեությամբ։ Գիտակցական կարգապահության արմատավորումը սովետական հասարակության բոլոր անդամների հիմնական խնդիրն է։ ՍՄԿԿ XXIII համագումարը նշեց, որ աշխատանքային կարգապահության ամրապնդումը, սոցիալիստական հասարակության գործող բոլոր օրենքներն ու կանոնները անպայման կատարելու պահանջը ոչ միայն չեն հակասում սովետական հասարակարգի դեմոկրատական հիմունքներին, այլև ընդհակառակը, պայմանավորում են սովետական սոցիալիստական դեմոկրատիզմի զարգացումը, ընդլայնումը։ Ամբողջ հասարակության սոցիալիստական կազմակերպվածությունը հանուն յուրաքանչյուր մարդու և յուրաքանչյուրի սոցիալիստական կարգապահություն հանուն ամբողջ հասարակության՝ ահա սոցիալիստական դեմոկրատիայի էությունը։

Ն. Մ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՀԱՄԱՀԱՐԹՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Երկրի հողային պաշարները (հատկապես գյուղատնտեսության համար պիտանի հողերը) այսպես թե այնպես սահմանափակ են, և դա հարկադրում է մեկ երկրում ավելի շուտ, մյուսում ավելի ուշ ինտենսիվ օգտագործել եղած հողերը։ Ինչպես նշել է Ֆ. Էնգելսը, մարդկության տրամադրության տակ եղած արտադրաուժերն անսահման են։ Հողի արտադրողականությունը կարելի է անվերջ բարձրացնել կապիտալի, աշխատանքի ու գիտության գործադրությամբ (տե՛ս Ֆ. Էնգելս, Քաղաքատնտեսության քննադատության ուրվագծեր, 1947, էջ 28)։

Ինչպես ցույց է տվել տարբեր երկրների փորձը, գյուղատնտեսության ինտենսիվացումը, հողի ավելի ինտենսիվ օգտագործումը, շարունակ կատարվող բարելավումները հանգեցնում են նրան, որ այս ճյուղում յուրաքանչյուր հաջորդ ներդրումն ավելի մեծ արդյունք է տալիս (միավոր հողատարածության հաշվով), քան նախորդը։ Գյուղատնտեսության ինտենսիվացումը, վերջին հաշվով, ուղեկցվում է այս ճյուղի թողարկվող արտադրանքի անընդհատ ավելացմամբ միևնույն, իսկ երբեմն էլ նույնիսկ կրճատվող հողատարածությունից։ Հենց դրանով էլ որոշվում է գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման տնտեսական առավելությունը՝ դրա էքստենսիվ զարգացման համեմատ։ Ինտենսիվացումը մեր երկրի գյուղատնտեսության զարգացման գլխավոր ուղին է։ Ծանոթանանք գյուղատնտեսության ինտենսիվացման ընթացքը բնորոշող մի քանի տվյալների հետ (տե՛ս հաջորդ էջի աղյուսակը)։

Այսպիսով, նշված ժամանակաշրջանում երկրի բնակչությունն ավելացել է 21, գյուղատնտեսության մեջ աշխատողների բացարձակ թիվն իջել է մոտ 12 տոկոսով, իսկ գյուղատնտեսական համախառն արդյունքի արժեքը համադրելի գներով ավելացել է 2 անգամ։ Այս թվերը հաստատում են Վ. Ի. Լենինի այն դրույթը, որ գյուղի փոքրացող բնակչությունն արտադրում է մթերքների մեծացող քանակություն, ընդհանուր ազգաբնակչության ավելի ու ավելի մեծացող զանգվածի համար (տե՛ս Երկեր, հատ. 5, էջ 144)։



Գյուղատնտեսության արդյունքի, հողատարածության և գյուղում աշխատողների թվի շարժը
(1940—1967 թթ.)

| | ՍՍՀՄ-ում | | | Հայկական ՍՍՀ-ում | | |
|---|---|---|---|---|---|---|
| | 1940 | 1967 | շարժը տոկոսով | 1940 | 1967 | շարժը տոկոսով |
| Ամբողջ բնակչությունը մլն մարդ | 194,1 | 236,7 | 121 | 1,320 | 2,306 | 175 |
| Գյուղատնտեսության մեջ աշխատողների թիվը | 35 | 31 | 88,6 | 0,290 | 0,220 | 76 |
| Գյուղատնտեսության մշակելի հողերը (վարելահող, այգիներ) մլն հա | 150,6 | 223,4 | 143,3 | 0,628 | 0,528 | 84,1 |
| Գյուղատնտեսության համախառն արդյունքը մլն ռ. | 39.600 | 78.100 | 198 | 130 | 389 | 299 |
| Նույնը՝ 100 հա մշակելի հող. հաշվով, հազ. ռ. | 26,3 | 34,9 | 133 | 20,7 | 73,8 | 356 |
| Մեկ աշխատողի հաշվով, ռ. | 1131 | 2520 | 222,7 | 448,3 | 1768,2 | 394 |

Համեմատելով ՍՍՀՄ գյուղատնտեսության համախառն արդյունքի և մշակելի հողատարածությունների աճը (21 և 43,3 տոկոս), տեսնում ենք, որ անցած շրջանում գյուղատնտեսական արտադրանքն ավելացել է գլխավորապես ինտենսիվացման (գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, անասունների գլխաքանակի ավելացման ու մթերատվության բարձրացման) հաշվին։ Այլ է պատկերը Հայաստանում, ուր գյուղատնտեսության համախառն արտադրանքը նույն ժամանակաշրջանում ավելացել է մոտ 3 անգամ (ցանքատարածությունների կրճատման պայմաններում)։ Դա նշանակում է, որ մեր հանրապետությունում գյուղատնտեսական արտադրանքն ավելացել է բացառապես գյուղատնտեսության ինտենսիվացման հաշվին։ Դրա օբյեկտիվ պատճառներից մեկը Հայաստանի սակավահողությունն է, իսկ մյուսը՝ բնական յուրահատուկ պայմանների, ինչպես նաև աշխատուժի առկայությունը, որոնք և թույլ են տալիս զարգացնել բարձրարժեք և միաժամանակ աշխատատար հարավային մի շարք կուլտուրաներ։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ներկայումս մեր հանրապետության 100 հա մշակելի հողատարածության հաշվով ընկնում է մոտ 3 անգամ ավելի հիմնական ֆոնդեր և 2-ից ավելի էներգետիկ կարողություններ, քան միջինը Միությունում. բացի դրանից, նույն հողատարածության վրա մեզ մոտ զբաղված է 2,5—3 անգամ ավելի աշխատող, ուրեմն և համապատասխանորեն ավելի շատ կենդանի աշխատանք է ծախսվում միութենական միջին ցուցանիշի համեմատ։ Միաժամանակ 100 հեկտար հողատարածությունից Հայաստանում առնվազն 2 անգամ ավելի գյուղատնտեսական արդյունք է ստացվում։ Այլ կերպ ասած, մեր հանրապետության գյուղատնտեսության ինտենսիվության մակարդակը, ինչպես նրա ծախքերի, այնպես էլ ստացվող արդյունքի տեսակետից, զգալիորեն գերազանցում է ՍՍՀՄ միջին մակարդակը։ Մոտավորապես նույնն է պատկերը նաև Անդրկովկասի մյուս հանրապետություններում։

Հայաստանում, ինչպես և Անդրկովկասի մյուս հանրապետություններում գյուղատնտեսական աշխատանքի ֆոնդատեխնիկական զինվածությունը (մեկ աշխատողին ընկնող ֆոնդերը և էներգետիկ կարողությունները) 20—25 տո-

կոսով ավելի ցածր է Միության միջին մակարդակից։ Դա իր արտահայտությունն է գտնում այս ճյուղի համեմատաբար մեծ աշխատատարության և կենդանի աշխատանքի ցածր արտադրողականության մեջ։ Այսպես, Հայաստանի գյուղատնտեսության մեկ աշխատողին 1967 թ. Միության միջին մակարդակի համեմատ ավելի քիչ արտադրանք է ընկնում (մոտ 25 տոկոս)։

Հայաստանի գյուղատնտեսությունն աչքի է ընկնում համեմատաբար ավելի բարձր ինտենսիվությամբ։ Բայց որքան ինտենսիվ է վարվում այս կամ այն շրջանի գյուղատնտեսությունը, այնքան ավելի մեծ է եկամուտների գոյացման, այդ թվում հատկապես ռենտագոյացման տնտեսական գործոնների դերը՝ բնականի նկատմամբ։

Գյուղատնտեսության ինտենսիվացումը հարուցում է դիֆերենցիալ ռենտայի և հատկապես ռենտա II-ի գոյացման, բաշխման և օգտագործման հետ կապված մի շարք առօրյա հարցեր։ Այդ հարցերից մեկը բնատնտեսական տարբեր գոտիներում աշխատող տնտեսությունների վերարտադրության պայմանների խիստ, տնտեսապես չարդարացված տարբերությունների (շերտավորման) հաղթահարումն է, կամ, այսպես կոչված, համահարթեցման պրոբլեմի լուծումը։ Գյուղատնտեսության բնական պայմանների բազմազանությունը երկրի տարբեր գոտիների, մարզերի ու շրջանների միջև արտահայտվում է այդ գոտիներում աշխատող տնտեսությունների ստացած արտադրանքի և եկամուտների անհավասարությամբ։

Այսպես, օրինակ, մի շարք տարիների միջին տվյալներով, Հյուսիսային Կովկասի կոլտնտեսություններն ու սովխոզները մեկ հեկտարից ստանում են 15—17 ցենտներ հացահատիկային կուլտուրաների բերք, մեկ ցենտների վրա ծախսելով ընդամենը 0,6—0,9 մարդ-օր։ Մինչդեռ հարևան Անդրկովկասում բերքատվությունը հազիվ հասնում է 9—10 ցենտների, մեկ ցենտների ծախսումները 2—5 մարդ-օր են։ Իսկ Ռուսաստանի հյուսիս-արևմտյան մարզերում հացահատիկի բերքատվությունը չի անցնում 6—8 ցենտներից և մեկ ցենտների ծախքերը կազմում են 5—8 մարդ-օր, այսինքն՝ 8—9 անգամ շատ են Հյուսիսային Կովկասի ծախքերից (Е. С. Карнаухова, Земельные отношения в социалистическом обществе, М., 1967, стр. 36)։

Մյուս օրինակը. խաղողի այգիների միջին բերքատվությունը Ուկրաինայի կոլտնտեսություններում 1963—1965 թթ. կազմել է 26,5 ցենտներ մեկ հեկտարից, 1 ցենտների ինքնարժեքը՝ 15 ռ. է։ Մոլդավիայում մեկ հեկտարից ստացվել է առավելագույն բերք (47,4 ցենտներ) և կատարվել նվազագույն ծախսերը (ընդամենը 10,3 ռ.)։ Իսկ Անդրկովկասի կոլտնտեսությունները մեկ հեկտարից չնայած ստացել են 44,1 ցենտներ բերք, որը քիչ է զիջում Մոլդավիային, սակայն մեկ ցենտների վրա ծախսել են 32,2 ռուբլի, այսինքն՝ 3,1 անգամ ավելի աշխատանքային և նյութական միջոցներ։ Դրա պատճառն արտադրության ցածր մեքենայացումն է, որը իր ներկա վիճակով չի նպաստում այս ճյուղի արագ զարգացմանը. Անդրկովկասում, հատկապես Հայաստանում, մեկ հեկտար այգու վրա 2—3 անգամ ավելի շատ կենդանի աշխատանք է ծախսվում, քան Միության մյուս շրջաններում։

Նման օրինակները շատ են։ Գյուղատնտեսության մեջ ծախսերի և ստացած արդյունքի նմանօրինակ տարբերություններն անդրադառնում են տարբեր գոտիներում աշխատող տնտեսությունների գործունեության վրա և տնտե-



սական զարգացման անհավասար պայմաններ ու հնարավորություններ ստեղծում։

Վերարտադրության տնտեսական հավասար պայմանների ապահովման պրոբլեմը բնորոշ և առանձնահատուկ է միայն սոցիալիստական արտադրաեղանակին։ Այդ պրոբլեմի ծագումը պայմանավորված է ո՛չ թե մարդկանց բարի ցանկությամբ, այլ սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման օբյեկտիվ բնույթով և ցույց է տալիս սոցիալիզմի առավելությունները տնտեսական օրենքների օգտագործման ասպարեզում։

Հայտնի է, որ կապիտալիզմի օրոք ապրանքարտադրողների շերտավորումը, վերջին հաշվով, արտահայտվում է նրանց դասակարգային վիճակով։ Ապրանքարտադրողների շերտավորումը, կատաղի մրցապայքարի ընթացքում նրանց մի մասի հարստացումը՝ մյուս մասի հարստահարման (աղքատացման) հաշվին արժեքի օրենքի գործողության նույնքան «բնական» հետևանքն է, որքան, ասենք, տեխնիկայի զարգացումը։

Սոցիալիզմի օրոք ապրանքային արտադրության պայմանները, իհարկե, չեն բացառում ապրանքարտադրող ձեռնարկությունների որոշ շերտավորումը, քանի որ դրանք հաճախ օգտագործում են (մանավանդ գյուղատնտեսության մեջ) ոչ միատեսակ բնատնտեսական գործոնները, ուստի և տարբեր արդյունքի են հասնում իրենց գործունեության ընթացքում։ Սակայն սոցիալիզմի բունէությունը բացառում է ապրանքարտադրողների այնպիսի շերտավորումը, որը կարող է ձեռնարկությունների մի մասին սնանկացնել, մյուսին հարստացնել, ուրիշի աշխատանքը շահագործել, որքան էլ խոր լինի տնտեսական ցուցանիշների շերտավորումն առանձին տնտեսությունների կամ շրջանների միջև։

Պայքարը տնտեսապես չհիմնավորված շերտավորման, այսինքն՝ արժեքի օրենքի գործողության տարերային հետևանքների դեմ, հանուն հավասար պայմանների զարգացման սոցիալիստական պլանային տնտեսության կենսական խնդիրներից մեկն է։ Համահարթեցման այս պրոբլեմը նույն նշանակությունը չունի կոլտնտեսությունների ու սովխոզների համար։ Այն այժմ շարունակում է մնալ որպես ներկոլտնտեսային հարց։ Ահա թե ինչու կուսակցության ծրագրում ասված է. «Անհրաժեշտ է ապահովել եկամուտների բարձրացման ավելի ու ավելի հավասար տնտեսական պայմանների ստեղծում տարբեր գոտիներում, ինչպես նաև առանձին գոտիների ներսում բնատնտեսական անհավասար պայմաններում գտնվող կոլտնտեսությունների համար, այն հաշվով, որ ավելի հետևողականորեն իրագործվի հավասար աշխատանքի դիմաց հավասար վարձատրության սկզբունքը կոլտնտեսային ամբողջ սիստեմի մասշտաբով» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 99)։

Նշված պրոբլեմի լուծումը սերտորեն կապված է, մի կողմից՝ կոլտնտեսային սեփականության զարգացման և հանրայնացման աստիճանի բարձրացման, մյուս կողմից՝ գյուղի արտադրաուժերի հետագա զարգացման ընթացքի հետ։

Վերջին տարիների տնտեսական քաղաքականության մի շարք միջոցառումների կենսագործումը գյուղատնտեսության ասպարեզում էական նշանակություն ունեցավ երկրի տարբեր շրջաններում կոլտնտեսությունների զարգացման համար հավասար պայմաններ ստեղծելու առումով։ Այստեղ անհրաժեշտ է հիշատակել երեք կարևոր հանգամանք. գյուղատնտեսական արտադրանքի մթերման գների կարգավորումը և բարձրացումը, հատկապես վատ գոտիների համար, երկրորդ՝ 1966 թ. երկրի բոլոր կոլտնտեսություններում

կոլտնտեսականների երաշխավորված վարձատրության կիրառումը, մի բան, որն անմիջապես սահմանում և ապահովում է կոլտնտեսային աշխատանքի վարձատրության նվազագույն չափը, ելնելով սովխոզներում գործող համապատասխան նորմաներից։ Այս միջոցառումը մի քանի անգամ նվազեցնում է տնտեսապես չարդարացված այն խզումը, որը երկրի տարբեր շրջաններում գոյություն ուներ կոլտնտեսականի տարեկան վարձատրության ասպարեզում։ Վերջապես, եթե մինչև վերջերս եկամտահարկ էին վճարում բոլոր կոլտնտեսությունները (հարկը գանձվում էր համախառն եկամտից), ապա ներկայումս հարկվում են միայն այն տնտեսությունները, որոնց զուտ եկամուտն անցնում է 15 տոկոս շահութաբերության մակարդակից, և կոլտնտեսականի միջին ամսական վարձատրությունը 60 ռուբլուց ավելի է։ Դա ևս որոշ չափով մեղմացնում է այն զգալի տատանումները, որ գոյություն ունեն կոլտնտեսային արտադրության շահութաբերության ասպարեզում։ Սակայն դեռևս լիովին չի լուծվում տնտեսական շերտավորման պրոբլեմը։ Ինչպես ցույց է տալիս կոլտնտեսային էկոնոմիկայի տնտեսական ցուցանիշների վերլուծությունը, դրանց տարբերությունն առանձին շրջանների միջև առանձին դեպքերում որոշ չափով մեղմանում է, իսկ մյուս շրջանների կամ գոտիների միջև հակառակ տենդենց է նկատվում։

Հանրապետության կոլտնտեսությունների զարգացման տնտեսական պայմանների գոտիական շերտավորումը ամենից առաջ դրսևորվում է Արարատյան դաշտի և լեռնային շրջանների տնտեսական գործունեության արդյունքների միջև։ Վերջին 10 տարիների (1958—1967 թթ.) տվյալների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ տնտեսական արդյունավետության հիմնական ցուցանիշների գծով, այն է՝ միավոր հողատարածությանն ընկնող հիմնական ֆոնդերի, գյուղատնտեսական համախառն արտադրանքի և զուտ եկամտի, ինչպես նաև կոլտնտեսականի տարեկան վարձատրության գծով եղած տարբերությունները Արարատյան դաշտի և հանրապետության լեռնային շրջանների միջև որոշակի չափով նվազել են։ Սակայն կոլտնտեսությունների վերարտադրության պայմանների, կուտակման ու սպառման չափերի ասպարեզում եղած տարբերությունների համահարթեցումը չափազանց դանդաղ է ընթանում։ 1965—1967 թթ. միջին տվյալներով, հանրապետության առաջավոր գոտու՝ Արարատյան դաշտի կոլտնտեսություններում 100 հա հողատարածության հաշվով ընկնում է 3,6 ավելի հիմնական ֆոնդեր, մոտ 5 անգամ ավելի համախառն արտադրանք և 5-ից ավելի զուտ եկամուտ, քան լեռնային գոտիների կոլտնտեսություններում (Եղեգնաձոր, Շիրակ, Զանգեզուր և այլն)։ Մեկ կոլտնտեսականի աշխատանքի տարեկան վարձատրությունը տատանվում է մոտ երկու անգամ։ Այսպիսով, գոյություն ունեն արտադրաֆոնդերի և աշխատուժի վերարտադրության խիստ անհավասար պայմաններ, որոնք ակնհայտորեն վկայում են դիֆերենցիալ հողային ռենտայի գոյության և գործողության մասին։

Սակայն անհրաժեշտ է ուշադրություն նվիրել մի այլ հանգամանքի, որը նշված համահարթեցման իրական պատճառն է։ Ինչպես ցույց է տալիս ուսումնասիրությունը, վերոհիշյալ համահարթեցման պրոցեսը կատարվել է վերջին տասնամյակում Արարատյան դաշտի տնտեսության զարգացման չափազանց ցածր տեմպերի հետևանքով։ Այս գոտու կոլտնտեսությունների արտադրությունն ավելացել է (10 տարում) 3—3,5 անգամ ավելի ցածր տեմպերով, քան հանրապետության մյուս գոտիներում։ Այժմ Արարատյան դաշտի



կոլտնտեսությունների առաջ ծառացել են մի շարք տեխնիկա-տնտեսական պրոբլեմներ, սկսած գոտու հիմնական ճյուղի՝ այգեգործության տեխնիկական հիմքի վերափոխումից, գնագոյացման հարցերից մինչև աշխատանքի կազմակերպման ու վարձատրության սիստեմի արմատական կատարելագործման անհրաժեշտությունը։ Այս պրոբլեմների լուծմամբ առաջիկայում կարագանա հանրապետության հիմնական գյուղատնտեսական գոտու զարգացումը։ Իսկ դա նշանակում է, որ առաջիկայում զարգացման նորմալ պայմաններում Արարատյան դաշտի և մյուս լեռնային գոտիների միջև եղած տնտեսական շերտավորումը ո՛չ թե կմեղմանա, այլև, ամենայն հավանականությամբ, ավելի կսրվի։

Ուրեմն, ինչպե՞ս, ի՞նչ ուղիներով պետք է լուծվի վերարտադրության հավասար պայմանների ստեղծման այս պրոբլեմը։

Քանի որ տարբեր գոտիներում (հաճախ նաև այս կամ այն առանձին գոտու ներսում) աշխատող կոլտնտեսությունների տնտեսական մակարդակի շերտավորումը պայմանավորված է հիմնականում դիֆերենցիալ հողային ռենտայի գոյությամբ և կոլտնտեսային էկոնոմիկայի վրա նրա ունեցած ազդեցությամբ, ապա պարզ է, որ վերոհիշյալ պրոբլեմի լուծումը շատ բանով առնչվում է ռենտային բնույթի եկամուտների ճիշտ հաշվառման և բաշխման հարցի հետ։

Անհրաժեշտ է ընդգծել, որ քննարկվող պրոբլեմը սոցիալիստական ագրարային հարաբերությունների հետագա զարգացման ու կատարելագործման ընդհանուր պրոբլեմի բաղկացուցիչ մասերից մեկն է։ Ներկայումս գյուղատնտեսական յուրաքանչյուր ձեռնարկություն զանազան ապրանքադրամական պարտավորություններ է կրում հասարակության հանդեպ (գյուղատնտեսական մթերքների մթերումների առաջադրանք, եկամտահարկ, շահույթից մասհանումներ և այլն), որոնց միջոցով կատարվում է այս ճյուղում ստեղծված ազգային եկամտի, այդ թվում և դիֆերենցիալ ռենտայի վերաբաշխումը գյուղատնտեսության և արդյունաբերության միջև։ Ի՞նչ չափով և ի՞նչ ձևերով է կատարվում այս վերաբաշխումը։

Պրոֆեսոր Ի. Լապտևի հաշվարկներով, 1965 թ. երկրի գյուղատնտեսության մեջ ստեղծվել էր ընդամենը 22,7 մլրդ ռուբլու զուտ եկամուտ, այդ թվում կոլտնտեսություններում՝ 14,5 մլրդ։ Միևնույն ժամանակ այդ եկամտից գների միջոցով գանձվել է պետական բյուջե 7,1 մլրդ և եկամտահարկի միջոցով՝ մոտ 1 մլրդ ռուբլի (տե՛ս «Экономика сельского хозяйства, 1967, № 4, стр. 49)։ Վերաբաշխված զուտ եկամտի ճնշող մասը (88 տոկոս) գանձվել է գների մեխանիզմի միջոցով, իսկ չնչին մասը՝ եկամտահարկի ձևով։ Այս առիթով վերջին տարիներս մեր տնտեսագետները հաճախ են դնում այն հարցը, թե որքանո՞վ արդյունավետ է հիշյալ վերաբաշխումը գների միջոցով և որքանո՞վ է դա նպաստում ագրարային հարաբերությունների կատարելագործման առօրյա խնդիրների լուծմանը։ Մի կողմ թողնելով գներն այս վերաբաշխիչ ֆունկցիայով ծանրաբեռնելու բացասական հետևանքները, նշենք, որ ներկայումս գյուղատնտեսության ստեղծած եկամուտների վերաբաշխման գլխավոր թերությունն այն է, որ դա չի առնչվում օգտագործվող հողերի քանակի և որակի, դիֆերենցիալ ռենտայի հաշվառման հետ։ Մեր երկրում պատմական-քաղաքական որոշ հանգամանքների բերումով չի կիրառվում դիֆերենցիալ ռենտայի գանձման այնպիսի ուղղակի ձևը (եղանակը), որպիսին հողօգտագործման վարձն է։ Սակայն դա չի նշանակում, որ մեր երկրում ագրա-

րային հարաբերությունների կարգավորման ժամանակ պետք է մոռանալ ռենտայի կատեգորիան և դրա հաշվառման անհրաժեշտությունը։ Քանի որ հավասար պայմանների ստեղծման պրոբլեմը, ինչպես ասացինք, սերտորեն առնչվում է հողային ռենտայի գոյության և վերաբաշխման անհրաժեշտության հետ, ուստի և ամենից առաջ այն հարցն է առաջանում, թե որն է այդ վերաբաշխման նպատակահարմար համամասնությունը և առավել կատարյալ եղանակը (մեխանիզմը), և մասնավորապես, ինչպիսին պետք է լինի այդ մեխանիզմի մեջ մթերման գների և հարկային սիստեմի դերը։

Մեր տնտեսագետների որոշ մասը այն տեսակետին է, որ համահարթեցման պրոբլեմը կարող է և պետք է լուծվի գյուղատնտեսական արտադրանքի մթերման գների հետագա ավելի խոր գոտիական շերտավորման միջոցով։ Բանը պետք է հասցնել այնտեղ, որ գնման գները սահմանվեն ոչ միայն յուրաքանչյուր գոտու, այլև յուրաքանչյուր շրջանի և նույնիսկ տնտեսության ծախքերի համեմատ, այսինքն՝ սահմանվի գների մի սիստեմ, որի միջոցով պետությունը կհատուցի յուրաքանչյուր տնտեսության կատարած ծախքերը և որոշակի շահույթ, իսկ բոլոր տեսակի լրացուցիչ կամ հավելուրդային եկամուտները (ռենտան) կփոխանցվեն համաժողովրդական ֆոնդերին։

Ճիշտ հակառակ տեսակետն են առաջադրում մի շարք այլ տնտեսագետներ, ըստ որի հարցը ճիշտ լուծելու համար անհրաժեշտ է հրաժարվել գների գոտիական շերտավորումից, սահմանել յուրաքանչյուր գյուղատնտեսական մթերքի գծով մեկ միասնական (ամբողջ երկրի չափանիշով) հասարակական գին՝ տվյալ մթերքի արժեքի մակարդակով, նշանակում է՝ փոխհատուցել գյուղատնտեսությանը նրա ստեղծած ամբողջ արժեքը։ Իսկ ինչ վերաբերում է հավելուրդային եկամուտներին (դիֆերենցիալ ռենտային), դրանք պետք է վերցնել գյուղատնտեսական ձեռնարկությունների օգտագործած հողատարածության յուրաքանչյուր հեկտարից սահմանվող հողօգտագործման վարձի (հարկի) պարզ և անմիջական ձևով, մանավանդ որ հողային-ռենտային հարկը հնարավոր է սահմանել (շերտավորել) յուրաքանչյուր տնտեսության անհատական պայմանների համեմատ, ելնելով նրա հողերի քանակից և որակից, մի բան, որին հնարավոր չէ հասնել գների սիստեմի օգնությամբ։

Մենք այն տեսակետին ենք, որ այժմ և առաջիկայում հավասար պայմանների ստեղծման պրոբլեմը (հողային ռենտայի վերաբաշխման խնդիրը) չի կարող լուծվել կամ միայն գների (ինչպես «լուծվում է» այսօր), կամ միայն ռենտային հարկի սիստեմի օգնությամբ։ Անհրաժեշտ է, ըստ ամենայնի, լիովին օգտագործել այս երկու տնտեսական լծակները։ Խնդիրն այն է, որ ավելի կատարելագործվեն գները, մերձեցնելով դրանք արժեքին, ավելի հետևողական իրագործվի համարժեքային փոխանակությունը գյուղի և քաղաքի միջև։ Դա նշանակում է՝ բարձրացնել գների դերը՝ որպես հասարակական աշխատանքի չափի, միաժամանակ նվազեցնել, նվազագույնի հասցնել դրանց վերաբաշխիչ ֆունկցիան։ Մյուս կողմից և դրան զուգընթաց, բարձրացնել հարկային սիստեմի դերը վերաբաշխման ասպարեզում, այնպես որ հարկը գանձարանային կատեգորիա լինելուց վերածվի գյուղատնտեսական ձեռնարկությունների ռենտային եկամուտների վերաբաշխման, հետևապես և եկամուտների կարգավորման մի յուրօրինակ ֆինանսատնտեսական մեխանիզմի, լծակի։ Ներկայումս, ինչպես արդեն տեսանք, ռենտային եկամուտների վերաբաշխումը գների «մենաշնորհ» ֆունկցիան է, իսկ եկամտահարկը չնչին կցորդի դեր է խաղում։



Մենք բնավ այն կարծիքին չենք, թե եկամուտների վերաբաշխման ֆունկցիան երբևէ հնարավոր կամ տնտեսապես նպատակահարմար է լիովին «հետ վերցնել» գների սիստեմից։ Սակայն, անկասկած, այս գործում անհրաժեշտ է վերացնել գների վերոհիշյալ «մենաշնորհը» (քանի որ այդ «մենաշնորհի» տնտեսական հետևանքները գոհացուցիչ չեն), և ռենտային եկամուտների վերաբաշխումը հիմնականում կատարել հարկային սիստեմի միջոցով։

Բանը միայն այն չէ, որ հարկն անհամեմատ ավելի ճշգրիտ մեխանիզմ է ռենտային եկամուտների հաշվառման և վերաբաշխման համար, քան գների մեխանիզմն իր հավետ անբավարար շերտավորումով։ Կարևորն այն է, որ գների գոտիական շերտավորումը չի կարող երկար դիմանալ ազգային միասնական շուկայի կենտրոնաձիգ տենդենցների հզոր ուժին։ Մեր հասարակության արտադրաուժերի, երթևեկության, կապի և փոխադրամիջոցների զարգացման արդի պայմաններում արժեգոյացումը, գնագոյացումը, ինչպես նաև ժողովրդատնտեսական բազմաթիվ այլ համամասնություններ որոշվում են, գնալով առավել պետք է որոշվեն ո՛չ թե տեղական, այլ համաժողովրդական չափանիշներով, ո՛չ թե գոտիական, այլ ազգային շուկայի պահանջներով։ Ինչպես նշվում է ՍՄԿԿ ծրագրում, գնագոյացման կարևորագույն խնդիրը ներկայումս և առաջիկայում այն է, որ «գները պետք է ավելի ու ավելի մեծ չափով արտացոլեն աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսերը, ապահովեն արտադրության և շրջանառության ծախքերի փոխհատուցումը և որոշակի շահույթ՝ նորմալ աշխատող յուրաքանչյուր ձեռնարկության» (էջ 108)։ Գները արժեքին մերձենալու այն տենդենցը, որն ակնհայտորեն դրսևորվեց վերջին մեկուկես տասնամյակում, իր տրամաբանական զարգացմամբ հանգեցնում է այն բանին, որ գների մեջ ավելի մեծ չափով կմարմնանա դիֆերենցիալ ռենտան, գները գնալով կազատվեն ռենտայի վերաբաշխման ֆունկցիայից, և այս վերջինս հետզհետե կփոխանցվի հարկային սիստեմին։ Սակայն այսօրվա հարկային սիստեմն այս նպատակով օգտագործելու համար դեռևս պիտանի չէ և կատարելագործման կարիք ունի։

Ինչպես հայտնի է, եկամտահարկն այժմ հաշվարկվում և գանձվում է կոլտնտեսությունների զուտ եկամտի այն մասից, որը գերազանցում է 15 տոկոս շահութաբերությունը և կոլտնտեսականների վարձատրության ֆոնդի այն մասից, որը գերազանցում է մեկ կոլտնտեսականի միջին ամսական (60 ռուբլի) վարձատրությունը։ Այսպիսով, ի տարբերություն նախկին կարգի, սահմանված է եկամուտների չհարկվող նվազագույն չափը։ Սակայն այս չափը կարիք ունի ճշտման, հատկապես զուտ եկամտի հարկման առումով։ Տնտեսագետների շրջանում այժմ ընդունված է այն կարծիքը, որ վերարտադրության նորմալ պայմաններ ապահովելու համար չհարկվող զուտ եկամտի չափը պետք է բարձրացնել առնվազն 30—35 տոկոս շահութաբերության։ Այլ կերպ ասած, այժմ հաճախ հարկվում է նորմալ շահույթի զգալի մասը, որը հակասում է նորմալ վերարտադրության պահանջներին, իսկ պետք է հարկել միմիայն հավելուրդային (օպտիմալ նորմայից բարձր) եկամուտները, որոնց ստացումը կապված է համեմատաբար ավելի բարենպաստ բնական պայմանների օգտագործման հետ։

Եկամտահարկի այսօրվա ձևը հնացել է նաև այն առումով, որ հարկի չափերը կապված չեն գյուղատնտեսության հիմնական արտադրամիջոցի՝

հողի քանակի ու որակի հետ, որը և չի խթանում տնտեսություններին ընդլայնելու արտադրությունը և իջեցնելու դրա ծախքերը: Որքան բարձր է զուտ եկամտի գումարը, այնքան բարձր է և հարկը: Անհրաժեշտ է, ուրեմն, «կապել» հարկի չափերը հողի հետ, սահմանել գանձվող եկամտի որոշակի գումար օգտագործվող հողատարածությունների յուրաքանչյուր հեկտարից, հաշվի առնելով տվյալ հողի տնտեսական գնահատականը:

Ռենտային հարկի գանձումը կայուն չափերով միավոր հողատարածությունից, հաշվի առնելով վերջինիս որակը («գինը»)՝ ահա այն պարզ և արդյունավետ ձևը, որին, վերջին հաշվով, հանգեցնում է պետության և կոլտնտեսությունների (սովխոզների) տնտեսական փոխհարաբերությունների հետագա կատարելագործումը: *Միաժամանակ սա այն տնտեսական ձևն է, որի միջոցով պետք է լուծվի տարբեր բնատնտեսական գոտիներում աշխատող գյուղատնտեսական ձեռնարկությունների վերարտադրության պայմանների համահարթեցման պրոբլեմը:*

*Վերը մենք քննարկեցինք համահարթեցման պրոբլեմի մի կողմը միայն, այն է՝ գյուղատնտեսական ձեռնարկություններից հավելուրդային, ռենտային եկամուտների գանձման առավել նպատակահարմար և արդյունավետ եղանակի հարցը: Սակայն գոյություն ունի այդ հարցի և երկրորդ, ոչ պակաս կարևոր կողմը, որը վերաբերում է բնատնտեսական անբարենպաստ պայմաններում գտնվող տնտեսություններին, որոնք աշխատում են ցածր շահութաբերությամբ, հաճախ էլ վնասով: Ի՞նչ ուղիներով պետք է լուծել այդ ձեռնարկությունների տնտեսական պրոբլեմները՝ այս հարցին մենք կանդրադառնանք առանձին հոդվածով:*

Ս. Հ. ԴԱՆԻԵԼՅԱՆ

# ՆԱՐՈԴՆԻԿԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Ռուս և հայ գրական կապերին նվիրված գրականության մեջ մեր բանասիրության տեսադաշտից դուրս է մնացել նարոդնիկական շարժումը, որը զգալի հետք է թողել նախահեղափոխական Ռուսաստանի հասարակական-քաղաքական կյանքում:*

*Չկա բանասիրական մի ուսումնասիրություն, որը նվիրված լիներ հայ գրականության մեջ տեղ գտած նարոդնիկական գաղափարախոսության կամ ռուսական նարոդնիկական գեղարվեստական գրականության ազդեցության հարցերին: Հայկական և մասամբ ռուսական նարոդնիկական շարժման ազդեցության ոլորտում խանձարուրված մի շարք հայ գյուղագիրների գրական ժառանգության ուսումնասիրության հարցերը սպասում են իրենց հետազոտողին: Դեռ. խոր չի լուսաբանված, թե ինչու ռուս բազմամիլիոն գյուղացիության շահերի պաշտպանության դիրքերում հանդես եկող հեղափոխական նարոդնիկությունը հետնորդներ չունեցավ մեր մշակույթի պատմության մեջ: Հայ իրականության մեջ, որտեղ գյուղը և գյուղացին տառապում էին այն ցավերով, ինչ և ռուսը, այդ գաղափարախոսությունը արձագանք չգտավ:*

*Պետք է նկատել, որ հայ պատմագրության բնագավառում նարոդնիկական շարժումը և նարոդնիկական գաղափարախոսության արտահայտությունները լուսաբանվել և արժեքավորվել են: Հրապարակի վրա եղած աշխատություններից կուզենայինք հիշատակել Մ. Ներսիսյանի* Նարոդնիկական խմբակները Անդրկովկասում, *Վ. Ռշտունու* Հայ հասարակական հոսանքների պատմությունից *գրքերը, ինչպես նաև* Ա. Գ. Հովհաննիսյանի *այդ պրոբլեմին նվիրված հիմնավոր հետազոտությունները:*

*Միութենական մամուլում ծավալված գիտաբանավեճի ընթացքում պարզվեց, որ ոչ ուշ անցյալում նարոդնիկության շուրջ ստեղծվել էր նիհիլիստական, հակապատմական վերաբերմունք: Ավելին, առաջ քաշվեց 70-ական թթ. նարոդնիկությունը 60-ական թթ. ռուս հեղափոխական-դեմոկրատներին հակադրելու վնասակար տեսակետ: Օգտագործելով Լենինի միայն լիբերալ նարոդնիկության մասին եղած բնորոշումները, անտեսվեց նարոդնիկական գա-*

գաղափարախոսության ռեալ պատմական բովանդակությունը՝ որպես ռուս բազմամիլիոն գյուղացիության ազատագրական պայքարի արտահայտություն։ Լենինն զգուշացնում էր, որ նարոդնիկական գաղափարախոսության թերագնահատումը տանում է դեպի մենշևիզմ։

«Պայքարելով նարոդնիկության, որպես սոցիալիզմի սխալ դոկտրինայի դեմ,— գրել է Լենինը,— մենշևիկները դոկտրինյորաբար աչքաթող արին, չնկատեցին նարոդնիկության պատմականորեն ռեալ և պրոգրեսիվ պատմական բովանդակությունը, որպես դեմոկրատական կապիտալիզմի կողմից լիբերալ-կալվածատիրական կապիտալիզմի դեմ, «ամերիկյան» կապիտալիզմի կողմից «պրուսական» կապիտալիզմի դեմ մղվող մասսայական մանրբուրժուական պայքարի թեորիա» (Երկեր, հ. 16, էջ 149)։

Զանտեսելով գոյություն ունեցող գաղափարական տարաձայնությունները «60-ականների» և 70—80-ական թթ. նարոդնիկության միջև, Լենինը հեղափոխական նարոդնիկներին՝ 70-ական թթ. հեղափոխականների փայլուն պլեադային, դնում էր Բելինսկու, Գերցենի, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի կողքին։ Եվ դա պատահական չէ, քանի որ Լենինը Գերցենին համարում էր «ռուսական սոցիալիզմի» հիմնադիրը, իսկ Չերնիշևսկու հեղափոխական տեսությունը՝ նարոդնիկական տեսություն։ Այս հանգամանքը մոռացության էր տրված։ Մինչդեռ Գերցենի և Չերնիշևսկու համայնքի վերաբերյալ ուսմունքը խիստ կարևոր է 60—90-ական թթ. գյուղագրության պատմության մի շարք հարցեր պարզաբանելու համար։

«Գերցենը «ռուսական սոցիալիզմի, «նարոդնիկության» հիմնադիրն է,— գրում էր Լենինը,— Գերցենը «սոցիալիզմը» տեսնում էր գյուղացիների հողի հետ միասին ազատագրման մեջ, համայնական հողատիրության և «հողի իրավունքի» գյուղացիական իդեայի մեջ։ Այս թեմայի վերաբերյալ իր մշակած մտքերը նա զարգացնում էր անհամար անգամ (տե՛ս Վ. Ի. Լենին, Գրականության մասին, 1948, էջ 12)։ Ի տարբերություն Ռուսաստանի «ինքնատիպության», «հատուկ առաքելության» մասին Գերցենի մշակած ուսմունքին, Չերնիշևսկին, մերժելով «նեխված Արևմուտքի» նկատմամբ Ռուսաստանի առանձնահատուկ դերի գերցենյան պատրանքները, նույնպես համոզված էր, որ պահպանելով համայնքը, Ռուսաստանը կարող է խուսափել զարգացման այն ուղուց, որն անցել է Արևմտյան Եվրոպան և սոցիալիզմին հասնել համայնքի միջոցով։ Մենք բավական անհաշվենկատ կլինենք,—գրում է Չերնիշևսկին,— եթե չսիրելով նահապետականության միջնորմը, մտածենք նահանջել դրանից այնպիսի մի ժամանակ, երբ այն կարող է լիովին նախապահպանել մեզ Արևմուտքի տառապանքներից (տե՛ս Избр. соч., т. I, 1928, стр. 196)։

Այդ պատճառով Լենինը Չերնիշևսկու սոցիալիզմը նույնպես նարոդնիկական էր համարում։

Այսպիսով, Գերցենը և Չերնիշևսկին պաշտպանում էին գյուղական համայնքի միջոցով Ռուսաստանի ոչ-կապիտալիստական զարգացման հնարավորությունը և նրանց այդ թեզը դարձավ ո՛չ միայն ռուս հեղափոխական նարոդնիկության հավատամքը, այլև պարարտ հող գտավ անցյալ դարի 70—80-ական թթ. հայ հասարակական կյանքում։ Նարոդնիկության մասին խոսելիս, Լենինն այն չի սահմանափակել հասարակական կյանքի մի նեղ ժամանակաշրջանով։ Ընդհակառակը, նա նարոդնիկությանը բնութագրել է որպես «Ամբողջական աշխարհայեցողություն՝ սկսած Գերցենից և վերջացրած Ն.-Ռ.-Ն-ով։



Հասարակական մտքի հսկայական շրջան», որն արտահայտել է մանր արտադրողների, մանր բուրժուազիայի, առավելապես գյուղացիության շահերը, իսկ մանր բուրժուազիան միշտ էլ երկակի է եղել իր բնույթով։ Նա պրոգրեսիվ է այն չափով, որչափով առաջադրում է համադեմոկրատական պահանջներ ու պայքարում է ճորտատիրական հարաբերությունների դեմ և ռեակցիոն այն չափով, որչափով ձգտում է պահպանել իր դիրքերը և դիմադարձ կանգնել կապիտալիզմի զարգացմանը։

Նարոդնիկության մեջ Լենինը ռեակցիոն էր համարում նրանց սոցիալիզմը, առաջավոր՝ հեղափոխական դեմոկրատիզմը. ուստի, պետք է տարբերել սոցիալիստական և դեմոկրատական գաղափարները նարոդնիկության զարգացման պատմության մեջ, պարզել այդ տարրերի կապն ու փոխհարաբերությունը, չմոռանալով, որ դեմոկրատական և սոցիալիստական տարրերը սերտորեն միահյուսվում էին, ստեղծելով հակասություններով հարուստ մի ամբողջական գաղափարախոսություն։

Հայ իրականության մեջ ուրույն տեղ էին գրավել նարոդնիկ-լուսավորիչները, որոնք ժամանակին ծավալել են հասարակական, գրական և հրապարակախոսական ակտիվ գործունեություն։

Անցյալի արվեստի ու հասարակական առանձին գործիչների գնահատության հարցում երկար ժամանակ գոյություն ուներ սխալ տեսակետ, որն իր արտահայտությունը գտավ գրական երևույթների արժեքավորման ժամանակ։ Նման վերաբերմունքն իր արտահայտությունն էր գտել նաև գրականության պատմության մշակման հարցերում։ Իշխում էր մի արատավոր սկզբունք, երբ նարոդնիկ-բելետրիստների պահպանողականությունը վերագրում էին նարոդնիկական գաղափարախոսությանը, իսկ նրանց ստեղծագործության առաջադիմական գծերը՝ որակում որպես հեղափոխական դեմոկրատիզմի արտահայտություն։ Պատահական չէ, որ վերջին տասնամյակների ընթացքում մի շարք նարոդնիկ-բելետրիստների՝ Զլատովրատսկու, Կարոնինի, Նաումովի և ուրիշների ստեղծագործությունները տպագրության չէին արժանանում։ Հայ գյուղագիրները ևս, որպես գյուղի համայնավարական կյանքը խրախուսող և կապիտալիզմին ներհակ սերունդ, արժանացան նույն բախտին։ Նրանցից շատերի ստեղծագործությունները, որոնք պատշաճ տեղ էին գտնում դպրոցական դասագրքերում, հանվեցին և այդ պատճառով ո՛չ միայն նրանց երկերը, այլև անուններն անհայտ են նոր սերնդին։ Հ. Մալխասյանի, Ա. Շահնազարյանի, Սանդալի և շատ ուրիշների ստեղծագործություններին կարելի է ծանոթանալ միայն առաջին հրատարակություններով, որոնք այժմ մտել են բիբլիոգրաֆիական բացառիկ գրքերի ցանկը։ Մի խումբ գյուղագիրների երկերը կարդալու համար ստիպված ենք թերթել անցյալի մամուլի փոշեպատ էջերը։ 30-ական թվականներին տպագրության արժանացան միայն Ա. Ագայանի, Հ. Ճուղուրյանի, Աղելյանի երկերը։ Այսօր մեր գրականագիտության պարտքն է հրապարակ հանել խոր դեմոկրատիզմով և ժողովրդասիրությամբ տոգորված մեր գրական անցյալի հաստատուն արժեքները։ Այս ուղղությամբ արվել են առաջին քայլերը։

1964 թ. նշվեց Ճուղուրյանի ծննդյան 100-ամյակը։ Լույս տեսան մենագրություններ նվիրված Աղելյանին, Թլկատինցուն։ Ժամանակն է կոտրել հայ գյուղագիրների նկատմամբ անցյալից արմատացած անտարբերության սառույցը և լրջորեն ձեռնամուխ լինել նրանց կյանքի ու ստեղծագործության ուսումնասիրությանը։ Անհրաժեշտ է ի մի բերել նախասովետական մամու-

լում ցաք ու ցրիվ եղած նրանց գեղարվեստական ու հրապարակախոսական ժառանգությունը և արժեքավորել գրական այդ մոռացված սերնդի երախտիքը՝ մեր հոգևոր մշակույթի պատմության մեջ։ Պետք է համարձակորեն ասել, որ նարոդնիկական առաջավոր գաղափարախոսությունը ո՛չ թե խանգարել է ու վնասել, այլ օգնել է ու ոգևորել մեր գյուղագիրներին՝ պաշտպան կանգնելու գյուղացու դատին, որովհետև այն, ինչի դեմ զինում էր նարոդնիկական գաղափարախոսությունը, այդ նույնը մերկացնում էր մեր գյուղագրությունը։

Եթե նարոդնիկությունը ազդարարում էր, թե կապիտալիզմը ռեգրես է, համաժողովրդական ճշվառություն և նորամուտ չարիք գյուղացու կյանքում, ապա մեր գյուղագիրներից շատերը, ոգևորված այդ գաղափարներով, մերկացնում էին գյուղում կապիտալիզմի կատարած ավերածությունները, ցույց տալիս գյուղացիության սոցիալական բևեռացումը, աշխատավորական զանգվածների աղքատացումը, մերկացնում գյուղական ցեցերի շահատակությունները, դրամի ավերիչ ազդեցությունը, պանդխտությունը— այն ամենը, ինչ բերում էր կապիտալիզմը գյուղացու համար։ Առանց տարակուսելու կարելի է ասել, որ նարոդնիկությունը, ցույց տալով կապիտալիստական տնտեսակարգի հակասությունները, օգնել է քննադատական ռեալիզմի զարգացմանը, հայ գրականությանը՝ արտացոլելու այն տեղատվությունները և ավերածությունները, որ ապրել է գյուղը անցյալ դարի վերջին քառորդում։

Ուսումնասիրելով անցյալ դարի 70—80-ական թթ. հրապարակ իջած մի շարք գյուղագիրների գեղարվեստական և հրապարակախոսական ժառանգությունը, առանց վարանելու կարելի է ասել, որ նրանք պատկանել են Լենինի նշած հասարակական մտքի այն հոսանքի ներկայացուցիչների թվին, որոնք միաժամանակ եղել են «նարոդնիկներ և լուսավորիչներ»։ Մեր գյուղագիրները լուսավորիչներ էին, որովհետև պայքարում էին գյուղի ֆեոդալական մնացուկների և արատների դեմ, խրախուսում կյանքի եվրոպական ձևերի արմատավորման անհրաժեշտությունը և պաշտպանում առաջադիմության, կրթության ու լուսավորության տարածման գաղափարը։ Լուսավորիչներ լինելով հանդերձ, նրանց մի ստվար խումբը միաժամանակ նարոդնիկներ են եղել այդ բառի ամենալայն առումով, որովհետև նրանց գործունեության պաթոսը խոր և անկաշառ դեմոկրատիզմն էր, գյուղացիական-աշխատավորական խավերի պաշտպանության հոգսը։

Հայ գյուղագիրներից շատերին մենք նարոդնիկ-լուսավորիչներ ենք համարում, որովհետև նրանք իրենց գեղարվեստական ստեղծագործություններում ցույց են տվել, որ կապիտալիզմը չարիք է գյուղացու կյանքում և մերկացրել են գյուղում կապիտալիզմի կատարած ավերածությունները։ Գյուղափրկչական առաքելությամբ օժտելով «դեպի ժողովուրդ» նարոդնիկական կոչով խրախուսված հայ մտավորականությանը, նրանք ենթադրում էին, որ մտավորականությունը կարող է «պատմությունը շարժել ցանկացած ուղղությամբ» և փրկել գյուղացուն նրան սպառնացող չատ աղետներից։ Եվ, վերջապես, գյուղական համայնական կյանքի հարատևության մեջ էին նրանք տեսնում գյուղացու բարօրության երաշխիքը, դատապարտելով «նոյի ագռավ» կամ «դավթարից ջնջված» դառնալու հայրենախույս ձգտումները։ Միաժամանակ, նրանք նաև լուսավորիչներ են եղել, որովհետև պայքարել են գյուղացուն սարկացնող պայմանների, նահապետական մնացուկների դեմ և խրախուսել կրթության, կյանքի եվրոպական ձևերի արմատավորման անհրաժեշտությունը։ Սրանք էին այն առհավատչյաները, որոնք սնունդ էին



տալիս մեր նարոդնիկ-լուսավորիչների բարեպաշտ բաղձանքներին։ Եթե նրանցից շատերը հակամետ են եղել կարծելու, թե «ազգության արմատը գյուղացին է», կամ «հայրենիքի արժանավոր և հավերժական որդին հայ գյուղացին», եթե նրանք պաշտպանել են գյուղի համայնական կյանքի կովանները և խրախուսել համայնական հողատիրության առավելությունները, ստեղծելով վարդագույն հեռապատկերներ, ապա, անկասկած, այդ ուտոպիական ծրագրերը հեռու էին գիտական սոցիալիզմից։ «Լիբերալ ուտոպիան,— ասում է Լենինը,— գյուղացիական մասսաներին մոռանալ է տալիս պայքարելը։ Նարոդնիկական ուտոպիան արտահայտում է նրանց պայքարելու ձգտումները, հաղթության համար նրանց միլիոն բարիք խոստանալով, այսինքն՝ իրապես այս հաղթությունը միմիայն հարյուր բարիք կտա։ Բայց մի՞թե բնական չէ, որ պայքարի գնացող միլիոնները, որոնք դարերով ապրել են չլսված խավարի, կարիքի, աղքատության, կեղտի, լքվածության, ճեճկվածության մեջ, հնարավոր հաղթության պտուղները տասնապատիկ չափազանցեցնում են» (Երկեր, հ. 18, էջ 453—454)։

Գյուղափրկչական գաղափարները պաշտպանելու ճանապարհին, հայ գյուղագիրներն իրենց ստեղծագործություններով մերկացրել են բեկերին և աղալարներին, ցույց տվել հողի տենդոտ կողոպուտը, ճշմարտացի պատկերել գյուղացու «սև օրը», ձգտելով ազատագրել գյուղը ցեցերից, կաշառակեր չինովնիկներից և հղփացած հոգևորականներից։ Դրանով իսկ նրանք օգնել են ու օժանդակել հայ շինականի սարկական պայմանների վերափոխության գործին, միջնադարյան կաշկանդող հարաբերությունների դեմ տարվող պայքարին։ Եվ, վերջապես, հողակարոտ գյուղացու շահերի պաշտպանության գործում, նրա վոխտ հողկտորն անձեռնմխելի տեսնելու գյուղագիրների նկրտումների մեջ է արտահայտվել գյուղացիական մասսաների դիմադրական կորովը և սոցիալական պայքարի ձգտումները։ Գյուղացու հողային սեփականությունը պաշտպանելու ջանքերում էր արտահայտվում կապիտալի տիրապետության դեմ նրանց պայքարի պատրաստակամությունը, այդ հենքի վրա էին կառուցվում նրանց տարատեսակ գյուղափրկչական-ուտոպիական ծրագրերը։

Հայ գյուղագիրների մի զգալի հատվածի, մասնավորապես Ագայանի, Աղելյանի և Սանդալի ստեղծագործությունների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ նրանք քաջատեղյակ են եղել ռուս հեղափոխական նարոդնիկության «հողի և ազատության» համար տարվող սխրագործ պայքարին, խանդավառվել Գերցենի, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի, Պիսարևի, Լավրովի գաղափարներով ու կրել նարոդնիկ-բելետրիստների որոշակի ազդեցությունը։ Այդ ասելով մենք հեռու ենք այն մտքից, որ նարոդնիկական գաղափարախոսության արտահայտությունները մեր գյուղագրության մեջ և հայկական նարոդնիկությունը միայն ռուսական նարոդնիկության ազդեցության հետևանք է և մուրածո իմաստություններով պայմանավորված երևույթ հայ իրականության մեջ։ Մեր երկրում, ուր ազգաբնակչության ճնշող մեծամասնությունը կապված էր հողի հետ, գյուղացիական մի երկրում, որը դեռ նոր էր դուրս գալիս բնատնտեսության շրջանից և թևակոխում ապրանքային կապիտալիստական զարգացման ուղին, մի երկրում, ուր գյուղացին դարավոր սարկացման և կեղեքման հետ մեկտեղ տառապել է սակավահողությամբ, ջրապակասությամբ, երբ նրա վոխտ տնտեսությունը կառուցված է եղել բացառապես ֆիզիկական աշխատանքի և անդրջրհեղեղյան ժամանակներից

սաեղծված գյուղատնտեսական գործիքների վրա, բնականորեն ավելի սուր ու ասնջալից պիտի լիներ նրա տնտեսական փլուզման պրոցեսը։

Հայ նարոդնիկական գաղափարախոսությունը և նրա գեղարվեստական արտահայտությունը ելնում էին այն պայմաններից, որի մեջ դրված էր XIX դարի 70—80-ական թթ. հայ աշխատավոր գյուղացին։

Հայ նարոդնիկությունը և մեր գյուղագիրների ճնշող մեծամասնությունը, բացառապես հայ գյուղում տեղի ունեցող ռեալ երևույթների ուսումնասիրության հիման վրա, կոչ էին անում խուսափել կապիտալիզմից և դիմադարձ լինել ապրանքային տնտեսության զարգացմանը, քարոզելով, որ ժողովրդի բարեկեցության միակ և ուղիղ ճանապարհը երկրագործությունն է, հողն ու համայնքը և պայքարում էին ամենախայտաբղետ զուգակցություններով կառուցված գյուղացիական կյանքի բարենորոգումների համար։ Միաժամանակ հայ նարոդնիկության խոսքն ու գործը լծորդվում էր դրսաշխարհի, հատկապես ռուսական նարոդնիկության հետ, հենվում նրա գաղափարական, ինչպես և գեղարվեստական գրականության ունեցած նվաճումների վրա։

Ինչպես ռուս նարոդնիկ բելետրիստները, այնպես էլ հայ գյուղագիրներն իրենց հեռանկարների շենքը կառուցում էին գյուղացիական ատաղձով, համոզված լինելով, որ գյուղացու «Չոր, կոշտ ձեռքերը, այն աննկուն ձեռքերն էին, որ պահպանեցին մեզ ազգային մեռելությունից և եթե մի օր հասնի ազգի վերականգնման րոպեն, այդ նրանց ջլուտ և հաստատուն ուսների վրա միայն կարող է լինել» (Ա. Թոխմախյան, Հայրենիքի պահանջներ և հայ գյուղացին, 1888, էջ 62)։

Նարոդնիկական այդ մտայնությունը հաղթահարվեց միայն հետագա տասնամյակներում, բանվոր դասակարգի պատմական դերի իմաստավորման և դեպի մարքսիզմ տանող ուղիներում։

Ցավոք, հոդվածի շրջանակը հնարավորություն չի տալիս վեր հանելու հայ գյուղագիրների 70—90-ական թթ. նարոդնիկական ոգորումները, նրանց գեղարվեստական պատկերի և հրապարակախոսական նոթերի մեջ արտահայտություն գտած գյուղափրկչական ծրագրերն ու համայնավարական ձրգտումները։ Թեպետ միայն Սանդալի, Աղելյանի և Ագապյանի հասարակական գործունեությունը և նրանց ստեղծագործության քննությունն իսկ ցույց են տալիս նարոդնիկության հետ նրանց գաղափարական կապը։

Հայ գյուղագիրներից Սանդալը եղել է Թիֆլիսի նարոդնիկական ընդհատակյա կազմակերպության ակտիվ անդամներից մեկը, որը նարոդնիկական ընդհատակի քայքայումից հետո, ոգևորվել է «դեպի ժողովուրդ» կոչով և Ա. Թոխմախյանի, Տ. Փիրումյանի և Հ. Մելիք-Դադյանի հետ որպես ուսուցիչ մեկնել Մուշ, ապա Գանձակի նահանգի Գետաշեն գյուղը։ Բավական է կարդալ Սանդալի ինքնակենսագրական տարրերով հարուստ Փոքրիկ աստղ վիպակը, որպեսզի ակնհայտ դառնա այդ գործունեության նարոդնիկական բնույթը։ Վիպակի հերոս Սաղաթելը գյուղում ակտիվ գործունեություն է ծավալում, պաշտպանելով չքավոր գյուղացիներին և մերկացնում գյուղի զոռբաներին, կազմակերպում գյուղացիների գյուղատնտեսական, իրավաբանական, բժշկական և հնարավոր ամեն կարգի օգնություն։ Նրա ձեռքին կարելի է տեսնել գյուղատնտեսական հանրամատչելի գրքեր, որը նա կարդում և բացատրում է գյուղացիներին։ Սաղաթելի գրադարանում կան Շչեդրինի, Ուսպենսկու, Բեչետնիկովի, Լևիտովի, Միխայլովսկու աշխատությունները, որոնք խիստ բնորոշ են նարոդնիկ գործչի համար։ Եվ, վերջապես, քաղաքից հյուր եկած Խորենի հետ ունեցած զրույցներից երևում է ժողովրդին ծառայելու նրա նարոդնիկական համոզմունքները։

Ուշագրավ է նաև այն հանգամանքը, որ Սաղաթելը հեռացվում է գյուղից գյուղի հարուստների «ծանրակշիռ գանգատի» պատճառով, որոնք մեղադրում են նրան «տերության դեմ անվայել խոսակցության մեջ»։ Պատահական չէ, որ թեմի առաջնորդը, զգալով Սաղաթելի անմեղությունը, այնուամենայնիվ, խորհուրդ է տալիս թողնել գյուղը, խրատելով, թե «պետք է զգույշ լինել և քաղաքագետ»։

Աղելյանը հաջողությամբ ավարտելով Ռիգայի պոլիտեխնիկումը, վերադառնում է հայրենի գյուղ և վաշխառուների դեմ պայքարելու նպատակով Մեղրիում հիմնադրում սպառողական կոոպերացիա, որն առաջին գյուղական կոոպերացիան է Հայաստանում։ Իր ստեղծագործություններում, հատկապես Նոր հոգսի հետևից պատմվածքում նա մերկացնում է կապիտալիստական քաղաքի «դժոխային, ավերիչ, դեպի կորուստ տանող կյանքը», խրախուսում «գյուղի ազատ և բազմակողմանի աշխատանքի երջանկությունը»։

Մուրադյանը Դառը խոստովանք պատմվածքում ոգևորված Տոլստոյի և Զլատովրատսկու գաղափարներով, կոչ էր անում ինտելիգենցիային, «գյուղացու պես ապրել, նրա նիստ ու կացը ունենալ», իսկ Ներհակ Առաքելը պատմվածքում Սմբատ Մխիթարյանը ոգևորված Չերնիշևսկու Ի՞նչ անել վեպով, գյուղ է գալիս և ձեռնամուխ լինում իր գյուղափրկչական լուսավորական ծրագրի իրականացմանը։

Ագապյանն իր գեղարվեստական ստեղծագործություններով և հրապարակախոսական նոթերով հիմնավորել է գյուղի համայնական կյանքի առավելությունները, դատապարտել գյուղը լքելու հայրենախույս ձգտումները, մերկացրել գյուղի կուլակներին և ցույց տվել դրամի ավերիչ դերը գյուղացու կյանքում։

Ոչ միայն Սանդալը, Աղելյանը և Ագապյանը, այլև Ծուղուրյանը, Շահնազարյանը, Բաբկենցը, Ջավախեցին և մյուս գյուղագիրներն իրենց պատմվածքներում ցույց տվին գյուղի ոլորտում կապիտալիզմի ավերիչ դերը. պանդխտության, հողազրկության, գյուղացիության աղքատացման և բարոյական վերասերման ողբերգական հետևանքներով հանդերձ, սատարելով գյուղը՝ շեն, իսկ ժողովրդին հողին փարված պահելու հեռանկարը։

Հետևելով նարոդնիկ բելետրիստներին և, հատկապես, Գլ. Ուսպենսկուն, մեր գյուղագիրները փորձել են հիմնավորել «հողի իշխանության» ազդեցությունը գյուղացու մտավոր, բարոյական և հոգևոր կյանքում։ Հավատարիմ Ուսպենսկու գեղագիտական սկզբունքներին, մեր գյուղագիրները հայ գրականությունը հարստացրին արձակի այնպիսի ժանրերով, ինչպիսիք են պատմվածքը և գեղարվեստական ակնարկը, իրենց հուզող թեման գրական սեղմ ձևերի մեջ մատուցելու այնպիսի հնարներով, որոնց մեջ երևաց գյուղական կյանքի ճշմարտացի պատկերը, գրողի ապնիվ մտորումներն ու խոհերը, արգասավորելով գրական այն ուղղությունը, որին Ն. Շելգունովը «ժողովրդական ռեալիզմ» անունն է տվել։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԸՆԹԱՆՈՒՄ ԵՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՈՒՂԻՈՎ

ՍՄԿԿ XXIII համագումարը կուսակցական կազմակերպություններից պահանջեց՝ ավելի բարձրացնել կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մակարդակը, լայնորեն կիրառել կուսակցական աշխատանքի փորձված և գործնականում արդարացրած ձևեր ու մեթոդներ։ Անդրադառնալով տնտեսության ղեկավարման և արտադրության կազմակերպման բնագավառի պրակտիկ անելիքներին, համագումարն իր բանաձևում մատնանշեց, որ կուսկազմակերպությունների կարևորագույն խնդիրն է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինման, արտադրության առաջավորների ու նորարարների փորձի լայն օգտագործման հիման վրա ապահովել հնգամյակի առաջադրանքների հաջող կատարումը, տնտեսական բարձր ցուցանիշների ձեռքբերումը։

ՀԿԿ Ալավերդու շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները վերջին տարիներին զգալի գործ են կատարել կուսակցական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման, շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և արտադրության անվանի մարդկանց ուսանելի փորձի արմատավորման բնագավառներում։

Հաշվի առնելով այդ գործոնի խոշոր նշանակությունն արտադրական պլանների կատարման, ձեռնարկությունների տնտեսական ցուցանիշների բարելավման, մարդկանց աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու գործում, կուսշրջկոմը դեռևս 1967 թ. մշակել էր աշխատանքային պլան, որի իրականացմամբ շրջանը նշանակալի արդյունքների է հասել։ Առաջավոր փորձն արմատավորելիս շրջկոմը նախատեսված միջոցառումներն իրականացնում է համապատասխան սկզբնական կուսկազմակերպության միջոցով։

Հետհամագումարյան տարիներին կուսակցական-կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի դրական փորձի ընդհանրացման ու մասսայականացման նպատակով կուսշրջկոմը պարբերաբար լսել է առանձին սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունները, կոնկրետ թեմաների շուրջ նրանց զեկուցումները, սիստեմատիկաբար անց է կացրել սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություններ, հրահանգավորել նրանց։ Այդ միջոցառումները տվել են



դրական արդյունքներ, օգնել կատարելու տնտեսական պլանները, բարելավելու աշխատողների կոմունիստական դաստիարակության գործը։

Հայտնի է, որ մի ժամանակ Ախթալա—Շամլուղ հանքերը սիստեմատիկաբար թերակատարում էին առաջադրանքները և աշխատում վնասով։ Գործերի նման վիճակը, անշուշտ, խիստ անհանգստացնում էր ո՛չ միայն անմիջական ղեկավարությանը, այլև կուսշրջկոմին։ Հանքերը նման վիճակից դուրս բերելու համար շրջկոմը մի շարք կոնկրետ միջոցառումներ անցկացրեց և հանքերը համալրեց կուսակցական ու տնտեսական ձեռներեց ղեկավար կադրերով։ Համաժողովրդական սոցիալիստական մրցության ծավալման շնորհիվ հանքագործները հասան լուրջ հաջողությունների։ Նրանք 1967 թ. համախառն արտադրանքի պլանը (որի ծավալը նախորդ տարվա համեմատությամբ աճել էր ավելի քան 2,7 անգամ) կատարեցին 114 տոկոսով։ 1968 թ. համախառն արտադրանքի պլանային առաջադրանքը, 1967 թ. համեմատությամբ, գրեթե կրկնապատկվել էր (կատարվեց 108,7 տոկոսով)։ Իսկ 1967—1968 թթ. ապրանքային արտադրության իրացման պլանները համապատասխանաբար կատարվեցին 147 և 105,6 տոկոսով։ Այժմ Ախթալա—Շամլուղ հանքերը սիստեմատիկաբար կատարում և գերակատարում են պլանային առաջադրանքները։ Կոլեկտիվն այդ հաջողությունները ձեռք է բերել կուսակցական կազմակերպության քաղաքական-մասսայական համառ ու սիստեմատիկ աշխատանքի, կոմունիստների գործադրած ջանքերի շնորհիվ։ Կուսշրջկոմը 1968 թ. դեկտեմբերին շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների քարտուղարներին, տնտեսական ղեկավարներին, արտադրության մասնագետներին և մեծ թվով առաջավոր բանվորների հրավիրեց Ախթալա՝ ուսումնասիրելու հանքերի կուսկազմակերպության և կոլեկտիվի աշխատանքի փորձը։ Կուսկոմիտեի քարտուղար Ռ. Ղանթարչյանը պատմեց, թե ինչպես է կուսկոմիտեն կոմունիստների և կոլեկտիվի ջանքերն ուղղում ձեռնարկության առջև դրված կոնկրետ խնդիրների լուծմանը, ինչպես է գաղափարական-քաղաքական աշխատանքը զուգակցում տնտեսության զարգացման ընթացքին։

Հավաքի մասնակիցները հանգամանորեն ծանոթացան այն նախապատրաստական աշխատանքներին, որ կատարվել են հանքերում 1968 թ. սկբզբին՝ պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու կապակցությամբ։ Կուսկոմիտեն նախօրոք բազմակողմանի քննել է այդ հարցը, կոմունիստների ուժերը ճիշտ տեղաբաշխել արտադրության վճռական տեղամասերում։ Դրա շնորհիվ կոմունիստների ավելի քան 80 տոկոսն աշխատում է արտադրության մեջ։

Հմուտ լեռնագործների ու ֆլոտատորների պատրաստմանն ու դաստիարակմանը կուսկոմիտեն լուրջ ուշադրություն է նվիրում, սիստեմատիկ զբաղվում նրանց տեսական, հանրակրթական ու մասնագիտական մակարդակի բարձրացմամբ։ Այժմ Ախթալա—Շամլուղ հանքերում յուրաքանչյուր երկրորդ լեռնագործը տիրապետում է երկու և ավելի մասնագիտության։ Միայն վերջին երկու տարում, առանց արտադրությունից կտրվելու, 25 հոգի ավարտել են լեռնամետալուրգիական տեխնիկումը։ Ավելի քան 30 հոգի հեռակայում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, երեկոյան դպրոց են հաճախում տասնյակ երիտասարդ հանքափորներ։ Միայն 1968 թ. որակավորման հատուկ դասընթացներում սովորել են 126 հոգի։ Կուսակցական և տնտեսական ղեկավարությունը ջանում է բարելավել

բանվորների, հանքագործների կուլտուր-կենցաղային պայմանները: Դրա շնորհիվ այժմ կոլեկտիվի 90 տոկոսն աշխատում է երեք տարուց ավելի:

Շամլուղի տեղամասի տեխնիկա-տնտեսական ցուցանիշներն անցյալ տարվա հուլիսին ցածր էին: Դա մտահոգեց կուսկոմիտեին և դիրեկցիային: Շամլուղում հրավիրվեց կուսկոմիտեի ընդլայնված նիստ, որին մասնակցում էին տեղամասի տնտեսական ու կուսակցական ակտիվը: Այստեղ բացահայտվեցին ճեղքվածքի առաջացման պատճառները, նշվեցին դրանց վերացման ուղիները: Տեղամասի կոլեկտիվի ուժերը մոբիլիզացնելու նպատակով, նույն հարցը քննվեց սկզբնական կուսկազմակերպության ժողովում, որտեղ կոմունիստները պատրաստակամություն հայտնեցին ամրապնդել աշխատանքային կարգապահությունը, կոլեկտիվի ստեղծագործական ուժերը մոբիլիզացնել դժվարությունների հաղթահարման և արտադրական պլանների կատարման համար:

Կուսկոմիտեի որոշմամբ հանքերի դիրեկցիան Շամլուղի տեղամասին օգնելու նպատակով կոմպլեքսային երկու բրիգադա ուղարկեց այնտեղ. բացի այդ, բարելավվեց հիմնական և օժանդակ նյութերի մատակարարումը:

Կուսկոմիտեն և կուսկազմակերպությունները կազմակերպական միջոցառումների իրականացմանը զուգընթաց, ուժեղացրին քաղաքական-մասսայական աշխատանքը: Հանքագործների համար քաղաքական թեմաներով զեկուցումներ, դասախոսություններ կարդացին կուսկոմիտեի և կուսշրջկոմի դասախոսներն ու պրոպագանդիստները, կուսակցական ու սովետական ղեկավար աշխատողները:

Այս ամենն օգնեց գործին: Կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ ջանում էր իր ուժերը ներդնել հանուն ընդհանուր գործի: Հանքագործների աշխատանքային ակտիվությունը, ինչպես միշտ, գլխավորում էին կոմունիստները: Առանձնապես պետք է նշել հանքափորներ Վ. Գրիգորյանի, Ա. Պապյանի, Դ. Դավլեգովի, սկրեպերային կարապիկների մեքենավար Ա. Սահակյանի և մյուսների անունները, որոնք արտադրության առաջավորներ են և անձնական օրինակ են ցույց տալիս մյուսներին:

Հանքերի կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում հանքագործների միջև սոցիալիստական լայն մրցություն ծավալելու գործին: Կուսակցական և արհմիութենական կոմիտեների որոշմամբ սահմանված են փոխանցիկ դրոշներ՝ հաղթող բրիգադներին պարգևատրելու համար: Իսկ անհատական մրցությունում աչքի ընկնողներին խրախուսելու համար սահմանված է հետևյալ կարգը՝ երեք ամիս անընդմեջ հաղթողը՝ հորատողը, ֆլոտատորը և այլ աշխատանք կատարող բանվորը, ստանում է պատվոգիր, հաղթողի լուսանկարը վեց ամիս փակցվում է պատվոտախտակին, իսկ տարվա ընթացքում գրանցվում պատվոգրքում: Կան նաև աշխատողների նյութական խրախուսման ձևեր: 1968 թ. լեռնագործներին տրվել է 169 հազար ռուբլի:

Ընդամենը չորս ամիս է անցել Ախթալա-Շամլուղ հանքերի կուսկազմակերպության և կոլեկտիվի աշխատանքի փորձի կոլեկտիվ ուսումնասիրմանը նվիրված պարապմունքից: Բայց այն խթանիչ ազդեցություն է ունեցել շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների և նրանց կուսկազմակերպության կոլեկտիվների գործունեության համար: Ախթալացիների դրական փորձն արմատավորվեց պղնձաքիմիական կոմբինատի, գարեջրի գործարանի, շինմոն-



տաժային տրեստի և մի շարք այլ ձեռնարկությունների կուսկազմակերպություններում ու կոլեկտիվներում:

Առաջավոր փորձի արմատավորումն առավել նշանակություն ունի գյուղատնտեսության արտադրության զարգացման համար: Հայտնի է, որ մեր շրջանի գյուղատնտեսության մեջ գերակշռում է ձեռքի աշխատանքը (հատկապես լեռնային գոտու տնտեսություններում): Ուստի, շրջկոմն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման, անասունների ցեղի բարելավման, մթերատվության բարձրացման ասպարեզում եղած առաջավոր փորձի ուսումնասիրման և ներդրման հարցերին:

Շրջանի ճանաչված աշխատողներից են Օձունի սովխոզի հողագործներն ու մեխանիզատորները: Մի քանի տարի առաջ նրանք հաջողությամբ մշակեցին «Բեզոստայա—1» սորտի ցորենը և ամեն տարի յուրաքանչյուր հեկտարից ստանում են 28—30 ցենտներ միջին բերք, իսկ առանձին հողակտորներում՝ 45—50 ցենտներ:

Ագրոտեխնիկական գիտության և առաջավոր փորձի նվաճումների արմատավորման և գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման միջոցով օձունցիները զգալիորեն բարձրացրել են բուսաբուծությունից ստացվող եկամուտները: Օձունում լրիվին մեքենայացվել են հացահատիկի, կարտոֆիլի, եգիպտացորենի, ծխախոտի և մյուս կուլտուրաների մշակության աշխատանքները: Արմատավորվել է հերբիցիդների միջոցով ցանքերը մոլախոտերից վնասազերծելու պրակտիկան: Այդ բանին սովխոզը հասել է աստիճանաբար: Օձունցիները հիմնավորապես ուսումնասիրել են երկրի գյուղատնտեսության մեջ կիրառվող առաջավոր մեթոդները:

Դրա շնորհիվ սովխոզն այժմ մշակում է 150 հեկտար կարտոֆիլ, 100 հեկտար ծխախոտ: Հայտնի է, որ այդ կուլտուրաները, հատկապես ծխախոտը, աշխատատար են և աշխատող ձեռքի պակասը միշտ կարող է անդրադառնալ բերքատվության վրա: Ահա այստեղ է, որ մարդուն օգնության է գալիս մեքենան, գյուղատնտեսական հզոր տեխնիկան:

Սովխոզի կուսկազմակերպությունն ու դիրեկցիան տարիներ առաջ իրականացրել են կազմակերպական-տեխնիկական կոնկրետ միջոցառումներ, վերապատրաստման դասընթացներ են ուղարկել մեխանիզատորներին, ձեռք բերել անհրաժեշտ մեքենաներ ու սարքավորումներ և այլն: Այստեղ 1966 թ. լրիվ մեքենայացված են կարտոֆիլի ցանքի, մշակության ու բերքահավաքի աշխատանքները: Կարտոֆիլի մշակության ագրոտեխնիկական կանոնների հետևողական կիրառման և աշխատատար պրոցեսների մեքենայացման շնորհիվ, զգալի չափով բարձրացել է բերքատվությունը, իջել արտադրանքի ինքնարժեքը: Օրինակ, եթե 1965 թ. կարտոֆիլի մեկ հեկտարից ստացվել է 89 ցենտներ (ընդհանուր օգուտն այդ կուլտուրայից կազմեց 4004 ռուբլի), ապա 1967 թ. դրանք համապատասխանաբար հասել են 123 ցենտների և 23439 ռուբլու:

Մինչև մեքենայացումը 150 հեկտար կարտոֆիլի ցանքատարածության մշակության վրա ծախսվում էր 10359 մարդ-օր և 25953 ռուբլի, իսկ մեքենայացվելուց հետո դրանք անհամեմատ նվազեցին (285 մարդ-օր և 1425 ռուբլի): Մեքենայացման շնորհիվ հնձվել են կարտոֆիլի թփերը և միայն 1968 թ. պատրաստվել 150 տոննա լրացուցիչ սիլոս:

Օձունցիների փորձն ուսումնասիրելու և շրջանի մյուս տնտեսություննե-

րում արմատավորելու նպատակով ՀԿԿ շրջկոմի և գյուղատնտեսական արտադրական վարչության նախաձեռնությամբ 1968 թ. գարնանը տեղում անցկացվեց հավաք, որին մասնակցում էին տնտեսությունների ղեկավարները, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները, գյուղատնտեսները, բրիգադավարները, մեխանիզատորները և կարտոֆիլի մշակությամբ զբաղվող բանվորները։ Սեմինարի մասնակիցները ծանոթացան կարտոֆիլ տնկող, մշակող և հանող բոլոր մեքենաների ու մեխանիզմների, ինչպես նաև դրանց օգտագործման կանոնների հետ։

Օձունի սովխոզի աշխատանքի փորձի ուսումնասիրման արդյունքը եղավ այն, որ 1968 թ. շրջանի 696 հեկտար կարտոֆիլի ցանքատարածություններից մոտ 400-ը մշակվեց մեքենայով։ Այնտեղ անցկացվել է նաև խոզաբուծության զարգացման հարցերին նվիրված սեմինար պարապմունք։

Շնողի սովխոզը, որպես խոշոր այգեգործական տնտեսություն, հայտնի է հանրապետությունում։ Այստեղ օրինակելի է կազմակերպվում այգիների մշակությունն ու խնամքը, տարեցտարի բարձրանում բերքատվությունը։ Շրջանի այգեգործներն անցյալ տարի ուսումնասիրեցին շնողցիների փորձը և սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարությամբ կոնկրետ աշխատանք են տանում այդ սովխոզի փորձն իրենց տնտեսություններում արմատավորելու համար։

Մյուս այգեգործական խոշոր տնտեսությունը Ճոճկանի սովխոզն է. սակայն վերջինս մեծ եկամուտ է ստանում նաև ծխախոտաբուծությունից։ Ճոճկանցիները ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստանում են 20—25 ցենտներ միջին բերք։ Սովխոզի ղեկավարներն ու ծխախոտագործները տարիներ շարունակ մանրամասն ուսումնասիրել են այդ թանկարժեք կուլտուրայի մշակության ագրոտեխնիկան, իրենց տնտեսության հողակլիմայական առանձնահատկությունները և հետևողական ու քրտնաջան աշխատանքի միջոցով հասել իրենց նպատակին։ Այդ գործում, նշանակալի են սովխոզի գլխավոր գյուղատնտես, գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Պ. Խաչատրյանի ծառայությունները։

Ճոճկանցիների աշխատանքը շրջանի ծխախոտագործների սեփականությունը դարձնելու նպատակով 1969 թ. սկզբին այդ գյուղում անցկացվեց տրադիցիոն հավաք, որին մասնակցեցին Շնողի, Օձունի, Դանուշավանի, Թումանյանի սովխոզների, Ղաչաղանի, Մղարթի, Ծաթերի, Կ. Աղեգու և Աքորու կոլտնտեսությունների ղեկավարները, կուսկազմակերպությունների քարտուղարները և ծխախոտագործները։ Այժմ շրջանի տնտեսություններում կոնկրետ աշխատանք է տարվում ճոճկանցիների մեթոդի արմատավորման և ծխախոտի բերքատվության բարձրացման ուղղությամբ։

Զգալի աշխատանք է կատարված եղբայրական հանրապետությունների լավագույն դպրոցների աշխատանքի առաջավոր փորձն ուսումնասիրելու և այն շրջանի դպրոցներում ներդնելու ուղղությամբ։ Այդ նպատակով 1968/69 ուս-տարում քաղաքի դպրոցների ներկայացուցիչները եղան Մոսկվայի Վիլնյուսի, Բաքվի, Լիտվական ՍՍՀ Կրետինգի շրջանի դպրոցներում, ուսումնասիրեցին նրանց աշխատանքի դրական փորձը։

Նման փոխայցելությունները ո՛չ միայն նպաստում են առաջավոր փորձի փոխանակմանը, ուսումնա-դաստիարակչական աշխատանքի բարելավմանը, այլև ամրապնդում են եղբայրական հանրապետությունների ուսուցչական կոլեկտիվների, աշակերտների ինտերնացիոնալ կապերը։



Առաջավոր փորձն ուսումնասիրվում և մասսայականացվում է նաև այլ ձևերով ու մեթոդներով։ Այսպես, շրջկոմի մեթոդխորհուրդն ուսումնասիրել է շրջանում ճանաչված պրոպագանդիստ Ս. Մելիքսեթյանի աշխատանքի փորձը. արդյունքները քննարկվել են շրջկոմի բյուրոյում և այն տարածելու նպատակով կոնկրետ միջոցառումներ սահմանել։ Շրջանային «Լոռի» թերթի և տեղական ռադիոհաղորդումների միջոցով սիստեմատիկաբար պրոպագանդվում է արտադրության առաջավորների, լավագույն ուսուցիչների, բժիշկների և մյուս մասնագետների հայրենանվեր աշխատանքը։

Բ. Ա. ԳՅՈԶԱԼՅԱՆ

ՀԿԿ Ալավերդու շրջկոմի առաջին քարտուղար

## ՊԱՏՐԱՍՏՎՈՒՄ ԵՆՔ ՄԵԾ ՏԱՐԵԼԻՑԻՆ

Գնալով ավելի կարճ ժամանակ է մեզ բաժանում հեղափոխության մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյա հոբելյանից և այդ նշանավոր տարելիցի պատվին ծավալված համաժողովրդական մրցությունը ամենուր թևակոխում է ամենաեռուն ու արգասաբեր շրջանը։

Շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները դեռ անցյալ տարի քաղաքական մասսայական լայն միջոցառումներ մշակեցին «Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը նախապատրաստելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը կիրառելու համար։ Կուսշրջկոմի բյուրոն 1968 թ. օգոստոսի 23-ին անդրադարձավ այս հարցին և համապատասխան որոշում ընդունեց։ Կուսակտիվը, պրոպագանդիստները, ագիտատորները և քաղինֆորմատորներն աշխատավորության շրջանում պրոպագանդում էին Կենտկոմի որոշումը։ Շրջանի 350 ագիտատոր և քաղինֆորմատոր հոբելյանի նախապատրաստությանը նվիրված իրենց զրույցները կապում են տվյալ ձեռնարկության, տնտեսության կոնկրետ խնդիրների հետ, աշխատավորներին նպատակամղում արտադրական առաջադրանքների հաջող կատարմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մասսայականացումը նոր թափ հաղորդեց ծավալված մրցությանը, նոր լիցք՝ աշխատավորների խանդավառությանը։ Ամենուր բանվորները, կոլտնտեսականները և ինտելիգենցիան ստանձնեցին նոր, ավելի մեծ պարտավորություններ և լայն պայքար ծավալեցին դրանց կատարման համար։

1969 թ. հունվարի 14-ին կուսշրջկոմի բյուրոն քննարկեց Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ Սևանի ապակեէլեկտրամեկուսիչների գործարանի կոլեկտիվի ստանձնած պարտավորությունները, և հավանություն տվեց նրանց միջոցառումներին ու հանձնարարեց շրջանի կուսկազմակերպություններին՝ քիմիագործների օրինակով մշակել հոբելյանական պլան։ Կարճ ժամանակ անց շրջանի հիմնարկ-ձեռնարկություններն ու տնտեսություններն ընդօրինակեցին քիմիագործներին։ Այնուհետև, կուսակցական, տնտեսական շրջանային ակտիվի ժողովը հաստատեց Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ շրջանի աշխատավորության անելիքների ընդհանուր պլանը։

Այժմ սևանցիներն իրենց ամբողջ ստեղծագործական ուժերը ներդնում են մեծ հոբելյանի պատվին ստանձնած պարտավորությունների անթերի կատարմանը։ Բավական է նշել, որ շրջանի արդյունաբերությունը 1969 թ. առա-

չին եռամսյակի արտադրանքի իրացման պլանը կատարեց 105,9 տոկոսով։ Նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, արդյունաբերության արտադրանքի ծավալն ավելացավ 13,4 տոկոսով։ Սևանի ամենախոշոր ձեռնարկությունը՝ ապակեէլեկտրամեկուսիչների գործարանը, այս տարվա առաջին եռամսյակի արտադրական առաջադրանքների գերակատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, շահութաբերության ապահովման և տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշների համար արժանացավ ՀՍՍՀ քիմիական արդյունաբերության վարչության և արհմիության հանրապետական կոմիտեի առաջին կարգի մրցանակի, իսկ գործարանի էլեկտրավառարանների արտադրամասը պայքարում է «Լենինյան աշխատանքի արտադրամասի» կոչմանն արժանանալու համար։

Վ. Ի. Լենինի ծննդյան տարելիցի առթիվ ծավալված մրցությունում նոր, լուրջ արդյունքների հասան Սևանի ձկնորսները և «Սևանշին» տրեստի № 5 շինվարչության կոլեկտիվը։ Ջուկկոմբինատն առաջին եռամսյակում շահեց ՍՍՀՄ ձկնարդյունաբերության մինիստրության և սննդի արդյունաբերության աշխատողների արհմիության կենտրոնական կոմիտեի փոխանցիկ դրոշը և առաջին կարգի մրցանակը, իսկ «Սևանշին» տրեստի № 5 շինվարչությունը՝ ՍՍՀՄ շինարարության մինիստրության և շինարարության ու շինանյութերի արդյունաբերության բանվորների կենտկոմի առաջին կարգի մրցանակն ու փոխանցիկ դրոշը։

Շրջանի գյուղատնտեսության բնագավառի աշխատողներն առաջին եռամսյակում կատարեցին և գերակատարեցին անասնաբուծական մթերքների պետությանը վաճառքի առաջադրանքները։ Հատկապես բարձր ցուցանիշների հասան Լճաշենի սովխոզի անասնապահները, որոնք նվաճեցին շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը։

Հաջողությամբ են իրագործվում Վ. Ի. Լենինի ծննդյան հոբելյանի կապակցությամբ նախատեսված քաղաքական-մասսայական և կուլտուր-լուսավորական միջոցառումները։ Կուսկազմակերպությունների գաղափարական գործունեությունը դարձել է ավելի առարկայական և ներգործուն։ Այդ տեսակետից ուշագրավ է ապակեէլեկտրամեկուսիչների գործարանի կուսկազմակերպության աշխատանքը։ Այստեղ սիստեմատիկաբար դասախոսություններ են կարդացվում այժմեական թեմաներով։

Աշխատավորների շրջանում քաղաքական-մասսայական լայն աշխատանք են ծավալել նաև Լճաշենի և Ծովագյուղի սովխոզային, գործադիր սարքերի գործարանի, Սևանի Խ. Աբովյանի, Մ. Գորկու անվան, Դդմաշենի միջնակարգ դպրոցների, ինդուստրիալ-տեխնոլոգիական տեխնիկումի, Դդմաշենի կոլտնտեսային և այլ կուսկազմակերպությունները։ Միայն այս տարվա անցած ամիսներին շրջանում լենինյան թեմատիկայով 43 դասախոսություն է կարդացվել։ Շրջանի ակումբներում, գրադարաններում, կուլտուրայի մյուս օջախներում ստեղծված են լենինյան անկյուններ, ֆոտոստենդներ։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ հատկապես լավ է աշխատում Լճաշենի ակումբը։ Մշակելով հոբելյանին նախապատրաստվելու գործունեության պլան, անասնապահական ֆերմաներում, բրիգադներում, ակումբներում և մյուս օբյեկտներում գյուղի մտավորականությունը և կուսշրջկոմի դասախոսական խմբի անդամները զեկուցումներ են կարդում, հանդիպումներ կազմակերպում հին բոլշևիկների, պատերազմի և աշխատանքի վե-



տերանների հետ։ Ինքնագործ խմբի ծրագրում լայն տեղ է հատկացված մեծ առաջնորդին նվիրված բանաստեղծություններին, երգերին և ասույթներին։

Վերջերս ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության մեթոդ-կաբինետն ուսումնասիրեց Լճաշենի ակումբի աշխատանքի փորձը և այն մասսայականացրեց հարևան ութ շրջանների կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատողների փնջային սեմինար խորհրդակցությունում, որն անցկացվեց Սևանում։

Լենինյան գաղափարներն ավելի ու խոր պրոպագանդելու նպատակով Սևանում, Ծովագյուղում, Դդմաշենում, Լճաշենում ստեղծվել և գործում են Լենինը հավերժ ապրում է ժողովրդական համալսարաններ, ուր ընդգրկված են ավելի քան 400 հոգի։ Այդպիսի համալսարան է կազմակերպվել կուսշրջկոմի և «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքին կից։ Համալսարանի պարապմունքներին մասնակցում է շրջանի կուսակցական-տնտեսական, սովետական, կոմերիտական ակտիվը (280 հոգի)։ Լենինյան ժողովրդական համալսարանն ունեցել է 3 պարապմունք. կարդացվել են Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացումը և նրա հեռանկարները, Լենինի հեղափոխական հայ զինակիցները, Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը ՍՍՀՄ-ում թեմաներով դասախոսություններ։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյա հոբելյանին նախապատրաստվելու գործում մեծ է ցուցադրական ագիտացիայի դերը։ Շրջկոմի, Ծովագյուղի քաղլուսկաբինետներում, ակումբներում, կուլտուրայի տներում, դպրոցներում, գրադարաններում, գործադիր սարքերի, ապակեէլեկտրամեկուսիչների գործարանների, ձուկկոմբինատի արտադրամասերում հարուստ նյութեր են ցուցադրված Վ. Ի. Լենինի մանկության ու պատանեկության, հեղափոխական, ինչպես նաև սոցիալիստական շինարարության տարիներին նրա տիտանական գործունեության վերաբերյալ։ Շրջանային կուլտուրայի տունը պատրաստել է աշխարհի քարտեզը, որտեղ կարմիր դրոշակներով ցույց են տրված այն վայրերը, ուր աշխատել և ապրել է հանճարեղ առաջնորդը։ Խ. Աբովյանի անվան միջնակարգ դպրոցի պիոներ-դպրոցականների ուժերով ստեղծված լենինյան սրահում ամեն օր ավելանում են տեղեկությունները այն մասին, թե որտեղ, ինչպիսի վայրեր կամ կազմակերպություններ են կրում հեղափոխության առաջնորդի անունը։

Ցուցադրական ագիտացիան հաջող է կազմակերպված առանձնապես ապակեէլեկտրամեկուսիչների, ծխախոտի ֆերմենտացիոն գործարաններում, ձուկկոմբինատում, «Արփա» և «Զանգու» կինոթատրոններում, կուլտուրայի շրջանային տանը, Ծովագյուղի և Լճաշենի սովխոզներում, Դդմաշենի կոլտնտեսությունում և այլուր։

Կուսշրջկոմի բյուրոյի խնդրանքով Սևանում կանցկացվի ՍՄԿԿ մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի համատեղ գիտական սեսիա՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին։

Շրջանի աշխատավորների պատվիրակների մի խումբ պատրաստվում է մեկնել առաջնորդի ծննդավայրը՝ Ուլյանովսկ, ծանոթանալու Ուլյանովների ընտանիքի հետ կապված մանրամասներին։ Սևանի աշխատավորները դեպի մեծ տարելիցն են ընթանում աշխատանքային նորանոր սխրանքներով։

Վ. Ն. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ
ՀԿԿ Սևանի շրջկոմի պրոպագանդայի և
ագիտացիայի բաժնի վարիչ

# ՕՐՎԱ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ՊԱՀԱՆՋԸ

ՍՄԿԿ գործունեության պատմական հարուստ փորձը ցույց է տալիս, որ կոմունիստական շինարարության ամեն մի խնդրի հաջող լուծումը պայմանավորված է աշխատավորական կոլեկտիվներում կուսակցական-կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակով, կուսկազմակերպությունների մարտունակությամբ, այն բանով, թե շարքային կոմունիստներն ինչպիսի պատասխանատվությամբ են կատարում իրենց կանոնադրական պարտականությունները, մասնակցում ներկուսակցական կյանքին։ Եվ դա հասկանալի է։ Չէ՞ որ կոմունիստները միշտ այնտեղ են, ուր մարդիկ կառուցում են, ստեղծագործում։ Նրանք իրենց անձնական օրինակով, հեղինակությամբ ստեղծագործական աշխատանքի մթնոլորտ են ստեղծում ձեռնարկություններում և կառույցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում, պետական ու գիտական հիմնարկություններում, ապահովում արտադրական պլանների և պետական առաջադրանքների կատարումը։

Վերջին տարիներին, հատկապես ՍՄԿԿ XXIII համագումարից հետո, մեր հանրապետությունում ևս զգալիորեն բարձրացել է կուսկազմակերպությունների մարտունակությունը, կոմունիստների դերն ու ակտիվությունը։ Հանրապետության առջև ծառացած խնդիրների հաջող կատարման համար կուսկազմակերպությունները բազմակողմանի ու լայն գործունեություն են ծավալել տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերում, մասսաների շրջանում։

Այս ամենի լավ օրինակն է Աբովյանի շրջանի Կոտայք գյուղի կոլտնտեսության կուսկազմակերպության գործունեությունը։ Ներկայումս կուսկազմակերպությունն ունի 46 կոմունիստ. դա նշանակում է, որ այստեղ յուրաքանչյուր հինգերորդ աշխատունակ կոլտնտեսական ՍՄԿԿ անդամ կամ անդամության թեկնածու է։ Գրեթե բոլոր կոմունիստները բարեխղճորեն են կատարում իրենց կանոնադրական պարտականությունները, մշտապես շփվում են անկուսակցական մասսաների հետ, ագիտատորի ճշմարտացի խոսքով և աշխատանքի անձնական օրինակով նրանց մոբիլիզացնում պլանների կատարման, հանրային տնտեսության զարգացման ու ամրապնդման համար։

Կուսկազմակերպությունը կարևոր նշանակություն է տալիս կադրերի ընտրության, առաջքաշման և դաստիարակության, արտադրության մեջ կոմունիստների ճիշտ տեղաբաշխման և նրանց ավանգարդային դերի ապահովման հարցերին։ 34 կոմունիստ աշխատում են արտադրության մեջ և աչքի են ընկնում աշխատանքային սխրագործություններով։ Նրանցից է 55-ամյա Ի. Ղ. Գևորգյանը։ Նա կուսակցության շարքերն է ընդունվել Մեծ հայրենականի օրերին՝ 1943 թ.։ Արդեն 18 տարի է, ինչ Գևորգյանը բարեխղճությամբ խնամում է կոլտնտեսության հորթերը։ Նա 1968 թ. վաստակեց 624 աշխօր։ Նրա ընտանիքի 4 աշխատունակ անդամների տարեկան եկամուտը 5330 ռուբլի է։

Կոլտնտեսության բանջարաբույծ, կուսանդամ Հ. Ս. Մելքոնյանը միշտ բարձր բերք է ստանում։ 1968 թ. նա պլանային 150 ցենտների դիմաց, ամեն մի հեկտարից ստացել է 350 ցենտներ բանջարեղեն, վաստակել 526 աշխօր։

Իր լավ աշխատանքով աչքի է ընկնում երիտասարդ կոմունիստ, ծխախոտագործ Զ. Ա. Սարգսյանը։ Նրա ղեկավարած օղակն անցյալ տարի 8,5 հեկտար հողատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 28 ցենտ-



ներ ծխախոտի հումք։ Անվանի օղակավարը վաստակել է 605 աշխօր։

Կոմունիստների և կոմերիտականների անձնական օրինակը կոլտնտեսականների շրջանում աշխատանքային եռանդ ու նախաձեռնություն է առաջ բերել։ 1968 թ. կոլտնտեսությունն արտադրական ավելի նշանակալից հաջողությունների է հասել։ Պետությանը կաթի վաճառքի պլանը կատարվել է 133, մսինը՝ 126, ձվինը՝ 149, ծխախոտինը՝ 122 տոկոսով։ Կոլտնտեսության տարեկան ընդհանուր դրամական եկամուտը կազմել է 473 հազար ռուբլի, մեկ աշխօրի վարձատրությունը՝ 3 ռ. 64 կ.։ Հաշվումները ցույց են տվել, որ 1968 թ. յուրաքանչյուր աշխատունակ կոլտնտեսական, միջին հաշվով, վաստակել է 470 աշխօր և ամսական ստացել 142 ռ. 50 կոպ.։

Կուսկազմակերպությունը մշտապես հոգում է, որ կոմունիստներն իրենց լավ դրսևորեն ո՛չ միայն արտադրության մեջ, այլև հասարակական կյանքում, կատարեն քաղաքական առաջամարտիկի դերը, սիստեմատիկորեն շփվեն մասսաների հետ, պրոպագանդեն կուսակցության և կառավարության որոշումները, քաղդաստիարակչական աշխատանք տանեն աշխատավորական լայն զանգվածների շրջանում։ Այդ ամենը կոլտնտեսականներին մոբիլիզացնում է կոլտնտեսության առջև ծառացած խնդիրները հաջող լուծելու համար։

Կոմունիստների գրեթե 65 տոկոսն ունի կուսակցական հանձնարարություններ. նրանք հասարակական ակտիվ աշխատանք են կատարում, կուսբյուրոյի և կոլտնտեսության վարչության անդամներ են, գյուղական սովետի դեպուտատներ, ակտիվիստներ, պրոպագանդիստներ, ագիտատորներ և քաղինֆորմատորներ։

Կոտայքում կոմունիստների և ակտիվի կողմից տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքի մակարդակի մասին դատում են ոչ միայն արտադրական ցուցանիշներով, այլև քաղաքական հասունությամբ, բարոյական վարքագծով։ Գյուղում ստեղծվել է այնպիսի մթնոլորտ, ուր տեղ չունեն ծույլերը, ձրիակերները, հարբեցողները, հասարակական կարգը խանգարողները։

Աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործին ակտիվ մասնակցում են կոլտնտեսության նախագահ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ջ. Ե. Ջաքարյանը, բրիգադավարներ Ա. Մ. Կարապետյանը, Դ. Ն. Արզումանյանը, ֆերմայի վարիչ Ա. Դ. Շահինյանը, գյուղատնտես Կ. Կ. Պողոսյանը։ Կոլտնտեսականների համար քաղաքական հետաքրքրական զրույցներ են անցկացնում ագիտատորներ Գ. Պ. Հակոբյանը, Պ. Բ. Համբարձումյանը, Ս. Ս. Վարդանյանը և ուրիշներ։

Կուսակցական կազմակերպության անդամների լավ աշխատանքը պայմանավորված է ոչ միայն նրանով, որ կոմունիստների ճնշող մեծամասնությունը բարեխղճորեն է վերաբերվում կանոնադրական պարտականությունների կատարմանը, այլև նրանով, որ նրանց գործունեությունը, անկախ պաշտոնից, մշտապես վերահսկում է կուսկազմակերպությունը։ Կուսակցական ընդհանուր ժողովներում և բյուրոյի նիստերում պարբերաբար լսվում և քննարկվում են կոմունիստների ինքնահաշվետվությունները, նրանց զեկուցումներն իրենց վստահված տեղամասի, հանրային տնտեսության, ընթացիկ աշխատանքների վիճակի, կուսակցական հանձնարարությունների և, ընդհանրապես, իրենց կանոնադրական պարտականությունների կատարման վերաբերյալ։ Դա օգնում է կոմունիստների քաղաքական-գաղափարական կոփմանը, հանրային

*տնտեսության՝ կուսակցական ղեկավարության ապահովմանը։ Գործին մեծ չափով օգնեցին կոլտնտեսության նախագահ Զ. Զաքարյանի (սատանձնած պարտավորությունների կատարման ընթացքի վերաբերյալ), գյուղատնտես Ն. Պողոսյանի (խոտհնձի ընթացքի վերաբերյալ), գյուղսովետի գործկոմի նախագահ Լ. Շահբազյանի (գյուղի բարեկարգման միամսյակ անցկացնելու վերաբերյալ), զոոտեխնիկ Ք. Զաքարյանի (անասունների ձմեռման ընթացքի վերաբերյալ) և ուրիշ աշխատողների զեկուցումների քննարկումն ընդհանուր կուսակցական ժողովներում։*

*ՍՄԿԿ կանոնադրության համաձայն կուսակցության անդամը պարտավոր է պայքարել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար, անշեղորեն կենսագործել կուսակցության որոշումները, մասսաներին պարզաբանել կուսակցության քաղաքականությունը, տիրապետել մարքս-լենինյան տեսությանը, լինել սկզբունքային, արմատավորել քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Կոտայքի կոլտնտեսության կոմունիստները ճշտությամբ են կատարում կանոնադրական այս պահանջները։*

*Սակայն այստեղ դեռևս ամեն ինչ արված չէ բոլոր կոմունիստների ակտիվությունն ու պատասխանատվությունը բարձրացնելու համար։* Կուսկազմակերպությունն ու կոմունիստները պակաս ուշադրություն են նվիրում թողարկվող արտադրանքի որակին: *Թեպետ կոլտնտեսությունում տարեցտարի կատարվում և գերակատարվում է ծխախոտի հումքի արտադրության ու վաճառքի պլանը, բայց չեն կատարվում սորտայնության առաջադրանքները։ Այսպես, 1968 թ. ծխախոտի հումքի վաճառքի պլանը գերակատարվել է երրորդ գորշագույն և չորրորդ սորտերի հաշվին։ Կոլտնտեսությունը ոչինչ չի հանձնել պլանային առաջին սորտի 8 և երկրորդ սորտի 110 ցենտների դիմաց, իսկ երրորդ լուսավոր սորտի վաճառքի առաջադրանքը կատարվել է ընդամենը 55,6 տոկոսով։ Այս ամենի հետևանքով արտելի տարեկան դրամական եկամուտն իջել է 88 հազար ռուբլով։*

*Արտադրանքի որակի բարձրացումը սոցիալիստական տնտեսավարության կարևոր հոգսերից է, օրվա հրամայական պահանջը, որը, կուսկազմակերպությունը չպետք է շրջանցի։ Պարզ է, եթե Կոտայքի կոլտնտեսության կուսկազմակերպությունը, հատկապես ծխախոտագործ կոմունիստները, ժամանակին պատշաճ ուշադրություն նվիրեին ծխախոտի հումքի որակին, արդյունքներն ավելի լավ կլինեին։*

*Կոտայք գյուղի կոլտնտեսության կուսկազմակերպությունը ՍՄԿԿ XXIII համագումարից հետո անցած ժամանակամիջոցում որոշ քայլեր է արել իր աշխատանքների վերակառուցման և կոմունիստների ակտիվության ու պատասխանատվության բարձրացման նպատակով։ Եվ դա օգնում է հանրային տնտեսության հետագա ամրապնդմանը, կոլտնտեսականների եկամուտների ու բարեկեցության բարձրացմանը։*

*Զ. Բ. ՍՈՒԼԹԱՆՈՎ*

ՀԿԿ Կենտկոմի տեսուչ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՍՈՎԽՈԶՆԵՐԸ ԴԱՐՁՆԵՆՔ ԾԱՀԱՎԵՏ*

*ՍՄԿԿ XXIII համագումարը խնդիր դրեց սովխոզները փոխադրել լրիվ տնտեսական հաշվարկի և բազմակողմանիորեն զարգացնել ներտնտեսային հաշվարկը կոլտնտեսային արտադրության մեջ։*

*Լրիվ տնտհաշվարկը տնտեսվարության սոցիալիստական մեթոդ է, որը հիմնվում է աշխատանքի վերջնական արդյունքի նկատմամբ աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման, արտադրության ծախքերի և տնտեսական գործունեության արդյունքների համաչափման, տնտեսության սեփական եկամուտներով կատարված ծախքերի փոխհատուցման, միջոցների խնայողության և տնտեսությունների շահութաբեր գործունեության ապահովման վրա։ Այն ուղղված է տնտեսությունների գլխավոր խնդրի՝ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների արդյունավետ օգտագործման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և արտադրության արդյունավետության բարձրացման նպատակին։*

*Սովխոզային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, գյուղատնտեսական մթերքների արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու, սովխոզների և պետական գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների աշխատանքի արդյունքները բարելավելու գործում աշխատողների նյութական շահագրգռվածությունը խրախուսելու նպատակով, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1967 թ. ապրիլի 13-ին որոշեցին երկրի սովխոզներն աստիճանաբար փոխադրել լրիվ տնտհաշվարկի։ 1967 թ. 390 սովխոզ աշխատել են այդ սկզբունքով, որոնց տնտեսական ցուցանիշները, նախորդ տարվա համեմատությամբ, զգալիորեն բարձրացել են։*

*ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությունը, պետպլանը, ֆինանսների մինիստրությունը, պետբանկը և ԿՎՎ ամփոփելով լրիվ տնտհաշվարկի փոխադրված սովխոզների 1967 թ. ֆինանսական գործունեության արդյունքները, առաջարկեցին լրիվ տնտհաշվարկի փոխադրել ևս 400 սովխոզ և պետական գյուղատնտեսական այլ ձեռնարկություններ։*

*ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1968 թ. փետրվարի 14-ին որոշեց երկրի 400 սովխոզներ և պետական գյուղատնտեսական այլ ձեռնարկություններ 1968 թ. երկրորդ եռամսյակից փոխադրել լրիվ տնտհաշվարկի։ 1968 թ. ապ-*

---

* *Տպագրվում է հարցադրման կարգով։* Խմբ.։

 րիլի մեկից լրիվ տնտհաշվարկի են փոխադրվել մեր հանրապետության Հոկտեմբերյանի շրջանի Լենինյան ուղի և Կալինինոյի շրջանի Կալինինի անվան սովխոզները։

ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1968 թ. դեկտեմբերի 19-ին ընդունելով ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության և միութենական հանրապետությունների մինիստրների սովետների առաջարկությունները, որոշեց 1969 թ. հունվարի մեկից լրիվ տնտհաշվարկի փոխադրել ևս 2879 սովխոզ։ Այդ որոշման համաձայն, 1969 թ. հունվարի մեկից լրիվ տնտհաշվարկի են փոխադրվել հանրապետության Հոկտեմբերյանի շրջանի Նաիրի, Մայիսյան, Արաքս, Զերժինսկու, Խանջյանի անվան, Արարատի շրջանի Արմաշ, Սպանդարյանի անվան, Կիրովի անվան, Էջմիածնի շրջանի № 3, Նոյեմբերյանի շրջանի Հաղթանակ, Ջեյթուն, Լալվար սովխոզները, Հոկտեմբերյանի Լուկաշինի անվան սովխոզ-տեխնիկումը և Լենինականի սելեկցիոն կայանը։

Այդ սովխոզների համար նպաստավոր պայմաններ են ստեղծվում արտադրության առավել բարձր արդյունավետության, արտադրաֆոնդերի, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների խնայողաբար օգտագործման, ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության և արտադրության զարգացման գործում կոլեկտիվների, նրանց յուրաքանչյուր աշխատողի նյութական շահագրգռվածության բարձրացման, ինչպես նաև տնտեսությունների բարձր և շահութաբեր աշխատանքն ապահովելու համար։ Լրիվ տնտհաշվարկի փոխադրված սովխոզները սեփական միջոցների հաշվին ապահովում են արտադրական բոլոր ծախսումների հատուցումը, իրականացնում հետագա ընդլայնված վերարտադրությունը (արտադրական նշանակություն ունեցող կապիտալ ներդրումներ, հիմնական հոտի կազմավորում, սեփական շրջանառու միջոցների աճ և այլն), ստեղծում տնտեսական խթանման ֆոնդեր, ինչպես նաև ժամանակին վերադարձնում պետբանկի վարկերը։ Այդ տնտեսություններից պետությանը հանձնվող գյուղատնտեսական մթերքների դիմաց վճարվում է կոլտնտեսությունների համար սահմանված վաճառքի գներով և հավելումներով, որոնք ներկայումս գործող հանձնման գներից զգալիորեն բարձր են։ Պահպանվում են մթերքների իրացման գործող կարգը և հաշվարկի պայմանները՝ մթերքներն առևտրի ցանցում և անմիջականորեն սպառողներին վաճառելու դեպքում։

Լրիվ տնտհաշվարկի անցած սովխոզներն ինքնուրույն են որոշում արտադրա-տնտեսական գործունեության շատ հարցեր։ Գյուղատնտեսական մթերքների վաճառքի պլանային առաջադրանքների, ինչպես նաև մթերող, առևտրական, վաճառահանող կազմակերպությունների և արդյունաբերական ձեռնարկությունների հետ կնքված պայմանագրերի հիման վրա պլանավորվում է արտադրության ծավալը, հաշվի առնելով պլանից ավելի մթերքներ վաճառելու հնարավորությունները։ Պլանավորում են աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի ինքնարժեքը, աշխատողների թիվը, սահմանում ձեռնարկության կառավարման ավելի արդյունավետ կառուցվածք։ Նախորդ եռամսյակներում աշխատավարձի անտեսված գումարներն օգտագործում են հաջորդ եռամսյակներում, ինչպես նաև հաջորդ եռամսյակներից, տարեկան ֆոնդի սահմաններում, միջոցներ են փոխառնում աշխատավարձ վճարելու համար։ Ելնելով տիպային հաստիքներից և հաստիքային նորմատիվներից, նրանք են որոշում վարչա-կառավարչական հաստիքները, ինչպես նաև ծախսերի նախահաշիվը, ինժեներա-տեխնիկական աշխատողների թիվը։



Աշխատավարձի պլանային ֆոնդի սահմաններում, որպես բացառություն, արտադրության մեջ զբաղված բարձրորակ ինժեներա-տեխնիկական աշխատողների, բաժանմունքների, ֆերմաների վարիչների և բրիգադավարների համար սահմանում են աշխատավարձի հավելում պաշտոնային դրույքի (տարիֆային դրույքի) մոտ 30 տոկոսի չափով, այդ նպատակով օգտագործելով աշխատավարձի պլանային ֆոնդի մինչև 0,3 տոկոսը։

Նոր մեթոդով աշխատող սովխոզներին իրավունք է վերապահվում ավելորդ, չօգտագործվող տրակտորներ, գյուղատնտեսական մեքենաներ, բանող և մթերատու անասուններ, սերմացուներ, կեր, փոխադրամիջոցներ, սարքավորումներ և այլ նյութական արժեքներ վաճառել մյուս ձեռնարկություններին, կազմակերպություններին և կոլտնտեսություններին, եթե վերադաս կազմակերպությունները հրաժարվում են դրանք վերաբաշխելուց կամ այլ սովխոզների հանձնելուց։

Մթերող կազմակերպությունների կողմից չընդունված բանջարեղենը, պտուղները, խաղողը և մյուս շուտ փչացող մթերքները, ինչպես նաև կարտոֆիլը, թռչունները, իրացնում են պետական, կոոպերատիվ կազմակերպությունների միջոցով և շուկայում, կողմերի համաձայնությամբ որոշված գներով և դրանք մտցնում պետությանը մթերքներ վաճառելու պլանի կատարման մեջ (բացառությամբ շուկայում վաճառվածից)։

Սովխոզները գյուղատնտեսական արտադրական հիմնական ֆոնդերի համար բյուջեին կատարվող վճարման չափը որոշելուց հետո, օգուտների ընդհանուր գումարից մասհանումներ են կատարում նյութական խրախուսման ֆոնդին՝ պլանային օգուտների 15, իսկ արտապլանային օգուտների՝ հիշյալ նորմայի 50 տոկոսը, պայմանով, որ այդ նպատակով կատարվող մասհանումների ընդհանուր գումարը չգերազանցի աշխատավարձի տարեկան ֆոնդի 12 տոկոսից։ Սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդին հատկացվում է 10, ապահովագրությանը՝ 20, տնտեսության ամրապնդմանն ու ընդլայնմանը՝ 10, ղեկավար աշխատողների պարգևատրությանը՝ 1,5 տոկոս։

Նյութական խրախուսման ֆոնդն օգտագործվում է բանվորներին, ղեկավար, ինժեներա-տեխնիկական աշխատողներին, ծառայողներին, ներտնտեսային սոցմրցությունում հաղթող կոլեկտիվներին, առանձին մարդկանց պարգևատրելու նպատակով, սովխոզների որոշ աշխատողների միանվագ օգնություն ցույց տալու համար։

Նյութական խրախուսման ֆոնդը տնօրինում է սովխոզի ադմինիստրացիան՝ արհմիութենական կազմակերպության մասնակցությամբ։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդն օգտագործվում է բանվոր-ծառայողների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, բուժսպասարկման, հանգստյան տների ու սանատորիաների ուղեգրերի ձեռքբերման, սննդի օբյեկտների, ակումբների, մանկական հիմնարկությունների կահավորման, ֆիզկուլտ միջոցառումների անցկացման, ինչպես նաև նախատեսվածից ավելի բնակելի և հանգստյան տների, պիոներական ճամբարների, մանկական հիմնարկությունների, սննդի օբյեկտների կառուցման և կուլտուր-կենցաղային այլ կարիքների համար։

Լրիվ տնտհաշվարկով աշխատող սովխոզները արտադրական օբյեկտների կառուցումը, գյուղատնտեսական տեխնիկայի, տրանսպորտի միջոցների և

սարքավորումների ձեռք բերումը կատարում են օգուտների և ամորտիզացիոն մասհանումների հաշվին, իսկ բնակելի տների, դպրոցների, բժշկական և մանկական հիմնարկությունների, ակումբների, բաղնիքների, մելիորատիվ և իռիգացիոն կառուցվածքների, էլեկտրահաղորդման գծերի շինարարությունը՝ պետական բյուջեի միջոցների հաշվին։

Վերանում են սովխոզներին վարկավորության սահմանափակումները. նրանց երկարատև վարկ է տրամադրվում սեփական շրջանառու միջոցների լրացման, տեխնիկայի արմատավորման և արտադրության մեքենայացման, արտադրապրոցեսների ինտենսիվացման, արտադրության տեխնիկական կատարելագործման և այլ միջոցառումների իրականացման համար։ Կարճատև վարկ է տրվում արտադրության սեզոնային ծախսումները ծածկելու և ապրանքա-նյութական արժեքների պաշարներ ստեղծելու նպատակով։

Լրիվ տնտհաշվարկի փոխադրված սովխոզների գործունեության արդյունքները ցույց են տալիս, որ նոր մեթոդով աշխատող սովխոզներում, իրոք, նպաստավոր պայմաններ են ստեղծվում արտադրության ընդլայնման, աշխատողների վարձատրության ավելացման, աշխատանքի արտադրողականության և շահութաբերության բարձրացման համար։

Այսպես, Հոկտեմբերյանի շրջանի Լենինյան ուղի և Կալինինոյի Կալինինի անվան սովխոզները 1968 թ. ապրիլի մեկից աշխատել են լրիվ տնտհաշվարկի սկզբունքով։ Սովխոզներում հետևողական աշխատանք է տարվել հողն ու տեխնիկան, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու, անարտադրողական ծախսերը, կորուստները, գերածախսերը վերացնելու, աշխատողների նյութական շահագրգռվածությունը և արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, նվազագույն ծախսումներով ավելի շատ մթերքներ արտադրելու և սովխոզների էկոնոմիկան ամրապնդելու նպատակով։

Լենինյան ուղի սովխոզում հնդավոր պտղի յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը կազմել է 62,5 ցենտներ, պլանով նախատեսված 35 ցենտների փոխարեն, կորիզավորինը՝ 164, 75,8 ցենտների փոխարեն։ Բերքատվության պլանը գերակատարելու շնորհիվ պլանից ավելի է արտադրվել 5672 և իրացվել 5229 ցենտներ պտուղ։ 1968 թ. անբարենպաստ եղանակի, զանազան հիվանդությունների և բնական աղետների հետևանքով խիստ տուժեցին խաղողի այգիները, սակայն արդյունավետ միջոցառումների շնորհիվ յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 40,3 ցենտներ միջին բերք, հանրապետության սովխոզների մասշտաբով ստացված 17,8 ցենտների դիմաց։

Գերակատարվել են անասնաբուծական մթերքների արտադրության և հանձնման պլանները։ Ցուրաժային մեկ կովից ստացել են 2760 կգ կաթ, 2150 կգ-ի փոխարեն։ Գյուղատնտեսական մթերքների իրացման պլանը կատարվել է 124 տոկոսով կամ պլանից ավելի իրացվել է 193,6 հազար ռուբլու մթերք։ Այս բոլորի շնորհիվ կայունացել է սովխոզի ֆինանսական դրությունը։ Նախատեսված 278 հազար ռուբլու փոխարեն ստացել են 342 հազար ռուբլու օգուտ, օգուտի պլանը գերակատարելով 64 հազար ռուբլով։ Առ 1-ը հունվարի 1969 թ. սեփական շրջանառու միջոցների ավելցուկը հասել է 98 հազար ռուբլու։

Առավել բարձր ցուցանիշներ է ձեռք բերել հատկապես Կալինինի անվան սովխոզը (դիրեկտոր՝ Գ. Ավդալյան), որի արտադրության զարգացման գլխավոր ուղղությունն անասնապահությունն է։ 1968 թ. պլանով նախատեսված



213 հազար ռուբլու դիմաց սովխոզն ստացել է 312 հազար ռուբլու օգուտ, գերպլանային օգուտը հասել է 99 հազարի։

Ելնելով վերը շարադրվածից, անհրաժեշտ է նախապատրաստական մեծ աշխատանք կատարել սովխոզները լրիվ տնտհաշվարկի փոխադրելու համար։ Ամենից առաջ պետք է ապահովել արտադրա-ֆինանսական պլանների հաջող կատարումը և արտադրության շահութաբերության բարձրացումը։ Փորձը ցույց է տալիս, որ բարձր շահութաբեր սովխոզները լրիվ տնտհաշվարկի փոխադրելը մեծ դժվարությունների հետ կապված չէ։ Կատարված հաշվարկները հավաստում են, որ սեփական կուտակումների հաշվին ընդլայնված վերարտադրություն կարող են ապահովել և տնտեսական խթանման ֆոնդեր ստեղծել 30 և ավելի բարձր տոկոս շահութաբերություն ունեցող սովխոզները, որոնք հիմնականում հագեցված են արտադրամիջոցներով։ 1969 թ. հունվարի մեկի տվյալներով, հանրապետությունում կան ավելի քան 70 այդպիսի սովխոզ, որոնց 1970 թ. կարելի է փոխադրել լրիվ տնտհաշվարկի։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1967 թ. ապրիլի 13-ի որոշմամբ լրիվ տնտհաշվարկի կարող են փոխադրվել նաև նվազ շահութաբերություն ունեցող սովխոզները, որոնք կապիտալ ներդրումների համար պահանջվող միջոցների պակասը կարող են լրացնել երկարատև վարկով։ Պետք է նկատի ունենալ, որ լրիվ տնտհաշվարկի արմատավորմամբ վերանում են պլանավորման, գների, ֆինանսավորման և տնտեսությունների ղեկավարման գործում գոյություն ունեցող թերությունները, բարձրանում է սովխոզային արտադրության շահութաբերությունը։

Սովխոզներն աստիճանաբար լրիվ տնտհաշվարկի փոխադրելու համար կարևոր նշանակություն ունի գների հետագա կատարելագործման հարցը։ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումից հետո սահմանված գնման գները սովխոզների մի մասին հիմնականում փոխհատուցում են արտադրության ծախքերը, հնարավորություն ընձեռում արտադրության ընդլայնման համար կուտակումներ ունենալ։ Սակայն որոշ մթերքների գները հիմնավորված չեն։ Չնայած զգալիորեն բարձրացել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը, ավելացել է մթերքների իրացումը, բայց մի շարք մթերքների արտադրությունը տարիներ շարունակ վնասաբեր է։

Վերջին հինգ տարում կաթի արտադրության ծախքերը հատուցվել են միայն 75—80 տոկոսով։ Դրությունը չի փոխվել նաև կաթի գնման գնի բարձրացումով (1968 թ. հունիսի մեկից)։ Վնասաբեր է նաև բանջարեղենի արտադրությունը։ Կատարված ծախքերն այստեղ հատուցվել են լավագույն դեպքում 85—90 տոկոսով։ Խաղողագործությունը, հատկապես նոր իրացված հողերի բազայի վրա կազմակերպված սովխոզներում, չի ապահովում ընդլայնված վերարտադրությունը։ Աշխատապրոցեսների կոմպլեքս մեքենայացման բացակայության և աշխատանքները հիմնականում ձեռքով կատարելու հետևանքով, մեկ ցենտներ խաղողի ինքնարժեքը գրեթե հավասարվում է հանձնման գնին։ Սովխոզները պետությանը հանձնված մեկ տոննա խաղողի դիմաց, միջին հաշվով, ստանում են 310—322 ռուբլի։

Արտապլանային գնումների համար սահմանված խրախուսման կարգը միայն հացահատիկի վրա տարածելը, ինչպես նաև արտապլանային գնումներից ստացված միջոցների հաշվին սովխոզների բանվորներին, մասնագետներին և ղեկավար աշխատողներին խրախուսելը հիմնավորված չէ։ Անասնաբու-

ծության մեջ 15, բուսաբուծության մեջ 25 տոկոսով լրացուցիչ վարձատրություն տալու սահմանված կարգը հավասարապես չի խրախուսում տնտեսության տարբեր ճյուղերում աշխատող բանվորներին, հոսունություն է առաջ բերում նրանց մեջ և չի նպաստում հանրային արտադրության համակողմանի զարգացմանը։ Անբավարար է հիմնավորված արտապլանային արտադրանքի մինչև 20 տոկոսը բանվորներին իբրև պարգև-հավելում տալու կարգը։ Թերություններ կան նաև սովխոզների դիրեկտորներին և մասնագետներին նյութապես խրախուսելու գործում։

Մեր կարծիքով, ժամանակն է անդրադառնալ այդ հարցերին, բարձրացնել կաթի, բանջարեղենի և խաղողի գնման գները, հացահատիկի արտապլանային գնումների համար սահմանված խրախուսման կարգը տարածել նաև գյուղատնտեսական մյուս մթերքների վրա, արտապլանային արտադրանքի հիմնական գնից դուրս սովխոզների ստացած հավելումների (միջոցների) մի մասն օգտագործել բանվորներին, մասնագետներին և ղեկավար աշխատողներին լրացուցիչ խրախուսման նպատակով։

Անհրաժեշտ է սովխոզների կոմունալ-բնակարանային տնտեսությունը հանձնել տեղական սովետների գործկոմներին կամ նրա շահագործումից առաջացած վնասը դուրս գրել պետական բյուջեի հաշվին։ Բնական աղետներից ստացված վնասի այն մասը, որը չի ծածկվում ապահովագրական գումարների հաշվին, նույնպես դուրս գրել բյուջեից։ Թույլատրել գյուղատնտեսական մթերքների գնումների հաստատուն պլաններում անհրաժեշտ փոփոխություններ կատարել, որը հնարավորություն կընձեռի սովխոզային արտադրությունը կենտրոնացնելու և մասնագիտացնելու, երկրորդական—վնասաբեր ճյուղերը վերացնելու համար։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում բուսաբուծության և անասնաբուծության ասպարեզում զբաղված բանվորներին հավասարապես խրախուսելու, բանուժի հոսունությունը տնտեսության տարբեր ճյուղերի միջև կանխելու նպատակով, տարիֆային դրույքները երկու ճյուղերում էլ բարձրացնել 25 տոկոսով։ Արտապլանային արտադրանքի կամ դրա արժեքի մինչև 20 տոկոսի փոխարեն բանվորներին տալ մինչև 30 տոկոսը։ Բանվորներին տրված մթերքները հաշվել պետությանը մթերքներ հանձնելու պլանի կատարման մեջ։

Առաջարկվող միջոցառումների կատարմամբ կվերանան սովխոզները լրիվ տնտհաշվարկի փոխադրելու գործում եղած և առաջացող դժվարությունները։ Աներկբա կարելի է ասել, որ հանրապետության բոլոր սովխոզներն առաջիկա 2—3 տարվա ընթացքում կփոխադրվեն լրիվ տնտհաշվարկի, որը պայմաններ կստեղծի սովխոզների շահութաբեր գործունեության համար։

Հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային կուսակցական, սովետական կազմակերպությունները և գյուղատնտեսական օրգանները սովխոզներում եղած թերությունները, անտնտեսվարության երևույթները վերացնելու, տնտեսագիտական աշխատանքն արմատապես բարելավելու, տնտեսավարության մակարդակը բարձրացնելու և բազմաթիվ այլ կարգի դժվարություններ հաղթահարելու համար պետք է տնտեսական-կազմակերպական կոնկրետ միջոցներ ձեռնարկեն։ Անհրաժեշտ է խորամուխ լինել յուրաքանչյուր սովխոզի, նրա ստորաբաժանումների էկոնոմիկայի մեջ, գործիմացությամբ ղեկավարել տնտեսությունը, ժամանակին վերլուծել վնասով աշխատող սովխոզների և դրանց ստորաբաժանումների գործունեությու-



նը, բացահայտել եղած թերությունները, արտադրության զարգացմանը արգելակող հանգամանքները։ Արմատախիլ պետք է անել նյութական արժեքների վատնման-յուրացման ու հափշտակության դեպքերը, կանխել պակասորդները և կորուստները, վերացնել անարտադրողական ծախսերն ու գերածախսերը, ամրապնդել կարգապահությունը, բարելավել աշխատանքի կազմակերպման, նորմավորման և վարձատրության գործը, հասնել այն բանին, որպեսզի մոբիլիզացվեն տնտեսությունների ներքին ռեսուրսները, ստեղծվի խնայողության խիստ ռեժիմ, փոխհատուցվի ծախսված յուրաքանչյուր ռուբլին, ապահովվի արտադրությանը և պետությանը մթերքներ հանձնելու աճը, բարելավվի արտադրանքի որակը, իջեցվի ինքնարժեքը, կայունացվի սովխոզների ֆինանսական դրությունը և բարձրացվի արտադրության շահութաբերությունը։

Ելնելով յուրաքանչյուր սովխոզի բնական-տնտեսական պայմաններից, պետք է մշակել և կենսագործել միջոցառումներ՝ արտադրության տնտեսական տեսակետից հիմնավորված մասնագիտացման և կենտրոնացման հետագա զարգացման, տեխնոլոգիայի կատարելագործման, հիմնական միջոցների և կապիտալ ներդրումների ռացիոնալ օգտագործման, տեխնիկական հագեցվածության բարձրացման նպատակով։ Դրանով տնտեսական ամուր հիմք կստեղծվի լրիվ տնտհաշվարկի անցնելու համար։

Առանձնահատուկ ուշադրություն պետք է նվիրել հաշվապահական հաշվառման, հաշվետվությունների և արտադրական-ֆինանսական պլանների ճիշտ կազմման, նյութական ռեսուրսների և, հատկապես, հիմնական ֆոնդերի պահպանման, տնտեսությունների բոլոր ստորաբաժանումներում ներտնտեսական հաշվարկն արմատավորելուն։ Անհրաժեշտ է բարձրացնել սովխոզների դիրեկտորների, մասնագետների և հաշվային աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի հանդեպ, հասնել այն բանին, որպեսզի վերացվեն եղած թերությունները։

ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությունը և գյուղատնտեսության շրջանային արտադրական վարչությունները լրիվ տնտհաշվարկի անցած սովխոզներին անհրաժեշտ օգնություն պետք է ցույց տան նյութական խրախուսման, տնտեսական խթանման մյուս ֆոնդերի միջոցների բաշխման և օգտագործման, սովխոզների և մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների հետ տնտհաշվարկային հարաբերությունների պահպանման գործում։ Լրիվ տնտհաշվարկի անցած սովխոզներին, պետք է ապահովել նյութատեխնիկական ռեսուրսներով և համապատասխան կապիտալ ներդրումներով։

Հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային կուսակցական և սովետական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգանները, ելնելով երկրի սովխոզներն աստիճանաբար լրիվ տնտհաշվարկի փոխադրելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի համապատասխան որոշումներից, գործնական և կոնկրետ միջոցներ պետք է ձեռք առնեն սովխոզների գործունեությունն արմատապես բարելավելու, սովխոզային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու և դրանց լրիվ տնտհաշվարկի փոխադրելու համար։

Ա. Գ. ՄԱՐԴՈՅԱՆ
ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության
կոլտնտեսությունների և սովխոզների գործերի
գլխավոր վարչության պետ

# ՎԻՏԱՄԻՆՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Երևանում կառուցվում է բժշկական արդյունաբերության մինիստրության խոշոր օբյեկտներից մեկի՝ վիտամինների գործարանը։ Արդեն գործարկվել է կորպուսներից մեկը, ուր արտադրվում է ասկորբինաթթու (վիտամին C)։ Այն կոչված է ո՛չ միայն բարձրացնելու մեր սննդի բիոլոգիական նշանակությունը, այլև աշխատավորների, առաջին հերթին՝ երեխաների, քիմիական ու լեռնահանքային արդյունաբերության մեջ աշխատող բանվորների առողջության պահպանման, պրոֆիլակտիկ, բուժիչ միջոց լինելու։*

*Տեխնիկապես հագեցած արդյունաբերական այդ ձեռնարկության ծավալի մասին գաղափար կազմելու համար բավական է ասել, որ մոտակա 3—4 տարիների ընթացքում դրա համախառն արտադրանքը կկազմի 50—60 մլն ռուբլի, բանվորների թիվը կհասնի 2000—2200 հոգու։*

*Դեռևս 1880 թ. ռուս գիտնական Ն. Ի. Լունինը հայտնաբերեց, որ բնական սննդանյութերի մեջ, բացի սպիտակուցներից, ճարպերից, ածխաջրատներից և հանքային աղերից, կան նաև «անհայտ նյութեր», առանց որոնց կենդանի օրգանիզմները չեն կարող գոյություն ունենալ։ 30 տարի անց, լեհ գիտնական Կազիմիր Ֆունկին կարողացավ անջատել այդ նյութերը և ստանալ քիմիական մաքուր վիճակում։ Դրանք նա անվանեց վիտամիններ և ապացուցեց դրանց բիոլոգիական խիստ կարևոր նշանակությունը։ Այդ ժամանակից ի վեր, սկսվեց սննդանյութերից վիտամինների անջատումը և կոնցենտրատների տեսքով՝ բուժպրակտիկայում օգտագործումն ավիտամինոզի վերացման, հետագայում նաև՝ շատ այլ հիվանդություններ բուժելու համար։*

*Բնական վիտամինային կոնցենտրատների արտադրության շրջանին հաջորդեց դրանց արդյունաբերական արտադրության յուրացման շրջանը։ Ներկայումս բոլոր ինդուստրիալ երկրներն ունեն վիտամինների արտադրության սեփական արտադրաբազա (ՍՍՀՄ, Ճապոնիա, Անգլիա, ԳՖՀ և այլն)։*

*Այս տարվանից Հայաստանը մտավ Սովետական Միության այն հանրապետությունների շարքը, որոնք յուրացրել են վիտամինների մասսայական արտադրությունը, այսինքն՝ այն արտադրանքի, որն իրավամբ հեղինակություն է նվաճել և՛ հիվանդների, և՛ բժիշկների շրջանում։ Համարձակ կարելի է ասել, որ մինչև օրս գրեթե չկա մի հիվանդություն, որի բուժման համար անհրաժեշտ չլինի ներարկել որոշ վիտամիններ կամ կիրառել դրանց կոմպլեքսը։ Փորձառու բժշկի ձեռքում վիտամինները դարձել են կենսատու միջոց՝ մարդու առողջության վերականգնման համար։ Բժիշկների կողմից վիտամինների հմուտ օգտագործումն այժմ ո՛չ միայն զգալի չափով արագացնում է վերքերի ապաքինման պրոցեսը և կրճատում հիվանդների անկողնում գամված մնալու ժամկետը, այլև բարձրացնում է օրգանիզմի դիմադրողականությունը վարակի հանդեպ։ Մեծ է վիտամինների դերը ռախիտի, թոքերի բորբոքման, սակավարյունության, սուր վարակիչ և մանկական այլ հիվանդությունների դեմ պայքարելու գործում և այլն։*

*Մինչև վիտամինների հայտնաբերումը և դրանց հսկայական չափերով արտադրելը, լինում էին մանկական ծանր հիվանդությունների դեպքեր, հատկապես ձմռան և գարնան ամիսներին, որոնք հետևանք էին սննդի օրաբաժնի մեջ վիտամինների պակասությունից առաջացած նյութերի փոխանակման խախտման (ավիտամինոզ)։ Այնպիսի հիվանդություններ, ինչպես լնդախտը*



*(օրգանիզմում C վիտամինի պակասությունը), բերի-բերին, պոլինևրիտը, նիկոտինային թթվի պակասությունը (պելագրա), մի քանի տասնյակ տարի առաջ, աշխարհի շատ երկրներում մասսայական բնույթ ունեին։*

*ՍՍՀՄ-ում վաղուց վերացել են մասսայական այն հիվանդությունները, որոնք հետևանք են ոչ-լիարժեք սննդի, ինչպես և ավիտամինոզի։ Սակայն այս դեռ չի նշանակում, որ մեր երկրի բնակչությունը վիտամինների պահանջ չունի։ Երկրագնդում տեխնիկայի զարգացմանը, ներվային հոգեկան լարված վիճակին, քիմիական արդյունաբերության արագ թափին, ինչպես նաև սննդի մեջ ռաֆինացված մթերքների տեսակարար կշռի ավելացմանը, սննդանյութերի մշակման տեխնոլոգիական նոր ձևերի ներդրմանը (թերմիկական, քիմիական և այլն) զուգընթաց, մեծանում է վիտամինների պահանջը։ Պետք է հաշվի առնել նաև այն, որ սննդամթերքը (պահելիս, տեղափոխելիս, թերմիկական և քիմիական փոխազդեցության պրոցեսում) հաճախ կորցնում է իր վիտամինային ակտիվությունը. օրինակ, մանր աղացած ալյուրից թխած ցորեն հացը։ Մասամբ կամ ամբողջովին վիտամինազրկվում են նաև ռաֆինացված սննդամթերքները, զտված բուսական յուղը, մարգարինը, շաքարը, բանջարեղենի շատ պահածոներ ու կոմպոտներ։ Վիտամինների այդ կորուստները պետք է վերականգնել վիտամիններ պարունակող այլ սննդամթերքների կամ քիմիական վիտամինների և պրեպարատների միջոցով։ Այս ամենից սովետական կառավարությունը եկավ այն հետևության, որ անհրաժեշտ է կարգավորել բնակչությանը և բանակին վիտամիններով ապահովող պրոցեսները՝ վիտամինացնել ինչպես առանձին սննդամթերքների, այնպես էլ սննդի օրաբաժինը։ Այդ միջոցառումներն իրականացվեցին հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում և հետո։*

*Այժմ լայն հեռանկարներ են բացվում վիտամինների արտադրության ընդլայնման համար, որի նպատակն է՝ բավարարել բնակչության մեծացող պահանջները։ ՍՍՀՄ-ում գիտահետազոտական վիտամինոլոգիական մասնագիտացված մի շարք ինստիտուտներում զբաղվում են օրգանիզմների վրա վիտամինների բիոլոգիական ներգործության խոր ուսումնասիրությամբ։ Դրա շնորհիվ վերջերս հնարավորություն ընձեռվեց զուգակցել վիտամիններն այլ դեղամիջոցների հետ և այդպիսով ընդլայնել դրանց օգտագործումը բժշկական պրակտիկայում։*

*Վիտամինների օգտագործման ոլորտն առավել ընդլայնվել է պրոֆիլակտիկական բժշկության մեջ։ Վիտամինները կարելի է դասել սննդի լրացուցիչ գործոնների խմբում, որոնք կոնցենտրատների ձևով, հաբերով, ամենալայն չափերով օգտագործվում են ո՛չ միայն մարդկանց վիտամինների անմիջական պահանջները բավարարելու, այլև, հատկապես, որոշակի տեխնոլոգիական մշակման ենթարկված և ռաֆինացված սննդամթերքները դրանցով հարստացնելու համար։ Այդ ասպարեզում մեծ չափերի է հասել A վիտամինի և կարոտինի օգտագործումը ճարպերի արտադրության մեջ, B-ինը և PP-ինը (նիկոտինամիդ) ալրաղացային արդյունաբերության և հացի թխման արտադրության մեջ, D-ինը՝ ձկանյուղ ստանալիս, C-ինը՝ պահածոների և կաթի արտադրության մեջ, ինչպես նաև տնային պայմաններում կերակուր պատրաստելիս, հասարակական սննդի բնագավառում։ Սակայն սննդանյութերի մեջ վիտամինների ծայրահեղ անբավարարության պատճառով, բնական սննդանյութերից ստացվող վիտամինային կոնցենտրատների արտադրության ընդ-*

լայնման միջոցով պահանջարկի չափով անհնար է վիտամիններ ստանալ (թեև բիոլոգիական առումով դրանք մեծ արժեք ունեն)։ Այդ հանգամանքն էլ հենց ստիպեց սննդի վերաբերյալ ժամանակակից գիտությանը դիմելու սինթետիկ քիմիային, որի օգնությամբ հնարավորություն ընձեռվեց ողջ աշխարհում ստեղծելու արդյունաբերության նոր ճյուղ՝ վիտամինների արտադրություն։

Վիտամիններն օգտագործվում են ո՛չ միայն առողջապահության սիստեմում, այլև գյուղատնտեսության մեջ։ Վերջերս դրանք անտիբիոտիկների, միկրոտարրերի հետ համակցված լայնորեն կիրառվում են խոզերի ու թռչունների բտման համար։ Դրա շնորհիվ զգալիորեն կրճատվում են խոզերի ու թռչունների հիվանդությունները, կերը լավ է յուրացվում, բարելավվում է ստացվող մթերքների որակը։

Երևանի վիտամինների գործարանը, բիոլոգիական առումով, կունենա վիտամինների արժեքավոր նոմենկլատուրա։ C-ն (ասկորբինային թթուն), $D_3$-ը, E-ն, հետագայում նաև $B_6$-ը (պիրիդօքսինը) և ֆոլինային թթուն այդ գործարանի արտադրանքի հիմնական տեսակները կլինեն։ Չնայած այն բանին, որ դրանցից մի քանիսի սինթեզման յուրացումը մեծ դժվարություններ է հարուցում, բայց էականն այն է, որ թվարկած վիտամիններն այսօր չափազանց անհրաժեշտ են և՛ առողջապահության, և՛ անասնաբուծության ասպարեզում։ Եվ հեռու չէ այն օրը, երբ մեր հանրապետությունը կդառնա վիտամինների արտադրության հիմնական բազաներից մեկը Սովետական Միությունում։ Վիտամինների արդյունաբերության բազայի ընդլայնման հիման վրա մեզ մոտ, անշուշտ, կամրանա աշխատավորների առողջությունը։ Մեր անասնաբուծությանը հնարավորություն կընձեռվի բարձրացնելու գլխաքանակը և ավելացնելու անասունների քաշը։

Վիտամինների արտադրությունը մեր հանրապետությունում քիմիական նուրբ տեխնոլոգիա ունեցող արդյունաբերության բոլորովին նոր, յուրահատուկ ճյուղ է։ Այստեղ անհրաժեշտ են առավել որակավորված օրգանական քիմիայի մասնագետ կադրեր, բանվորներ, ինժեներներ, արտադրամասի պետեր, լաբորատորիայի ղեկավարներ։ Այս բոլոր յուրահատկությունները, հնարավորության սահմաններում գործարանի ղեկավարությունը նկատի է ունեցել և ըստ այնմ պլանավորել իր աշխատանքը։

Ա. Բ. ԱՐՈՒԹՅՈՒՆՈՎ
Դոցենտ

## ՈՒՆԵՎՈՐ ԿՅԱՆՔԻ ՈՒՂԻՈՎ

Կոմունիստական կուսակցությունը պատասխանատու խնդիր է դրել գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առջև՝ ընթացիկ հնգամյակում զգալիորեն ավելացնել հողագործության և անասնաբուծական մթերքների արտադրությունը, արագ և կայուն տեմպեր ապահովել գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Ելնելով դրանից, սովետական կառավարությունը հսկայական միջոցներ է հատկացնում կոլտնտեսություններին ու սովխոզներին։ Մնում է, որ խելացի օգտագործվեն կոլտնտեսությունների արտադրամիջոցները և պետության հատկացումները, ապահովվի աշխատանքի գիտական կազմակերպումը։



Կոլտնտեսային հանրային արտադրության հետագա վերելքն ապահովելու գործում կոմունիստական կուսակցության հոգատարության լավագույն վկայությունն է «Կոլտնտեսության (գյուղատնտեսական արտելի) օրինակելի կանոնադրության նախագիծը», որը հրապարակվել է մամուլում՝ քննարկման համար։ Այնտեղ ընդգծված է, որ կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների հիմնական խնդիրն է՝ ամեն կերպ օգտագործել խոշոր տնտեսությունների առավելություններն ու հնարավորությունները, ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և դրանց վաճառքը պետությանը, մելիորացիայի, քիմիայի և մեքենայացման միջոցով ինտենսիվորեն վարել տնտեսությունը, բարելավել կոլտնտեսականների կուլտկենցաղային պայմանները։

Երբ ընթերցում ես գյուղատնտեսական արտելի նոր կանոնադրության նախագիծը, գալիս ես այն համոզմունքին, որ նրանում պարզ ու մատչելի ձևով շարադրված են կոլտնտեսությունների աշխատանքի փորձը, նրանց ապագա առաջընթացի կանոնն ու կոլտնտեսականների նվիրական զգացմունքը։

Ես կամենում եմ անդրադառնալ կոլտնտեսային հանրային արտադրության հնարավորություններն արդյունավետ օգտագործելու հարցին, որովհետև այն հանդիսանում է գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու հիմքերի հիմքը։

Արթիկի շրջանի Սպանդարյանի կոլտնտեսության ներկա վիճակը ցույց է տալիս, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար պետք է ռացիոնալ վարել արտադրությունը, զարգացնել տնտեսության այն ճյուղերը, որոնց համար բնատնտեսական նպաստավոր պայմաններ կան։

Մեր կոլտնտեսությունն իր հողատարածությունով և անասունների գլխաքանակով, Արթիկի շրջանում միջինն է համարվում։ Ունենք մոտ 900 հեկտար գյուղատնտեսական օգտակար տարածություն, որից մոտ 600 հեկտար վարելահող։ Այս թիվը ցույց է տալիս, որ վարելահողից այնքան հարուստ չենք։ Ուրեմն, հարկավոր է խելացի պլանավորել այդ հողերի ինտենսիվ մշակումը։

Ոչ վաղ անցյալում մեր կոլտնտեսությունում ցածր էր գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Հասկավոր կուլտուրաների ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից միջինը ստանում էինք 7—8, շաքարի ճակնդեղի պլանտացիաներից՝ 120 ցենտներ բերք։ Այս վիճակից դուրս գալու միակ ելքը երկրագործության կուլտուրայի բարձրացումն էր։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հիմքը նյութատեխնիկական բազայի ամրապնդումն է։ Մենք որոշ գործ կատարեցինք այդ ուղղությամբ։ Ունենք 6 տրակտոր (որոնցից չորսը թրթուրավոր), հացահատիկային երկու կոմբայն, գյուղատնտեսական բազմատեսակ գործիքներ։ Էլեկտրիֆիկացվել են արտադրության մի շարք պրոցեսներ, կառուցվել անասնապահական ժամանակակից շինություններ, կովանոցներում դրված են ավտոմատ խմոցներ։ Մոտ 150 հեկտար ցանքատարածություններում անցկացված է ոռոգման ցանց, յայլաղում կառուցվել է 150 տոննա տարողությամբ ջրամբար, բույսերին տրվում է սնուցում։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու գործում մեծ դեր է խաղում ցանքաշրջանառությունը, որն արդեն իրագործ-

վում է մեզ մոտ։ Վերջին երկու տարում հեկտարից միջինը ստացել ենք հացահատիկ՝ 21—23, շաքարի ճակնդեղ՝ 250 ցենտներ։ Կոլտնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկը անասնապահությունն է. այդ պատճառով տեղական ցածր մթերատու անասունները փոխարինվեցին ցեղական նոր, բարձր մթերատու անասուններով։ 1968 թ. գնեցինք 120 գլուխ ցեղական երինջ։ Դրանցից յուրաքանչյուրը տալիս է 1700—2000 կգ կաթ (իսկ մոտ անցյալում մեկ կովի կաթնատվությունը 1000—1200 կգ էր)։ 100 մայր ոչխարից ստացվել և պահպանվում է 92 գառ (85-ի դիմաց)։ Մեկ ոչխարից ստացվել է 3—5 կգ բուրդ, 2,6-ի փոխարեն։ Մեկ տարի հետո հնարավոր է տնտեսությունը դարձնել տոհմաբուծական։

Կերի կայուն բազա ստեղծելու, անասունների ցեղը և խնամքը բարելավելու շնորհիվ նկատելիորեն ավելացել է անասնապահական մթերքների արտադրությունը, իջել արտադրանքի մեկ միավորի ինքնարժեքը։ 1966 թ. արտադրվել է 43 տոննա միս, 480 ցենտներ կաթ, 33 ցենտներ բուրդ։ 1968 թ. միս՝ 63 տոննա, կաթ՝ 808, բուրդ՝ 60 ցենտներ։ Իջել է հատկապես մսի ու բրդի ինքնարժեքը։ Յուրաքանչյուր ցենտներ մսի արտադրության համար ծախսված է 78, բրդի՝ 295 ռուբլի։

Կոլտնտեսությունն անցյալ տարի կատարեց և գերակատարեց ինչպես գյուղատնտեսական մթերքների արտադրության, այնպես էլ պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքի առաջադրանքները։ Անասնաբուծական մթերքների արտադրությունը հաջող է նաև այս տարի. առաջին եռամսյակում կաթի արտադրության առաջադրանքը կատարվել է 150, մսինը՝ 180 տոկոսով։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու շնորհիվ, տարեցտարի ավելանում է կոլտնտեսության եկամուտը։ Այսպես, 1966 թ. կոլտնտեսության համախառն արտադրանքը հաշվվում էր 149, 1968-ին՝ 181 հազար ռուբլի։ Կոլտնտեսության եկամտի աճը հնարավորություն ընձեռեց ծավալել արտադրական հանրային օբյեկտների և կուլտուր-կենցաղային հիմնարկությունների շինարարությունը։

1968 թ. մարտին կոլտնտեսության ընդհանուր ժողովը որոշում ընդունեց և կոչ արեց շրջանի բոլոր տնտեսություններին՝ գյուղում կուլտուր-կենցաղային և արտադրական այլ օբյեկտների շինարարությանը արագ թափ հաղորդելու մասին. այն տպագրվեց շրջանային «Լեռնագործ» թերթում և ՀԿԿ շրջկոմի բյուրոյի որոշմամբ քննարկվեց շրջանի բոլոր տնտեսություններում։ Կազմակերպվեց շինարարական 7 օղակ, ուր աշխատում էին մոտ 100 հոգի։ Մեկ տարվա ընթացքում շահագործման հանձնվեց 17 նոր օբյեկտ, այսինքն՝ այնքան, որքան չէր կառուցվել վերջին 30 տարիների ընթացքում։ Շինարարության ծավալման շնորհիվ մեկընդմիշտ վերացավ բանվորական ուժի հոսունությունը։

Շահագործման հանձնվեց բաղնիքը (7 համարով), ակումբը (300 տեղով), կոլտնտեսության երկհարկանի վարչական շենքը (14 սենյակներով). առաջին հարկում են տեղավորված անասնաբուժարանը, սանկայանը և հյուրանոցը։ Կառուցվեց ու շահագործման հանձնվեց վարսավիրանոցը, կոշիկի վերանորոգման կետը, կենտրոնական փողոցում վեր խոյացավ Հայրենական պատերազմում զոհվածների հուշարձան-աղբյուրը, գյուղի կենտրոնում բացվեց կոլտնտեսության շուկան, նոր կենտրոնական փողոցը՝ երկկողմանի մայթերով։



Նախկին գրասենյակը վերանորոգվեց և տրամադրվեց մանկապարտեզին. շահագործման հանձնվեց ոչխարանոցը (700 գլխի համար), գառնանոցը (300 գլխի համար)։ Ավարտվեց 1000 հավի և 13 տեղանոց գարաժի քարային աշխատանքները, որոնք ընթացիկ տարում կհանձնվեն շահագործման։ Ամառանոցում շահագործման հանձնվեց բնակելի շենքը։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, հանրային եկամտի աճի շնորհիվ նկատելիորեն բարձրացել է կոլտնտեսականների եկամուտը։ Մեր գյուղում գրեթե բոլոր կոլտնտեսականները կառուցել են հարմարավետ բնակարաններ։ Նրանց տնամերձերում գարուն փոխարինում է խնձորենին ու տանձենին։ Գյուղն ապահովված է խմելու ջրով։

Կոլտնտեսության կանոնադրության նախագծում ասված է, որ գյուղատնտեսական արտելն իրագործում է կոլտնտեսության բնակավայրերի և կոլտնտեսականների տների բարեկարգում, էլեկտրիֆիկացում և ռադիոֆիկացում, կոլտնտեսությունը սահմանված կարգով կոլտնտեսականներին օգնություն է ցույց տալիս բնակելի տների կառուցման և նորոգման համար։ Լիովին համամիտ լինելով այս դրույթին, անհրաժեշտ է ավելի շատ զբաղվել գյուղերի բարեկարգմամբ։ Մտնում ես գյուղ, հիանում նորակառույց ակումբով, դպրոցով, հիվանդանոցով, բնակարաններով, բայց փողոցներն անբարեկարգ են։ Այժմ կոլտնտեսությունները հնարավորություն ունեն բարեկարգելու բնակավայրերի փողոցները իրենց ուժերով կամ կապալառուների միջոցով, նույնիսկ շաբաթօրյակներով։ Ելնելով մեր կոլտնտեսության փորձից, ես եկել եմ այն համոզմունքին, որ ոչ բոլոր դեպքերում է, որ կապալառուները բարեխղճորեն ու ժամանակին են կատարում իրենց ստանձնած օբյեկտների կառուցումը։ Բերեմ մի օրինակ։ Անցյալ տարի մենք մեր գյուղում բաղնիք կառուցեցինք մեր կոլտնտեսության միջոցներով և ուժերով։ Դրա շինարարության վրա ծախսեցինք ընդամենը 8500 ռուբլի։ Նույն տիպի, նույնքան տարողությամբ բաղնիք կառուցեց մեր հարևան կոլտնտեսությունը՝ կապալառուի միջոցով, որը ծախսեց 21 հազար ռուբլի միայն պատերն ու տանիքը կառուցելու համար։ Այդ տարբերությունը հիմնականում հետևանք է այն բանի, որ մեզ մոտ նորմալ ընթացավ բանվորական ուժի ծախսումը, խիստ խնայողաբար կատարվեց շինանյութերի ծախսումը։ Այս դրույթից ելնելով, ես գտնում եմ, որ այն կոլտնտեսությունները, որոնք բանվորական ուժի ավելցուկ ունեն, պարտավոր են զբաղվելու բնակավայրի բարեկարգման հարցով։ Դրա շնորհիվ ավելի արագ թափով առաջ կմղվի գործը։

Մեր կոլտնտեսության կուսկազմակերպությունը, բոլոր կոլտնտեսականները ՍՄԿԿ Կենտկոմի անցյալ տարվա հոկտեմբերյան պլենումի որոշումներն իրագործելու համար պարտավորվել են արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորել Վ. Ի. Լենինի ծննդյան 100 և Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակը։ Այդ նպատակով գարնանացան բոլոր կուլտուրաների ցանքը կատարվել է ժամանակին։ Այժմ մեր ուշադրությունը կենտրոնացված է տեխնիկական կուլտուրաների մշակումը լավ կազմակերպելու և հասկավորների բերքահավաքը հաջող նախապատրաստելու հարցերին։ Պտղատու այգիների տարածությունը հասցնելու ենք 15 հեկտարի։ Պայքարում ենք ժամկետին կատարել պետական բոլոր պարտավորությունները։ Նախատեսված է ջեռուցման սիստեմով տաքացնել ակումբը, գրասենյակն ու

*մանկապարտեզը, լիովին ավարտել գյուղի կենտրոնական փողոցի մայթերի կառուցումը։*

*Նկատի ունենալով, որ մեր գյուղն ու կոլտնտեսությունը կոչվում է Վ. Ի. Լենինի զինակից, բոցաշունչ տրիբուն Սուրեն Սպանդարյանի անունով, նրա հիշատակն հավերժացնելու համար հրապարակում կկանգնեցնենք նրա կիսանդրին։*

*Ս. Լ. ԽԱՉԱՏՐՅԱՆ*
Արթիկի շրջանի Ս. Սպանդարյանի անվան
կոլտնտեսության վարչության նախագահ

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԻ ԲԱՑԱՀԱՅՏՄԱՆ ՇՆՈՐՀԻՎ

*Սովետական իշխանության տարիներին մեր երկրում ստեղծվել է խոշոր սոցիալիստական արդյունաբերություն, որը կարող է լուծել ամենաբարդ գիտատեխնիկական պրոբլեմներ։ Մեծ և արգասալի ուղի է անցել այդ տարիներին նաև երկրի գունավոր մետալուրգիան։ Կառուցվել և շահագործման են հանձնվել ավելի քան 300 խոշոր ձեռնարկություն։*

*Ներկայումս երկրի գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում արտադրվում են հինգ տասնյակից ավելի տարրեր, որոնք օգտագործվում են ժողովրդական տնտեսության բազմաթիվ ճյուղերում։ Գունավոր մետալուրգիան արագ զարգանում է նաև մեր հանրապետությունում։*

*Սովետական կարգերի հաստատման 48 տարիների ընթացքում խոր և արմատական փոփոխություններ են կատարվել Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատում։ Հայաստանի Հեղկոմի դեկրետով 1921 թ. հունվարի 11-ին ազգայնացվեցին հանրապետության լեռնահանքային և մետալուրգիական ձեռնարկությունները։ 1925 թ. Ալավերդու պղնձաձուլարանը թողարկեց պղնձի առաջին ձուլվածքը։ Գործում էին երկու վառերժակետային վառարան և 15 տոննանոց մի քանի փոքր կոնվերտորներ։ 1933—36 թթ. շահագործման հանձնվեց արտացոլիչ վառարանը և վերակառուցվեցին կոնվերտորները՝ օժանդակ արտադրամասերով և սարքավորումներով։ 1948—50 թթ. կոմբինատը վերակառուցվեց և ընդարձակվեց։ Ստեղծվեց պղնձի ռաֆինացման (մաքրման) նոր արտադրամաս, որի շնորհիվ մեր հանրապետության արագ զարգացող էլեկտրատեխնիկական արդյունաբերությունն ու սարքաշինությունն ապահովվեց պղնձով։ Կոմբինատի տեխնոլոգիական շղթայի մեջ մտան նաև առանձին գործող ծծմբաթթվի և պղնձարջասպի արտադրամասերը։*

*Սակայն երկրի ժողովրդական տնտեսության աճող կարիքները պահանջում էին ավելի շատ պղինձ, ծծմբաթթու և պղնձարջասպ։ 1959 թ. հանրապետության կառավարության որոշմամբ սկսվեց Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի երրորդ արմատական վերակառուցումը։*

*ՍՄԿԿ XXIII համագումարի՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվներում ասված է. առավել արագությամբ զարգացնել պղնձի, լեգիրացված թեթև և հազվագյուտ մետաղների արտադրությունը, ըստ որում պղինձը՝ 1,6—1,7 անգամ։ Այդ առաջա-*



*դրանքն իրագործելու համար անհրաժեշտ է արտադրությունում արագորեն արմատավորել գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումները, կոմպլեքսային մեքենայացման ներդրել արտադրության ճյուղերը, որոնք աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմնական նախապայմանն են։*

*Կուսակցության XXIII համագումարի նշած ուղիով է ընթանում Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի կոլեկտիվը։ Ընթացիկ տարում լիովին կավարտվի արտադրամասերի ու տեղամասերի վերակառուցումը։ Կոմբինատի ձեռնարկությունները հագեցվում են նորագույն սարքերով, որի շնորհիվ նրա կարողությունը, հնգամյակի առաջին տարվա համեմատությամբ, կավելանա 4,5 անգամ։*

*Այժմ պղնձաձուլական արտադրամասի հզորությունը, 1959 թ. համեմատությամբ, աճել է ավելի քան երկու անգամ։ Իսկ առաջիկայում (ընթացիկ տարվա երկրորդ կեսում էլեկտրաձուլման վառարանը շահագործման հանձնելուց հետո) սև պղնձի արտադրական հզորությունը կաճի ավելի քան չորս անգամ։ 1959 թ. պղնձարջասպագործներն աշխատում են նոր, առաջավոր տեխնոլոգիայով։ Ներկայումս տեխնոլոգիական պրոցեսը տարվում է հատիկավոր պղնձի մշակման հիման վրա, որի շնորհիվ վնասակար գազերի անջատումը լիովին վերացվել է, իսկ արտադրական հզորություններն աճել են համարյա 2,5 անգամ։ Նրանց արտադրանքն այժմ սպառվում է ո՛չ միայն մեր Միությունում, այլ ուղարկվում է արտասահմանյան մի շարք երկրներ։ Մեծ գործ է կատարվել ծծմբաթթվի արտադրության կազմակերպման տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ասպարեզում։ 1964 թ. ապրիլին գործարկվեց կոնտակտային եղանակով ծծմբաթթվի արտադրության առաջին, իսկ անցյալ տարի՝ երկրորդ հերթը։ Արտադրության կոմպլեքսի լրիվ գործարկումից հետո արտադրամասի հզորությունը, նախկին աշտարակային եղանակի համեմատությամբ, կաճի մոտ 6 անգամ։*

*Անցած յոթնամյակի տարիներին լրիվ վերակառուցվել են նաև օժանդակ արտադրամասերը։ Արդեն մի քանի տարի է, ինչ գործում են նոր մեխանիկական արտադրամասը, ջերմակայանը, կոմպրեսորային, ջրապոմպային կայանները, էլեկտրավերանորոգման արտադրամասը և այլ օբյեկտներ։ Բարելավվում են նաև կոմբինատի տեխնիկատնտեսական ցուցանիշները, բարձրանում աշխատանքի արտադրողականությունը, իջնում արտադրանքի ինքնարժեքը։ 1968 թ. աշխատանքի արտադրողականությունը, 1959 թ. համեմատությամբ, աճել է ավելի քան երկու անգամ։*

*Արտադրության արդյունավետության բարձրացման համար,— ասում է ընկ. Ա. Կոսիգինը,— հսկայական նշանակություն ունի հիմնական ֆոնդերի, հումքի, վառելիքի, նյութերի, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, արտադրանքի մեկ միավորի արտադրության բոլոր ծախսերի կրճատումը, որոնք շահութաբերության հիմքն են։*

*Այս սկզբունքով էլ գործել է մեր կոմբինատը և դարձել բարձր շահութաբեր արտադրական միավոր։ Տարեցտարի ավելանում են պետությանը տրվող օգուտները։ Արտադրանքի ինքնարժեքի իջեցումից ստացած օգուտներն արդեն ծածկել են կոմբինատի վերակառուցման վրա կատարված ծախսերի ավելի քան 70 տոկոսը։ Կոմբինատը 1968 թ. պատրաստի արտադրանքի իրացման պլանը կատարեց 100,3 տոկոսով։ Փաստացի օգուտները, 1967 թ. նկատմամբ, աճեցին 10, իսկ տարվա պլանը կատարվեց 101,1 տոկոսով։ Պլանավորված*

1 ռուբլու արտադրանքից տնտեսվել է 1,99 կ.։ Այսպես, ընթացիկ տարվա 4 ամսվա սև պղնձի արտադրանքը, անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, աճեց 24,7, ռաֆինացված պղնձինը՝ 24,2, ծծմբաթթվինը՝ 31,4, պղնձարջասպինը՝ 20,7 տոկոսով։ Այդ շրջանում 21,2 տոկոսով աճեց կոմբինատի ապրանքային արտադրանքը, որի շնորհիվ իրացվեց 16,8 տոկոսով ավելի արտադրանք։ Այդ նույն ժամանակաշրջանում կոլեկտիվի անդամների ինտենսիվ աշխատանքի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունն աճել է 18,3 տոկոսով, համապատասխանաբար բարձրացել է նաև կոմբինատի շահութաբերությունը։

Կոմբինատի բանվորները, ծառայողները և ինժեներա-տեխնիկական աշխատողները վերջերս տնտեսական ակտիվի ժողովում 1969 թ. համար նոր սոցիալիստական պարտավորություններ են վերցրել։ Հնգամյակի չորրորդ տարվա արտադրանքի իրացման պլանը որոշված է կատարել ժամկետից 3 օր շուտ։ Նյութական և դրամական միջոցների խնայողության ռեժիմի, ինչպես նաև միջարտադրամասային տնտհաշվարկի ամրապնդման միջոցով 1969 թ. արտապլանային ինքնարժեքը պետք է իջնի 500 հազար ռուբլով, իսկ շահութաբերությունը, նախորդ տարվա համեմատությամբ, բարձրանա 5 տոկոսով։ Գյուտարարական և ռացիոնալիզատորական առաջարկությունների կիրառմամբ տնտեսել 100 հազար ռուբլի (պայմանական)։

Մեր հանրապետության հնագույն մետալուրգիական ձեռնարկությունը՝ Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը դաստիարակել և կոփել է շատ մետալուրգներ։ Անոդային վառարանի լավագույն ավագ ձուլող է Մ. Շախկուլյանը, որն իր բարեխիղճ աշխատանքով և գիտելիքներով մեծ հարգանք է վայելում կոլեկտիվում։ Տեխնոլոգիական պրոցեսների ճիշտ վարման շնորհիվ Շախկուլյանի հերթափոխությունը զգալի հաջողությունների է հասել։ Եթե մյուս հերթափոխություններում պղնձի օքսիդացման վրա ծախսվում է 3 ժամից ավելի, ապա նրա հերթափոխությունում այդ պրոցեսը կատարվում է 2 ժամում։ Սովետական կառավարությունը բարձր գնահատելով Շախկուլյանի աշխատանքը, նրան պարգևատրել է Աշխատանքային արիության համար մեդալով։ Աչքի են ընկնում նաև ֆորմավոր Ս. Ռեստևանյանը, ավագ ձուլող Ջ. Հակոբյանը, փականագործ Շ. Աբելյանը, ավագ վառարանավար Հ. Պետրոսյանը, վառարանավար Ս. Ազատյանը, էլեկտրոլիզի հերթապահ Մ. Խաչատրյանը, ավագ ձուլող, Սովետական Միության Գերագույն սովետի դեպուտատ Հ. Աբելյանը, ձուլող Ե. Եղյանը, կռունկավար Ռ. Էվոյանը, արտացոլիչ վառարանի ավագ ձուլող, սոցիալիստական աշխատանքի հերոս Ա. Ղազարյանը և շատ ուրիշներ։

1969 թ. սկզբից Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատն անցավ պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին։ Այս խոշոր միջոցառմանը պատրաստվում էինք երկար ժամանակ։ Մշակել ենք բանվորների և ծառայողների պարգևատրման նոր ձևեր, արտադրամասերում տնտհաշվարկի ամրապնդման, տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարձրացման, անարտադրողական ծախսերի մաքսիմալ կրճատման միջոցառումներ և այլն։ Այս բոլորի շնորհիվ կոմբինատը հնարավորություն ունի միայն ինքնարժեքի իջեցումից 400 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք տալ։ Այսպիսով, 1969 թ. մոտ 1,5 անգամ ավելի շահույթ կստացվի, քան նախորդ տարում։

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմը հնարավորություն



կընձեռի բարելավել կոմբինատի աշխատավորների նյութական, կուլտուր-կենցաղային պայմանները, մեքենայացնել, ավտոմատացնել և զարգացնել արտադրությունը. բանվորներին լրացուցիչ հավելյալ վարձատրություն է նախատեսվում ավելի քան 200 հազար ռուբլի։ Ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների պարգևատրության գումարը, 1968 թ. համեմատությամբ, կավելանա 1,5 անգամ։ Կադրերի ամրապնդման համար ստեղծվում է նոր հնարավորություն։ Տարեվերջում բանվորներն ըստ իրենց աշխատանքի ստաժի և որակի կոմբինատի աշխատանքի արդյունքի համար լրացուցիչ վարձատրություն կստանան։ Բացի այս, նյութական խրախուսման ֆոնդի մի մասը միանվագ օգտագործվում է բանվորների և ծառայողների բարեկեցության բարելավման համար։ Եթե 1968 թ. կուլտ-կենցաղային միջոցառումներին հատկացվում էր 58 հազար ռուբլի, ապա 1969 թ. այն կհասնի մոտ 110 հազարի։

Արտադրական հզորության հետագա զարգացման համար հատկացվող գումարներն անցած տարիներին մեծ չէին։ 1968 թ. այդ նպատակների համար հատկացվել էր ընդամենը 35 հազար ռուբլի, բացի կապիտալ շինարարության կենտրոնացված ներդրումներից։ Մինչդեռ 1969 թ. այս նպատակների համար պլանավորված է հատկացնել ավելի քան 540 հազար ռուբլի։

Զգալի աշխատանք է կատարված նաև բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ասպարեզում։ Կոմբինատն ունի իր կուլտուրայի պալատը, ստադիոնը, պիոներական ճամբարը՝ Ուզունլարի գեղեցիկ և առողջարար բնության գրկում, որտեղ ամեն տարի իրենց հանգիստն են անցկացնում մոտ 600 երեխա, իսկ շինարարական աշխատանքներն ավարտելուց հետո այդ թիվը կկրկնապատկվի։ Ընթացիկ տարում շահագործման կհանձնվի (ժամանակակից բոլոր հարմարություններով) սանիտարական տիպի պրոֆիլակտորիան։

Վերակառուցվում, ընդարձակվում և գեղեցկանում է նաև մետալուրգների քաղաքը. կառուցվում են բազմաթիվ բնակելի շենքեր, կուլտուրայի, առևտրի և առողջապահության նորանոր օբյեկտներ։ Սանահինի սարահարթի բանավանի նորակառույց շենքերում այժմ ապրում է ավելի քան 300 ընտանիք, իսկ շինարարության ամբողջ կոմպլեքսն ավարտելուց հետո այնտեղ բնակություն կհաստատեն նույնքան բնակիչներ, որքան եղել են Ալավերդի քաղաքում 1958 թ.։

Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատին կից գործում է հայկական հանրապետության լեռնամետալուրգիական գիտահետազոտական ինստիտուտի բաժինը, որը մեծ աշխատանք է տանում տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և առաջավոր եղանակների ներդրման ուղղությամբ։

Մեծ են մեր կոմբինատի հեռանկարներն առաջիկայում։ Մոտակա տարիներին կավարտվի կոմբինատի վերակառուցումը և այն կդառնա երկրի գունավոր մետալուրգիայի խոշոր և ունիկալ տեխնոլոգիա ունեցող ձեռնարկություններից մեկը։ Շարք կմտնեն նոր օբյեկտներ, ինչպիսիք են՝ էլեկտրաձուլման վառարանը, ծծմբաթթվի բոլոր հերթերն իրենց բաժանմունքներով, կենտրոնական լաբորատորիան, այրման արտադրամասի կենցաղային նոր կորպուսը և այլն։ Կավարտվի էլեկտրալիզի արտադրամասի առաջին կորպուսի վերակառուցումը, կշահագործվեն շլակի ավազանը, օժանդակ արտադրամասերի տնտեսությունը և մի շարք այլ օբյեկտներ։

Կոմբինատն արմատապես կբարեկարգվի և կգեղեցկանա, բարեկեցիկ և կուլտուրական աշխատանքի համար կստեղծվեն բոլոր պայմանները։ Տարեցտարի կավելանա բնակարանային շինարարության տարածությունը, կբարեկարգվեն կենցաղային օբյեկտները։ Ընթացիկ տարում կոմբինատը կստանա նորակառույց երկու բնակելի շենք. սկսված է Սանահին բանավանի հետ կապող ճոպանուղու շինարարությունը։

Կոմբինատի կոլեկտիվը իր ողջ ջանքերը գործադրում է արժանավայել դիմավորելու Վ. Ի. Լենինի ծննդյան 100 և կոմբինատի հիմնադրման 200-ամյակը։

Այդ կապակցությամբ կոմբինատի բոլոր արտադրամասերում գնալով լայն ծավալ է ստանում գործարար սոցիալիստական մրցությունը։ Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները կոլեկտիվի բոլոր անդամներին մոբիլիզացնում են անթերի կատարելու սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, ամեն կերպ բարձրացնելու արտադրանքի որակը, իջեցնելու նրա ինքնարժեքը և ավելացնելու ձեռնարկության շահույթը։

Ամենօրյա ստեղծագործական աշխատանքում խտանում են արտադրության առաջավորների շարքերը, որոնց արժեքավոր փորձի մասսայականացման ու արմատավորման շնորհիվ նորանոր հաջողությունների ենք հասնում բոլոր բնագավառներում։

Այս ամենը հաստատ երաշխիք են այն բանի, որ կոմբինատի կոլեկտիվը, բոլոր բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները պատվով կկատարեն իրենց առջև դրված խնդիրները և հարազատ Հայրենիքին կտան ավելի շատ ու ավելի որակյալ արտադրանք։

Մ. Ա. ԾԱՏՈՒՐՅԱՆ
Ալավերդու պղնձաքիմիական
կոմբինատի դիրեկտոր

## ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ

# ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԿՅԱՆՔՆ ՈՒ ՆՈՐ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ

Խոսելով կոլտնտեսային օրինակելի կանոնադրության նախագծի մասին, անհրաժեշտ ենք համարում խուսափել հին և նոր կանոնադրությունները միմյանց հետ համադրելուց, որովհետև ինչպես տեսական, այնպես էլ գործնական առումով կարևորը ո՛չ թե այն է, թե որքանով է նոր նախագիծը կատարելագործված գործող կանոնադրության համեմատությամբ, այլ այն, թե որքանով է այն համապատասխանում այժմյան կոլտնտեսային իրականությանը, այլ կերպ ասած, թե որքանով այն կնպաստի կոլտնտեսային սիստեմի հետագա վարգացմանը։

Կոլտնտեսությունների հետագա տընտեսական վարգացման, հանրային արտադրության մակարդակի բարձրացման համար, մեր կարծիքով, անհրաժեշտ է, ամենից առաջ, լուծել հետևյալ խնդիրները. բարելավել կոլտնտեսությունների նյութատեխնիկական մատակարարումը, կոլտնտեսություններն ամրապնդել կազմակերպորեն, տնտեսություններն ապահովելով տեսական անհրաժեշտ գիտելիքներ ունեցող գործիմաց կադրերով, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը հանրային արտադրության բոլոր օղակներում, կանոնավորել և կատարելագործել վարձատրության գոյություն ունեցող կարգը, նկատի ունենալով, որ առ այսօր կոլտնտեսային կյանքի ամենակնճռոտ հարցը թերևս հանդիսանում է աշխատանքի վարձատրության գիտականորեն մշակված սիստեմի բացակայությունը, վերջնականապես ճշտել, թե գոյություն ունեցող կոլտնտեսային դեմոկրատիան իր արդիական կիրառմամբ որքանով է նըպաստում կամ նպաստո՞ւմ է, արդյոք, հանրային արտադրության վարգացմանը, տնտեսապես հիմնավորել ու բազմակողմանիորեն կատարելագործել հանրային տնտեսությունների արտադրական գործունեության ռեգլամենտացիան վերադաս մարմինների կողմից, արմատապես լուծել կոլտնտեսականների եկամտի աղբյուրների հարցը, նկատի ունենալով, որ կոլտընտեսականի տնամերձ տնտեսությունը և հանրային արտադրությունը ո՛չ թե գտնվում են հարմոնիկ միասնության մեջ, այլ դրանք իրարամերժ երևույթներ են, որ դրանք միմյանց հարմարեցնելու, համապատասխանեցնելու բոլոր ջանքերն ապարդյուն են անցել, որովհետև իրենց տնտեսական հիմքով ու արտադրության բնույթով և արդյունքը տնօրինելու առումով կոլտընտեսականի տնամերձ տնտեսությունն ու կոլտնտեսային արտադրությունը ո՛չ թե լրացնում են միմյանց, ինչպես ենթադրվում է երբեմն, այլ բացասում են փոխադարձաբար ու բացասաբար անդրադառնում հանրային արտադրության նկատմամբ կոլտնտեսականի վերաբերմունքի վրա և այլն։ Ուստի, կոլտնտեսության օրինակելի կանոնադրության նոր նախագծի գնահատականը պետք է տրվի, ելնելով այն բանից, թե նրանում ինչպես են տրվում կամ տրվո՞ւմ են, արդյոք, նշած խընդիրների պատասխանները։

Մյուս կարևոր հանգամանքը, որի անտեսումը կարող է թյուրիմացությունների տեղիք տալ կանոնադրության նախագծի գնահատման հարցում, այն է, թե կանոնադրությունը որպես կանոնների մի ընդհանրություն, որպես յուրօրինակ օրենսգիրք, վերջապես, որպես օրենք ինչով և ինչպես է երաշխավորվում: Երբ խոսքը վերաբերում է օրենքին ընդհանրապես կամ նրա այս կամ այն դրույթին, ապա պետք է նկատի ունենալ, որ յուրաքանչյուր կոնկրետ դեպքում առաջնայինը ո՛չ թե օրենքի ձևակերպումն է, այլ նրա իրականացման երաշխիքը:

Ամեն մի օրենք կորցնում է իր ուժը, կամ մնում է որպես սոսկ ձևակերպում, եթե այն չի կիրառվում: Հետևապես ամեն մի օրենքի հիմքում պետք է լինի համապատասխան երաշխիք, որովհետև օրենքի իրականացումն անվերապահորեն ենթադրում է համապատասխան հարկադրանք: Վերջինիս բացակայությունը, կամ ավելի ճիշտ՝ չգործադրումը հանգեցնում է օրենքի ինքնամահացմանը: Այսպիսով, եթե կոլտնտեսային օրինակելի կանոնադրության մեջ նշվում է, որ կոլտընտեսականն իրավունք ունի պահելու մեկ կով, իսկ նա պահում է երկուսը, երեքը, իսկ երբեմն նույնիսկ չորսից ավելի, նշանակում է նման կանոնադրությունն ամբողջապես կորցրել է իր ուժը՝ անհրաժեշտ ներգործման երաշխիքի բացակայության հետևանքով:

Կոլտնտեսության օրինակելի կանոնադրության նախագծի ներածական մասում նշված է. կոլտնտեսությունը, որպես սոցիալիստական տնտեսության հանրային ձև, համապատասխանում է գյուղի արտադրաուժերի հետագա զարգացման խնդիրներին, ապահովում է բուն կոլտնտեսային մասսաների կողմից արտադրության կառավարումը կոլտնտեսային դեմոկրատիայի հիման վրա, թույլ է տալիս ճիշտ կուգորդել կոլտնտեսականների անձնական շահերը հանրային, համաժողովրդական շահերի հետ: Կոլտնտեսությունը կոմունիզմի դպրոց է գյուղացիության համար: Նման բնորոշումը, ինչ խոսք, ճիշտ է ընդհանրապես, սակայն այն չի տալիս կոլտնտեսության սպառիչ բնութագիրը, այսինքն՝ չի նշվում, թե ինչով է համապատասխանում գյուղի հետագա զարգացման խնդիրներին, ինչպիսի նպատակասլացությամբ է ապահովում արտադրության կառավարումը կոլտնտեսային դեմոկրատիայի հիման վրա և ինչպես են կուգորդվում կոլտնտեսականների անձնական շահերը հանրային, համաժողովրդական շահերին:

Կոլտնտեսային կարգի շուրջ կեսդարյա պատմությունը, անկասկած, հնարավորություն է տալիս ավելի կոնկրետ ընդհանրացում կատարելու: Մեր կարծիքով, կանոնադրության ներածական մասում պետք է տրվի կոլտնտեսության, որպես սոցիալիստական տնտեսության հանրային ձևի, գիտական բնութագիրը, նշվեն տնտեսության այդ ձևի բնորոշ առանձնահատկություններն ու էական կողմերը: Թվում է, ճիշտ կլինի, եթե «Նպատակներն ու խնդիրները» բաժնում նշված կոլտնտեսությունն արտադրության հանրային միջոցների և կոլեկտիվ աշխատանքի հիման վրա համատեղ խոշոր սոցիալիստական գյուղատնտեսական արտադրություն վարելու համար կամավոր միավորված գյուղացիների կոոպերատիվ կազմակերպություն է բնորոշումը, որպես ընդհանուր բնութագիր, շեշտվի նաև ներածության մեջ, որը վերաբերում է բոլոր կոլտընտեսություններին: Ինչ վերաբերում է նախագծի առաջին կետի առաջին մասին, որտեղ պետք է նշվի կոնկրետ կոլտնտեսության անունը և այլն, միանգամայն ավելորդ է, որովհետև օրինակելի կանոնադրությունը պետք է ընդօրինակվի և ոչ թե անփոփոխ ընդունվի կոլտնտեսության կողմից:

Ի դեպ, ճիշտ կլինի որոշ փոփոխություն մտցնել նաև կանոնադրության վերնագրի մեջ՝ «Կոլտնտեսության (գյուղատնտեսական արտելի) օրինակելի կանոնադրություն»-ը դարձնելով «Կոլտնտեսությունների օրինակելի կանոնադրություն»: Վերնագրի փակագծում նշված բառերը սոսկ բացատրական նշանակություն ունեն և միանգամայն անհարկի են, որովհետև հազիվ թե գտնվի մեկ մոտ որևէ մեկը, որի համար անհասկանալի լինի կոլտնտեսություն բառը:

Նախագծի 3-րդ կետը ևս ճիշտ կլինի, մեր կարծիքով, արմատապես վերափոխել, այսինքն՝ առաջին հոդվածում նշել տվյալ կոլտնտեսության անցած ուղին, ընդգծել արտադրա-տնտեսական այն նվաճումները, որոնք ձեռք են բերվել տվյալ կոլտնտեսության կազմակերպման ժամանակաշրջանից մինչև նոր կանոնադրության ընդունման ժամանակը, իսկ 2-րդ հոդվածում շարադրել տվյալ տնտեսության հեռանկարային զարգացման հիմնական խնդիրները՝ 15—20 տարի ժամանակով: Այսպիսով, կանոնադրության «Նպատակներն ու խնդիրները» բաժինը բաղկացած կլինի երկու հոդվածից, որոնցից առաջինում կբացահայտվի կոլտնտեսության անցած ուղին, իսկ երկրորդում կշեշտվի տնտեսության հետագա զարգացման հիմնական խընդիրները, որոնք հեռանկարային պլանի դեր կկատարեն, ուղենիշ կհանդիսանան յուրաքանչյուր տնտեսության հետագա զարգացման համար:

Կանոնադրության 3-րդ կետում խոսվում է կոլտնտեսության մեջ ընդունվելու կարգի մասին: Մեր կարծիքով, այս հոդվածը պետք է ենթարկվի որոշակի վերափոխման: Անհրաժեշտ է մասնավորապես նշել, թե ովքեր են 16 տարեկանը լրանալուց հետո ընդունվում կոլտնտեսության շարքերը՝ տվյալ կոլտնտեսականների երեխանե՞րը, թե՞ այլոք: Եթե խոսքը վերաբերում է տըվյալ տնտեսության անդամների երեխաներին, ապա դա միանգամայն ավելորդ է, որովհետև կոլտնտեսությունը ո՛չ թե ինչ-որ հասարակական կազմակերպություն է, այլ յուրատեսակ արտադրա-տնտեսական համայնք, որի անդամները որոշակի պարտավորություններ ունեն միմյանց նկատմամբ, ապրում են տարիների ընթացքում ձևավորված սոցիալ-տնտեսական հարաբերությունների պայմաններում և նրանց փոխադարձ հարաբերությունների հիմքում, ավելի քան այլուր, ընկած է «մեկը բոլորի, բոլորը մեկի համար» սկզբունքը: Հետևապես, ոչ մի անհրաժեշտություն չկա կոլտնտեսականի երեխային ընդունել կոլտնտեսության մեջ. նա կոլտնտեսության անդամ է իր ծննդյան օրից, որովհետև ծնվել է համայնքի ներսում, տվյալ համայնքի անդամի ընտանիքում:

Ուրեմն, կոլտնտեսականների երեխաներին կոլտնտեսության մեջ ընդունելու մասին խոսք չպետք է լինի: Ընդհակառակը, պետք է միայն նշել, թե ովքեր չեն համարվում կոլտնտեսության անդամ, այլ կերպ ասած, անհրաժեշտ է շեշտել, որ կոլտնտեսության անդամ չեն համարվում համայնքի այն անդամները, ովքեր 16 տարեկան դառնալուց հետո դիմել են կոլտնտեսությունից դուրս գալու համար և ազատվել կոլտնտեսականների ընդհանուր ժողովի որոշմամբ: Այլապես հազիվ թե կոլտնտեսականների երեխաները դիմումներ ներկայացնեն կոլտնտեսություն ընդունվելու մասին: Ինչ վերաբերում է նախագծի 3-րդ կետին, ապա պետք է նշել, որ այն վերաբերում է այլ անձանց, այսինքն՝ նրանց, ովքեր տվյալ կոլտնտեսության, համայնքի անդամներ չեն:

Կանոնադրության նախագծի 14-րդ կետում նշվում է, որ կոլտնտեսությունն իր տնտեսությունը վարում է կոլտնտեսականների ընդհանուր ժողովի կողմից հաստատված պլանով, պլանները մշակելիս ելնում է հանրային տնտեսության ընդլայնված վերարտադրության, պետական գնումների պլանների, գյուղատնտեսական մըթերքների կոնտրակտացիայի պայմանագրերի, կոլտնտեսականների նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման անհրաժեշտությունից և այլն: Չնայած նախագծի այս հոդվածն այնքան էլ հստակ չի ձևակերպված, այնուամենայնիվ, պլանների մշակման նախաձեռնությունը կարծես թե տրված է կոլտնտեսություններին: Սակայն ինչպե՞ս է դա կատարվում իրականում: Իրականում կոլտնտեսություններն ստանում են վերադաս օրգաններից պատրաստի պլանները և ստիպված են անառարկելիորեն ստորագրել ու վավերացնել դրանք: Նույնը կատարվում է նաև կոնտրակտացիոն պայմանագրերի կնքման ժամանակ: Օրինակ, Գորիսի շրջանի Խնձորեսկի «Լենինյան ուղի» կոլտնտեսությունը 1966 թ. «պարտավորվել» էր պետությանը վաճառել 10 տոննա կանաչ լոբի, իսկ 1969 թ.՝ 5 տոննա ընկույզ, մինչդեռ այդ տնտեսությունը լոբի ընդհանրապես չի ցանում, իսկ ընկույզ այդքան չկա:

Իհարկե, վերադաս օրգանները կարող են և պետք է միջամտեն կոլտընտեսությունների պլանավորմանը, սակայն կանոնադրության մեջ պետք է հստակորեն նշել, թե պլանավորման հարցում ի՞նչ իրավունքներ ունի կոլտնտեսությունը և ո՞ւմ է պատկանում.

ինչպե՞ս ասվում է, վերջին խոսքը: Սա շատ ավելի կարևոր ու վճռական հարց է, քան կարող է թվալ առաջին հայացքից: Պետք է նկատի ունենալ, որ կոլեկտիվ տնտեսությունների տնտեսական ինքնուրույնության ամեն մի ոտնահարում, վերջին հաշվով, խիստ բացասաբար է անդրադառնում նրա ամրապնդման ու զարգացման վրա: Հետևապես, կանոնադրությունը խիստ շահած կլինի, եթե այնտեղ հանգամանորեն նշվեն կոլտնտեսության իրավունքները տնտեսության պլանավորման գործում:

Կոլտնտեսության արտադրա-ֆինանսական գործունեությունը,— ասված է նախագծի 15-րդ կետում,— իրականացվում է տնտեսական հաշվարկի, բարոյական ու նյութական խթանների լայն կիրառման հիման վրա, որոնց նպատակն է զարգացնել արտադրությունը և բարձրացնել շահութաբերությունը: Մեր կարծիքով, սա խիստ ընդհանուր է: Կանոնադրության մեջ անհրաժեշտ է կոնկրետ նշել, թե ինչպես պետք է իրականացվեն տնտեսական հաշվարկը, բարոյական ու նյութական խթանման միջոցները: Վաղուց ի վեր խոսում են տնտհաշվարկի, նյութական ու բարոյական շահագրգռվածության մասին, սակայն ոչինչ չի փոխվում տնտեսություններում, որովհետև տեղերում անհրաժեշտ են ո՛չ թե ընդհանուր ձևակերպումները, այլ յուրաքանչյուր նման հարցի վերաբերյալ մշակված միջոցառումները, որոնք պարզ ու հասկանալի կլինեն ո՛չ միայն դրանց հեղինակներին, այլև կատարողներին:

Կանոնադրության նախագծի 16-րդ կետը, մեր կարծիքով, ավելորդ է, որովհետև այն բովանդակության ու կառուցվածքի տեսակետից թուլացնում է կանոնադրության ներգործությունը: Իրոք, ի՞նչ է նշանակում, կոլտնտեսության վարչությունը և կոլտնտեսության բոլոր անդամները պարտավորվում են:

Կանոնադրությունը սոցիալիստական մրցության պայմանագիր չէ, այստեղ պարտավորվելու մասին չպետք է խոսք լինի, այլ անհրաժեշտ է շեշտել, թե և՛ վարչությունը, և՛ կոլտնտեսականները ինչ պարտականություններ ունեն, այսինքն՝ ինչ պետք է անեն հանրային արտադրության հետագա զարգացումն ապահովելու համար: Ուստի, միանգամայն ճիշտ կլինի նշված հոդվածի շարադրանքն ամբողջապես մտցնել կոլտնտեսության վարչության պարտականությունների մեջ:

Կոլտնտեսությունում աշխատանքային օրվա տևողությունն ու ռեժիմը, ասվում է նախագծի 25-րդ կետում, հանգստյան օրեր, ամենամսյա վճարովի արձակուրդներ տալու կարգը, ինչպես նաև հանրային տնտեսությանը աշխատունակ կոլտնտեսականների աշխատանքային մասնակցության մինիմումը կարգավորվում են կոլտնտեսության ներքին կարգապահության կանոններով: Մեր կարծիքով, այստեղ նշված հարցերը, բացառությամբ վերջինի, պետք է լուծվեն վերադաս օրգանների կողմից և ընդունվի միասնական կարգ, որը և պետք է լուսաբանվի կանոնադրության մեջ: Կյանքը ցույց է տալիս, որ այն հարցերը, որոնք թողնվում են կոլտնտեսությունների հայեցողությանը, որպես կանոն, չեն լուծվում կամ, լավագույն դեպքում, պալիատիվ լուծում են ստանում: Աշխատանքային օրվա տևողության, հանգստյան օրերի, վճարովի արձակուրդների հարցը լուրջ է և պետք է համոզված լինել, որ ոչ մի տնտեսություն այն չի կարող լուծել ինչպես հարկն է: Հետևապես, կանոնադրության մեջ պետք է աներկբայորեն նշել և աշխատանքային օրվա տևողությունը, և հանգստյան օրերի քանակը, և՛ վճարովի արձակուրդներ տալու կարգը:

Կանոնադրության նախագծի 27-րդ կետում խոսվում է մի այնպիսի կարևոր ու կոլտնտեսային իրականության մեջ վճռական նշանակություն ունեցող հարցի մասին, ինչպիսին է աշխատանքի վարձատրությունն ու արտադրական նորմաների ընդունումը: Գյուղատնտեսական և մյուս աշխատանքների արտադրական նորմաներն ու գնահատումները, գրված է նախագծում, մշակվում և անհրաժեշտության դեպքում վերանայվում են կոլտնտեսականների և մասնագետների լայն մասնակցությամբ՝ ելնելով տնտեսության կոնկրետ պայմաններից և հաստատվում են կոլտնտեսության վարչության կողմից: Եթե կար ժամանակ, երբ այս ձևով արտադրական նորմաներ մշակելը հնարավոր էր, ապա այժմ հնարավոր չէ, կամ կապված է մեծ դժվարությունների հետ: Մի՞թե դրա արդյունքը չէ, երբ Խնձորեսկի «Լենինյան ուղի» կոլտնտեսությունում 1968 թ. մեկ մարդ-օրվա դիմաց տրվել է վարձատրություն՝ տրակտորիստ-մեքենավարներին և ավտովարորդներին՝ 11, հովիվներին՝ 9,5, կթվոր-անասնապահներին՝ 5,9, իսկ բուսաբուծության բնագավառի աշխատողներին՝ 3,2 ռուբլի: Դժվար չէ նկատել, որ նման վարձատրությունը արտադրական ոչ ճիշտ նորմաների հետևանք է:

Տվյալ հարցի ամենաճիշտ լուծումը կլինի այն, որ արտադրական նորմաների մշակումը դրվի ոչ թե կոլտնտեսությունների, այլ գյուղատնտեսության շրջանային արտադրական վարչությունների վրա, որոնք պետք է մշակեն համապատասխան արտադրական նորմաներ, ելնելով շրջանի յուրաքանչյուր տնտեսության կոնկրետ պայմաններից: Բոլոր դեպքերում արտադրական նորմաների ընդունման կարգը պետք է հանգամանորեն լուսաբանվի կանոնադրության մեջ:

Կանոնադրության նախագծի 23-րդ կետում նշվում է, որ կոլտնտեսության այն անդամները, որոնք առանց հարգելի պատճառների չեն կատարել հանրային տնտեսությանը (պետք է լինի հանրային տնտեսությունում) աշխատանքային մասնակցության սահմանված մինիմումը, կոլտնտեսության վարչության որոշմամբ կարող են մասնակիորեն կամ լրիվ զրկվել լրացուցիչ վարձատրությունից և նյութական խրախուսանքի մյուս ձևերից:

Անհրաժեշտ է նշել, որ նման հարցերի լուծումը վարչության հայեցողությանը թողնելը մեծ դժվարություններ է ստեղծում տնտեսություններում, երբ կոլտնտեսականը նկատում է, որ որևէ հարցի լուծում կախված է կոլտնտեսության վարչությունից, նա դիմում է նույնիսկ ամենածայրահեղ միջոցների, հարցը իր օգտին լուծելու նպատակով: Այս առումով էլ միանգամայն նպատակահարմար չէ կոլվարչություններին ծանրաբեռնել նման խնդիրներով:

Շատ ավելի ճիշտ կլինի կանոնադրության մեջ շեշտել, որ այն կոլտնտեսականները, որոնք անհարգելի պատճառով չեն կատարել աշխատանքի սահմանված մինիմումը, զրկվում են լրացուցիչ վարձատրություն ստանալու իրավունքից:

Անորոշություն ու անհստակություն կա նաև նախագծի 33-րդ հոդվածում, որտեղ խոսվում է կոլտնտեսուհիների հղիության ու ծննդաբերության արձակուրդի իրավունքի մասին: Կոլտնտեսության անդամ կանայք, ասված է նախագծում, ունեն հղիության ու ծննդաբերության արձակուրդի իրավունք. նրանց կարող են տրվել նաև լրացուցիչ արձակուրդներ: Այստեղ կարևոր է նշել, թե ինչ սահմաններում պետք է տրվի նախածննդյան և հետծննդյան արձակուրդը և ինչպես պետք է տրվի այն՝ վարձատրությա՞մբ, թե առանց վարձատրության, ապա ճշտել նաև լրացուցիչ արձակուրդի բնույթը, թե ինչ պայմաններում պետք է տրվի կամ շեշտվի, որ լրացուցիչ արձակուրդի դեպքում վարձատրություն չի տրվում:

Որոշ ուղղում պետք է կատարել նաև նախագծի 34-րդ կետի այն պարբերության մեջ, որտեղ խոսվում է կոլտնտեսականներին պարգևատրելու արժեքավոր նվերներ տալու մասին:

Ճիշտ կլինի, եթե միևնույն տեղում նշվի, թե կոլտնտեսության վարչությունը, կամ կոլտնտեսականների ընդհանուր ժողովը ինչ արժողության սահմաններում կարող է նվեր տալ կոլտնտեսականին: Կարճ ասած, պետք է ուշադրությունից չվրիպի այն, որ որքան սպառիչ ու սահմանագծված լինեն ձևակերպումները, որքան շեշտված լինի միջոցառումների, ինչպես ասում է, հատակն ու առաստաղը, այնքան առավել կլինի կանոնադրության պրակտիկ նշանակությունը:

Նախագծի 35-րդ կետի վերջին պարբերության մեջ ասված է. կոլտնտեսության նախագահին և վերստուգիչ հանձնաժողովի նախագահին, վարչության անդամներին և վերստուգիչ հանձնաժողովի անդամներին կարող է տուժարկել կոլտնտեսականների ընդհանուր ժողովը, իսկ գլխավոր (ավագ) մասնագետներին, գլխավոր հաշվապահին և արտադրական ստորաբաժանումների ղեկավարներին՝ ընդհանուր ժողովը կամ կոլտնտեսության վարչությունը: Թվում է, ճիշտ կլինի, եթե ընդհանուր ժողովը տուժարկի միայն կոլտնտեսության ու վերստուգիչ հանձնաժողովի նախագահներին, իսկ մյուսներին՝ կոլտնտեսության վարչությունը: Նման հարցադրումն ընդունելի է հետևյալ նկատառումներով. տուժարկումը երբեք չպետք է ինքնանպատակ լի-

նի, հետևապես, տույժն առավել արդյունավետ կլինի, եթե լինի ժամանակին, իսկ ընդհանուր ժողովը նման հնարավորություն չի տալիս, որովհետև այն գումարվում է 3—4 ամիսը մեկ անգամ, իսկ երբեմն էլ ավելի ուշ: Բացի դրանից, ինչպես կոլվարչության, այնպես էլ վերստուգիչ հանձնաժողովի անդամները կարող են թույլ տալ երկակի բնույթի խախտումներ՝ սովորական աշխատանքի պրոցեսում, արտադրության մեջ և իրենց ընտրովի պաշտոնական պարտականությունների կատարման ընթացքում: Այսպես, վարչության անդամ կոմբայնավարը բերքահավաքի առաջին իսկ օրերին հունձը կատարել է անորակ: Անհրաժեշտ է տուժարկել նրան, որպեսզի զգաստանա և առաջիկայում չտարվի աշխատանքի լոկ քանակական ցուցանիշներով, այլև ինչպես հարկն է հետևի նաև հնձի որակին: Ուրեմն, ինչպե՞ս վարվել: Մինչև հրավիրվի ընդհանուր ժողով, կավարտվի բերքահավաքը, գուցե և աշնանացանը: Մինչդեռ վարչության նիստ կարելի է հրավիրել նույն օրը և ժամանակին քննել հարցը: Իսկ եթե նույն կոմբայնավարը՝ որպես վարչության անդամ, ասենք, ուղարկվել է ինչ-որ ստուգում կատարելու, ինչ-որ արտադրապրոցես հսկելու և այլն, բայց թերացել է ստացած հանձնարարությունը կատարելու մեջ, ապա նման դեպքում նրա հարցը կարող է քննել ընդհանուր ժողովը և եթե հարկ լինի նույնիսկ նա կարող է հանվել վարչության կամ վերստուգիչ հանձնաժողովի կողմից: Այսպիսով, հնարավոր է նշված հոդվածի հիշյալ պարբերությունը վերաձևակերպել այսպես՝ կոլտնտեսության վարչության ու վերստուգիչ հանձնաժողովի անդամներին՝ նայած կատարած զանցանքին, կարելի է տուժարկել և՛ վարչության նիստում, և՛ ընդհանուր ժողովում:

Նախագծի 37-րդ և 40-րդ կետերում խոսվում է հասարակական սննդի, կենսաթոշակառուներին, հաշմանդամներին, կոլտնտեսության կարիքավոր անդամներին օգնություն ցույց տալու, ինչպես նաև ժամանակավոր անաշխատունակության նպաստներ, սանատորիաների ու հանգստյան տների ուղեգրեր ձեռք բերելու, լրացուցիչ կենսաթոշակներ վճարելու մասին. սակայն չի նշվում, թե այդ բոլորն ինչ չափով ու ինչ սահմաններում պետք է կատարել: Նույնպիսի անորոշություն կա նաև նախագծի 9-րդ բաժնի ձևակերպումների մեջ, որտեղ խոսքը վերաբերում է կոլտնտեսականների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը: Օրինակ, այնտեղ նշված է, որ անհրաժեշտության դեպքում կոլտնտեսությունը կազմակերպում է կոլտնտեսականների հասարակական սնունդը, սակայն չի նշված, թե ինչ հիմունքներով՝ վճարովի՞, անվճա՞ր, թե՞ ինչպես: Շատ լավ կլինի, եթե այս և նման հոդվածներում հնարավորության սահմաններում ձևակերպումները կոնկրետացվեն:

Ժամանակակից կոլտնտեսային իրականության կարևորագույն խնդիրներից մեկը կոլտնտեսային ընտանիքի (կոլտնտեսային ծխի) օժանդակ տընտեսության խնդիրն է, որին նվիրված է կանոնադրության նախագծի 10-րդ բաժինն ամբողջությամբ: Նախագծի 42-րդ կետում գրված է. կոլտնտեսականի ընտանիքին, որպես բանջարանոց, այգի և այլ կարիքների համար օգտագործման է տրվում տնամերձ հողամաս մինչև 0,50 հեկտարի չափով, ներառյալ շինությունների զբաղեցրած հողը, իսկ ջրովի հողերում՝ մինչև 0,20 հեկտար: Մեր կարծիքով, տնամերձ հողամասի նշված չափերն ավելի են, քան պետք է լինեն: Չէ՞ որ կոլտնտեսականի եկամտի հիմնական աղբյուրը, ինչպես ասված է նախագծում, հանրային տնտեսությունն է, ապա ինչո՞ւ է կոլտնտեսականին տրվում 0,50 հեկտար հողատարածությունը: Չէ՞ որ նման հողակտորի մշակումը մեծ ջանքեր է պահանջում: Կամ, մի՞թե դյուրին է 0,20 հեկտար ջրովի տնամերձ հողամասի մշակությունը: Ինչ խոսք, որ տնամերձ հողամասի մշակությունը հնարավոր չէ մեքենայացնել և այն կոլտնտեսականից պահանջում է հիմնականում ձեռքի ու պրիմիտիվ գործիքների միջոցով կատարվող մեծ աշխատանք, որը խիստ հոգնեցուցիչ ու անարտադրողական է իր բնույթով, այսինքն՝ աշխատատարության առումով: Բացի դրանից, որքան մեծ է տնամերձ տնտեսությունից ստացվող եկամուտը, այնքան նվազում է հանրային տնտեսության՝ որպես եկամտի աղբյուրի, նշանակությունը կոլտնտեսականի համար: Հետևապես, ավելի նպատակահարմար է կոլտնտեսականների տնամերձ հողամասերի չափերը սահմանել՝ անջրդի պայմաններում՝ 0,25 և ջրովի պայմաններում՝ 0,15 հեկտար: Ի դեպ, անհրաժեշտ է կանոնադրությամբ սահմանել տնամերձի հատկացման այնպիսի կարգ, որ նշված հողատարածության փոքր մասը (այսինքն՝ 0,10 հեկտար անջրդի և 0,05 հեկտար ջրովի) հատկացվի շինությունների ու պարտեզի համար, իսկ մնացածը՝ (0,15 հեկտար անջրդի և 0,10 հեկտար ջրովի) բնակավայրի, բնակելի գոտու սահմաններից դուրս:

Այս վերջին հանգամանքը կարևոր է այն առումով, որ պրակտիկայում, սովորաբար, հնարավոր չէ ետ վերցնել այն կոլտնտեսականների տնամերձ հողամասերը, որոնք անհարգելի պատճառով չեն աշխատում կոլտնտեսությունում կամ նույնիսկ տարիներով բացակայում են գյուղից և աշխատանքի են անցնում պետական հիմնարկ-ձեռնարկություններում: Եթե հարցը այսպես չլուծվի, ապա նախագծի 42-րդ կետում այն պարբերությունը, որտեղ նշվում է, թե կոլտնտեսության աշխատանքներից խուսափող կոլտնտեսականների տնամերձ հողամասի պահպանման հարցը լուծում է կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովը, կկորցնի իր պրակտիկ նշանակությունը:

Նախագծի 43-րդ կետում նշված է, թե կոլտնտեսային ծուխը որքան և ինչպիսի անասուններ պահելու իրավունք ունի: Կոլտնտեսային ընտանիքը, գըրված է նշված հոդվածում, կարող է ունենալ մեկ կով մինչև մեկ տարեկան մատղաշով և խոշոր եղջերավոր անասուն մոտ երկու տարեկան մեկ գլուխ մատղաշ, մեկ մերուն մինչև երեք ամսական խոճկորներով կամ երկու բըտվող խոզ, մոտ 10 գլուխ ոչխար և այծ՝ միասին, մեղվաընտանիքներ, թռչուններ և ճագարներ: Եթե կոլտնտեսականը կարողանա խնամել իր այս փոքր հոտը և ինչպես հարկն է մշակել տնամերձ հողամասը, ապա նա հազիվ թե կարողանա մասնակցել կոլտնտեսության աշխատանքներին: Իհարկե, առայժմ հանգամանքները չեն ներում վերացնելու կոլտնտեսականի օժանդակ տնտեսությունում անասուններ պահելու իրավունքը, բայց թվում է, ավելի ճիշտ կլինի, եթե 3 խոշորի փոխարեն պահվի 2-ը (1 կով և 1 մատղաշ մինչև 2 տարեկան) և 10 ոչխարի փոխարեն՝ 5 գլուխ:

Նախագծի նույն հոդվածում, իմիջիայլոց, նշված է, որ կանոնադրությամբ սահմանված նորմաներից ավելի անասուններ պահելն արգելվում է: Այստեղ օրինական հարց է ծագում. իսկ եթե հակառակ կանոնադրության պահանջի կոլտնտեսականը նախատեսվածից ավելի անասուն է պահո՞ւմ: Վատ չէր լինի, եթե միաժամանակ շեշտվեր, թե նման դեպքերում ինչ միջոցներ պետք է գործադրվեն և ում կողմից:

Կասկածի տեղիք է տալիս նաև սույն կետի վերջին պարբերությունը, որտեղ ասված է. այն տնամերձ հողամասի չափը և անասունների քանակը, որո՛նք կարող է պահել կոլտնտեսականի ընտանիքը, սահմանում է կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովը, հաշվի առնելով ընտանիքի անդամների թիվը և նրանց մասնակցությունը կոլտնտեսության հանրային աշխատանքներին: Սա ևս չի կարող որևէ պրակտիկ նշանակություն ունենալ, որովհետև իրականում հնարավոր չէ յուրաքանչյուր կոլտնտեսային ծխի համար տնամերձ հողամասի ու անասնագլխաքանակի նորմա սահմանել: Բացի դրանից, կոլտնտեսային բոլոր ընտանիքները (խոսքը վերաբերում է այն ընտանիքներին, որոնց աշխատունակ անդամները զբաղված են հանրային արտադրության մեջ) օգտվում են հավասար արտոնություններից՝ անկախ աշխատունակ անդամների թվից:

Մեր կարծիքով, լավ կլինի, եթե նըշված վերջին պարբերությունը հանվի կանոնադրությունից և փոխարենը գրվի նոր հոդված կամ պարբերություն տնամերձ հողամասեր հատկացնելու կարգի մասին: Ի տարբերություն նախկինում գոյություն ունեցող կարգի, այժմ տնամերձ հողամասերով հիմնականում զբաղվում են գյուղական սովետները, որոնք շատ հաճախ տնամերձ հողամաս են հատկացնում առանց կոլտնտեսության վարչության և ընդհանուր ժողովի որոշման կամ գիտության: Օրինակ, այդպես է արվում մեր հանրապետության կոլտնտեսություններում, որտեղ տնամերձի ֆոնդն առանձնացնելուց հետո այն հանձնվում է գյուղական սովետի տնօ-

րինությանը, որից հետո հողամասերն առանձնացվում են միայն գյուղական սովետի գործկոմի որոշմամբ. մինչդեռ ճիշտ կլինի, եթե դրա վերաբերյալ լինի նաև կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովի որոշումը: Թվում է, այս կարևոր հարցի պատասխանը պետք է անպայման տրվի նոր կանոնադրության մեջ:

Նախագծի 44-րդ կետում գրված է, որ կոլտնտեսությունը կոլտնտեսականների ընդհանուր ժողովի որոշմամբ տնամերձ հողամասեր է հատկացնում գյուղական վայրում աշխատող և կոլտնտեսության տերիտորիայում բնակվող ուսուցիչներին, բժիշկներին և մյուս մասնագետներին: Սակայն չի նշված, թե թվարկած ծառայողներին ու մասնագետներին որքան տնամերձ է տրվում:

Կարևոր է նշել նաև, թե գյուղում բնակվող ուսուցիչները, բժիշկներն ու մյուս մասնագետները որքան անասուն պահելու իրավունք ունեն և այլն: Բացի դրանից, հոդվածում նշված է, որ կոլտնտեսության տերիտորիայում բնակվող բանվորներին, ծառայողներին, կենսաթոշակառուներին և հաշմանդամներին տնամերձ հողամասեր տրվում է ազատ տնամերձ հողեր լինելու դեպքում: Թվում է, հարցի նման դրվածքը իրականում կնշանակի պարզապես տնամերձ հողամաս չտալ գյուղաբնակ բանվորներին, հաշմանդամներին ու կենսաթոշակառուներին: Հետևապես, շատ լավ կլինի, եթե կանոնադրության մեջ նշվի, որ գյուղում բնակվող բանվորներին և նշված մյուս խմբերի մարդկանց տրվում է, ասենք, 0,01 հեկտար տնամերձ հողամաս և թույլատրվում է պահել մեկ կով և այլն:

Կանոնադրության նախագծի խիստ կարևոր բաժիններից մեկը նախավերջին բաժինն է, որտեղ լուսաբանվում են կոլտնտեսության կառավարման մարմինների ու վերստուգիչ հանձնաժողովի գործունեությանը վերաբերող հարցերը:

Այս բաժնում նշված է, որ ընդհանուր ժողովն ընդունում է կոլտնտեսության կանոնադրությունը, նրա մեջ մտցնում փոփոխություններ և լրացումներ: Թվում է, ավելի ճիշտ կլինի, եթե այս պարբերությունը ձևակերպվի այսպես՝ կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովն ընդունում է կոլտնտեսության կանոնադրությունը՝ մշակված օրինակելի կանոնադրության հիման վրա: Նման ձևակերպումն անհրաժեշտ է այն իմաստով, որպեսզի յուրաքանչյուր տնտեսություն ընդունի իր կանոնադրությունը, որը կարտահայտի տվյալ տնտեսության և գյուղական համայնքի բոլոր առանձնահատուկ կողմերը և միաժամանակ դուրս չի գա օրինակելի կանոնադրության հիմնական դրույթների շրջանակներից:

Նոր կանոնադրության նախագծում առանձնահատուկ կերպով շեշտված է կոլտնտեսային դեմոկրատիայի հետագա զարգացման անհրաժեշտությունը: Իհարկե, կոլտնտեսային դեմոկրատիայի իրականացման տարիների փորձը ցույց է տալիս դեմոկրատական սկզբունքների կենսագործման դրական նշանակությունը, սակայն այդ նույն փորձը միաժամանակ հնարավորություն տվեց բացահայտելու կոլտնտեսային դեմոկրատիայի նաև ստվերոտ կողմերը:

Տվյալ դեպքում խոսքը, անկասկած, վերաբերում է կոլտնտեսային դեմոկրատիայի որոշ կողմերին, որոնք, մեր կարծիքով, ոչնչով չեն նպաստում հանրային արտադրության կազմակերպման կատարելագործմանը, սոցիալիստական սեփականության պաշտպանմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը և այլն: Վերցնենք թեկուզ ևս մի այնպիսի հարց, ինչպիսին կոլտնտեսության նախագահի ընտրությունն է, որը բացասաբար է անդրադառնում հենց իր՝ նախագահի աշխատանքի վրա: Նա մշտապես զգում է, ավելի ճիշտ, երբեք չի մոռանում, որ ինքը կոլտնտեսականների ընտրյալն է, որ իր նախագահ լինել-չլինելը կախված է կոլեկտիվի անդամների զգալի մեծամասնության ցանկությունից և նա, սովորաբար, աշխատում է, այսպես ասած, հարմարվել կոլտնտեսականների հետ, ընդհանուր լեզու գտնել և այլն: Արտաքուստ սովորական թվացող այս հանգամանքը շատ հաճախ տնտեսությունների տևական հետամնացության պատճառ է դառնում: Կոլտնտեսության ղեկավարի ու կոլտնտեսականների փոխադարձ հարմարվելու ձգտումը այնքանով է կորստաբեր լինում, որքանով կոլեկտիվ տնտեսության, այսինքն՝ ամբողջական կոլեկտիվի շահերը չեն համընկնում նրա անդամների անհատական շահերի հետ: Իրոք, առայժմ էական տարբերություն կա կոլտնտեսականի անհատական շահի և կոլտնտեսության ընդհանրական շահերի միջև: Հենց սրանով է պայմանավորվում այն, որ կոլտնտեսականն իր որևէ պահանջի համար մերժում ստանալու դեպքում դիմում է նախագահին՝ լավ, կգա ընտրության օրը և ես կասեմ: Եթե նույնիսկ բարձրաձայն չի հայտարարում, ապա աշխատում է չմոռանալ: Եվ ինչ է ստացվում: Այն, որ եթե տնտեսության ղեկավարն իր գործունեության մեջ ամենից առաջ ելնում է տնտեսության շահերից, իսկ հետո միայն կոլտնտեսականի անհատական շահից, ապա նման ղեկավարին, սովորաբար, չեն սիրում և աշխատում են ամեն կերպ ազատվել նրանից:

Գործն ավելի կշահի, եթե վարչության նախագահը նշանակվի վերադաս օրգանների հրամանով, ինչպես նշանակվում են պետական հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները: Մեր կարծիքով, ճիշտ չէ նաև այն դրույթը, որ բրիգադավարները, ֆերմաների, տեղամասերի վարիչները պետք է ընտրվեն. դա միանգամայն անթույլատրելի է, որովհետև ընտրովի բրիգադավարը երբեք ի վիճակի չէ ղեկավարելու բրիգադային արտադրությունը, որովհետև նա բրիգադայի անդամների պահանջներին հարմարվելով կհասնի այնպիսի աստիճանի, երբ ոչ թե ինքը կղեկավարի, այլ բրիգադայի անդամները կղեկավարեն իրեն:

Կոլտնտեսության վերստուգիչ հանձնաժողովի նախագահի պատասխանատվությունը, նրա հեղինակությունն ավելի բարձրացնելու նպատակով ճիշտ կլինի նրա ընտրությունը ևս կատարել կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովում:

Վ. Հ. ԲԱՂԴԱԳՅՈՒԼՅԱՆ
*Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ*

## ՄԵՐ ՆԿԱՏԱՌՈՒՄՆԵՐԸ

Ինչպես հայտնի է, կոլտնտեսության օրինակելի կանոնադրությունը ընդունվել է 1935 թ. կոլտնտեսականների II համագումարում և գործում է մինչև այժմ: Կոլտնտեսային կարգերի վերջնական հաղթանակից հետո այն լիովին համապատասխանում էր անցած ժամանակաշրջանում արտելի առջև դրված խնդիրներին: Անցած 35 տարում մեր գյուղատնտեսությունը հսկայական տեմպերով առաջ է անցել և նախկին տնտեսապես ու կազմակերպչորեն թույլ կոլտնտեսությունների փոխարեն այժմ ունենք ժամանակակից տեխնիկայով ու արտադրության այլ միջոցներով հագեցված, տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդված հզոր կոլտնտեսություններ ու սովխոզներ:

Գյուղատնտեսության մեջ արտադրուժերի փոփոխման ու զարգացման հետ միասին փոխվել ու զարգացել են նաև արտադրահարաբերությունները, գյուղական ազգաբնակչության սոցիալ-տնտեսական պայմանները: Ճիշտ է, անցած ժամանակաշրջանում կոլտնտեսության օրինակելի կանոնադրության մեջ որոշ փոփոխություններ կատարվել են, բայց հիմնականում այն մնում էր նույնը, ինչ 1935 թվականին, որը շատ կողմերով ներկա պահանջները չի բավարարում:

Ելնելով վերոհիշյալից, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն համաժողովրդական քննարկման է ներկայացրել կոլտնտեսության օրինակելի նոր կանոնադրության նախագիծը, որտեղ մանրամասն շարադրված են կոլտնտեսային արտադրության կազմակերպման, կառավարման և զարգացման հարցերը: Քննարկման կարգով ընթերցողին ենք ներկայացնում մեր նկատառումները մի քանի հարցերի շուրջ, որոնք, մեր կարծիքով, կանոնադրության նախագծում թերի են պարզաբանված:

Ներկայումս գյուղատնտեսական արտադրության վերելքի գործում մեծ դեր են խաղում աշխատանքի կազմակերպման, վարձատրության ու նյութական շահագրգռվածության բարձրացման նպատակով ձեռնարկված միջոցառումները:

Կոլտնտեսություններում արտադրու-

թյան հիմնական շարժիչ ուժն աշխատանքի կազմակերպումն ու վարձատրության ճիշտ ձևն է: Կոլտնտեսային կանոնադրության նախագծի 6-րդ գլխում մանրամասն շարադրված են աշխատանքի կազմակերպման, վարձատրության ու կարգապահության հարցերը: Միանգամայն ճիշտ են ձևակերպված վարձատրության սոցիալիստական սկզբունքները: «Կոլտնտեսականների եկամուտների հիմնական աղբյուրը,— ասված է նախագծում,— կոլտնտեսության հանրային տնտեսությունն է: Կոլտնտեսություններում աշխատանքը վարձատրվում է՝ ելնելով հանրային տնտեսության մեջ յուրաքանչյուր կոլտնտեսականի ներդրած աշխատանքի քանակից և որակից, հետևյալ սկզբունքով՝ *լավ աշխատանքի, ավելի լավ արդյունքների համար ավելի բարձր վարձատրություն*»:

Այնուհետև, հաջորդ կետում նշված է, որ կոլտնտեսությունը հանրային արտադրության մեջ կատարած աշխատանքի համար սահմանում է կոլտնտեսության անդամների աշխատանքի երաշխավորված վարձատրություն: Սակայն, այն չի կապվում մթերքների արտադրության նվազագույն կամ լավագույն չափերի հետ, տրվում է անկախ պլանային առաջադրանքների կատարումից, որը ինքնըստինքյան հակասում է առաջին ձևակերպմանը: Դա ավելի պարզորոշ երևում է կոլտնտեսությունների տնտեսական գործունեության վերլուծության ժամանակ:

Մեր ուսումնասիրություններից պարզվում է, որ Սևանի ավազանի (ինչպես նաև հանրապետության շատ շրջանների) կոլտնտեսություններում երաշխավորված վարձատրության անցնելիս, ինչպես կոլտնտեսությունների ղեկավարների, այնպես էլ կոլտնտեսականների մոտ ստեղծվել են հանգստացուցիչ տրամադրություններ: Օրինակ, 1965—1967 թթ. աշխատանքի արտադրողականության տարեկան միջին աճը Սևանի ավազանում կազմում է 2, իսկ աշխատանքի վարձատրությունը՝ 12 տոկոս: Նման փաստեր կան նաև հանրապետության մյուս շրջաններում: Սովորաբար մի շարք կոլտնտեսությունների արտադրական-ֆինանսական պլանները կազմելու ժամանակ արհեստականորեն ցածր պլաններ են ընդունվում, որպեսզի երաշխավորված վարձատրության համար բյուջեից վարկ ստանան:

Կամ՝ հաճախ արտադրա-ֆինանսական պլանով աշխատանքի երաշխավորված վարձատրություն ստանալու համար վարկի պահանջ չի լինում, քանի որ սեփական միջոցները բավարարում են: Միաժամանակ շատ են այնպիսի փաստերը, երբ արտադրա-ֆինանսական պլանը թերակատարվում է վատ աշխատանքի հետևանքով, որի համար ոչ ոք պատասխանատվություն չի կրում: Բայց տարվա ընթացքում կոլտնտեսությունների ղեկավարները, արտադրական վարչությունները, առանց համախառն արտադրանքի պլանի կատարման, միջնորդում ու պահանջում են ֆինանսական օրգաններից՝ երաշխավորված վարձատրության համար տրամադրել չնախատեսված գումարներ: Այսպիսի վերաբերմունքը կոլտնտեսականների մոտ թուլացնում է շահագրգռվածությունը հանրային արտադրության վերելքի նկատմամբ և մերձեցման փոխարեն անձնական ու հասարակական շահերը հեռացնում միմյանցից:

Կոլտնտեսությունների արտադրա-ֆինանսական գործունեության թույլ վերահսկողության հետևանքով շատ տնտեսություններում երկարատև և կարճատև վարկերը մեծ չափերի են հասնում:

Այսպես, Վարդենիսի շրջանի Ն. Շորժայի, Կամոյի շրջանի Լճափի և Մուխանի կոլտնտեսություններում բոլոր վարկերը միասին վերցրած մոտ երկու անգամ ավելի են, քան տվյալ տնտեսությունների 1968 թ. համախառն արտադրանքի կամ ամբողջ արտադրական հիմնական ֆոնդերի արժեքը: 1968 թ. Սևանի ավազանի 62 կոլտնտեսություններից 30-ում ստացված համախառն եկամուտն զգալի չափով պակաս է աշխատանքի վարձատրությունից: Կրասնոսելսկի շրջանի կոլտնտեսություններում կոլտնտեսականներին վճարել են (մարդ-օրվա հաշվով) 2—3 ռուբլի, որից 40—50 տոկոսը պետական վարկի հաշվին: Մյուս շրջանների կոլտնտեսություններում ևս աշխատանքի վարձատրության մեջ տարեցտարի ավելանում է վարկի տեսակարար կշիռը:

Գոտում եղած բոլոր կոլտնտեսություններից 1968 թ. միայն 9 կոլտնտեսություններում են աշխատանքի վարձատրությունն ապահովել սեփական միջոցներով, առանց վարկերի. դրանք են Վարդենիկի, Վաղաշենի, Նորակերտի, Մեծ Մազրայի, Փոքր Մազրայի, Ակունքի, Վարդենիսի, Ծովակի և Ջախոլուի կոլտնտեսությունները: Իսկ մնացած 53 կոլտնտեսությունները 1966, 1967 և 1968 թվականներին երաշխավորված վարձատրություն տալու նպատակով ստացել են 4562,4 հազար ռուբլի վարկ: Ընդհանրապես երկարատև և կարճատև վարկերի պարտքն այս կոլտնտեսություններում կազմում է 7595,3 հազար ռուբլի: Այժմ լուրջ դժվարություններ են ստեղծվել արտադրական ծախսերի և աշխատանքի վարձատրության ֆինանսավորման գործում, քանի որ կոլտնտեսություններն այժմ ի վիճակի չեն սեփական միջոցներով մարելու ժամկետանց պարտքերը:

Այս փաստերը վկայում են այն մասին, որ երաշխավորված վարձատրության արմատավորումը Սևանի ավազանի կոլտնտեսություններում դեռևս անհրաժեշտ արդյունք չի տվել, այն չի հանդիսացել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում կոլտնտեսականների ստեղծագործական ակտիվության բարձրացման հիմնական շարժիչ ուժը:

Գյուղատնտեսության մեջ միևնույն բնատնտեսական և հողային պայմաններում, կոլտնտեսականների աշխատանքը պետք է գնահատել արտադրված մթերքների քանակով. դրա հետ պետք է կապել և դրամական երաշխավորված վարձատրությունը: Այլապես այժմ երաշխավորված վարձատրության արմատավորմամբ կոլտնտեսությունների որոշ մասը հասարակությունից ստանում է ավելի շատ նյութական բարիքներ, քան իրենց կատարած հասարակայնորեն անհրաժեշտ աշխատանքն է: Բաշխման այս կարգը, մեր կարծիքով, չի բխում արտադրության կազմակերպման աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման, նրանց անձնական ու հասարակական շահերի ճիշտ զուգակցման սկզբունքներից: Փաստերը ցույց են տալիս, որ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության չափերի մեխանիկորեն բարձրացումը չի փոխում կոլտնտեսականի վերաբերմունքը հանձնարարված գործի նկատմամբ: Դա կատարվում է հիմնականում ի վնաս որակի: Թե տարվա վերջում ի՞նչ բերք կըստացվի և դրանից տվյալ կոլտնտեսականը ի՞նչ բաժին կունենա, դա սեզոնի ընթացքում առանձին կոլտնտեսականների քիչ է հետաքրքրում, որովհետև վերջնահաշվարկի կատարման գոյություն ունեցող կարգը կոլտնտեսականի համար պարզ ու մատչելի չէ և նրան չի շահագրգռում: Հենց այստեղ խախտվում, խզվում են անձնական և հասարակական շահերի մերձեցման սոցիալիստական սկզբունքները: Այսինքն՝ աշխատանքի վարձատրության տեմպերը գերազանցում են աշխատանքի արտադրողականության տեմպերին և սահմանափակում ընդլայնված վերարտադրության հնարավորությունները:

Աշխատանքի երաշխավորված վարձատրության արմատավորումը, որոշ կոլտնտեսություններում նման հետևանքներ է թողել: Ուստի, նոր կանոնադրության մեջ պետք է նախատեսել աշխատանքի վարձատրության այնպիսի սիստեմ, որը հնարավորություն ստեղծի մոտեցնելու և միասնական դարձնելու կոլտնտեսականների անձնական ու հասարակական շահերը և ապահովի գյուղատնտեսական արտադրության վերելքը:

*Մեր կարծիքով, նպատակահարմար է երաշխավորված վարձատրությունը դիֆերենցել, ելնելով համախառն արտադրանքի կամ համախառն եկամտի պլանի կատարման մակարդակից և այն կոլտնտեսությունները, որոնք չեն ապահովի համախառն արտադրանքի ու եկամտի համապատասխան աճը, նրանց աշխատանքի վարձատրությունը չպետք է երաշխավորել և լրացնել բյուջեից, կամ պետք է համապատասխան չափով պակաս վճարել:*

Այնուհետև, առանձնահատուկ մոտեցում պետք է ունենալ պլանների գերակատարման համար նախատեսվող վարձատրություններին: Ռեալ պլանավորման պայմաններում պլանների գերակատարումը կապված է մեծ դժվարությունների հետ՝ յուրաքանչյուր կոլտնտեսականի առանձին վերցրած ստեղծագործական ունակությունների, նրա սովորականից ավելի գործադրած

ֆիզիկական ու մտավոր ունակությունների, զանազան նախաձեռնությունների հետ, որոնք հնարավոր է գործունեության մեջ դնել միայն նրանց նրկատմամբ ճիշտ վարձահատույց լինելուց: Այս տեսակետից *նպատակահարմար է պլանային առաջադրանքները գերակատարելիս կոլտնտեսականներին, բացի երաշխավորված վարձատրությունը, տալ գերակատարված մթերքի (բնեղենով) կամ նրա արժեքի 40—60 տոկոսը, դուրս գալով դրա արտադրության վրա կատարված ուղղակի ծախսերը:* Առանձին մթերքների համար կարելի է տալ գերակատարվածի 70—80 տոկոսը (կարտոֆիլ, բանջարեղեն և այլն), որտեղ մեքենայացման մակարդակը ցածր է:

Այսպիսով, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման, նրանց անձնական ու հասարակական շահերի մերձեցման ամենագլխավոր պայմաններից մեկը աշխատանքի վարձատրության ճիշտ սահմանումն է: Վարձատրությունը երաշխավորված է, թե ոչ, այն պետք է բաղկացած լինի 2 մասերից:

ԱՌԱՋԻՆԸ սեզոնի ընթացքում գործավարձային սիստեմով ստացած աշխատավարձն է, որից դրամական մասը տրվում է ամեն ամիս, արտադրական-ֆինանսական պլանով նախատեսված չափով. իսկ բնամթերային մասը մթերքների ստացման հետ կապված սեզոնի կամ տարվա վերջում, եթե արտադրա-ֆինանսական պլանը կատարվում է:

ԵՐԿՐՈՐԴԸ գերպլանային արտադրանքի ստացման համար տրվող վարձատրությունն է, որը օղակային սիստեմի կամ անհատական գործավարձի դեպքում հաճախ ավելի ակտիվ դեր է կատարում գյուղատնտեսության արտադրության վերելքի ապահովման գործում, քան առաջինը: Գերպլանային արտադրանքի ստացման և բաշխման ճիշտ պլանավորման շնորհիվ հնարավոր է զգալի չափով մոտեցնել կոլտնտեսականների անձնական և հասարակական շահերը: Ուստի, այն ևս պետք է նոր կանոնադրության մեջ ուշադրության արժանանա:

Գերպլանային արտադրանքի համար տրվող վարձատրության չափերը հանրապետության բոլոր շրջանների համար միասնական լինել չեն կարող, դրանք պետք է որոշեն շրջանների արտադրական վարչությունները կոլտնտեսությունների հետ սերտ համագործակցված, քննարկեն կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում և հաստատեն շրջսովետի գործկոմում:

Կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրության վերոհիշյալ կարգի սահմանումը խթան կհանդիսանա ռացիոնալ օգտագործելու հանրային արտադրության ռեզերվները և ակտիվ շարժման մեջ դնելու յուրաքանչյուր կոլտնտեսականի անձնական նախաձեռնությունն ու ունակությունը մթերքների արտադրության ավելացման համար: Վարձատրության նման կարգ սահմանելու շնորհիվ կկանոնավորվեն աշխատանքի արտադրողականության և աշխատանքի վարձատրության աճի համամասնությունները և աշխատանքի վարձատրության աճի տեմպերը միշտ ետ կմնան աշխատանքի արտադրողականության աճի տեմպերից:

Ինչպես հայտնի է, հողը մեր երկրում համարվում է պետական համաժողովրդական սեփականություն, ենթակա չէ առք ու վաճառքի: Այն ամրացվում է կոլտնտեսություններին անվճար ու անհավետ օգտագործելու: Կանոնադրության նախագծում հողի վերաբերյալ նշված է.

«Կոլտնտեսությունը պարտավորվում է առավել լրիվ ու ճիշտ օգտագործել և մշտապես բարելավել իրեն ամրացված հողը, բարձրացնել նրա բերրիությունը, իրագործել հողերի ոռոգման և ցամաքեցման, էռոզիայի դեմ պայքարելու միջոցառումներ, կոլտնտեսային հողերը խնամքով և խստիվ պահպանել շռայլումներից, կատարել անտառների ջրային աղբյուրների և օգտակար հանածոների օգտագործման սահմանված կանոնները»:

Վերոհիշյալ ձևակերպումը, ինչ խոսք, ճիշտ է և բավարար հողերի ռացիոնալ օգտագործման համար: Բայց պետք է նշել, որ դա նոր ձևակերպում չէ: Այդ պահանջները միշտ էլ եղել են հողօգտագործողների նկատմամբ: Սակայն այդ պահանջները շատ տնտեսությունների համար մնացել են լոկ բարի ցանկություն, որի իրագործման հիմքում ընկած են ո՛չ թե տնտեսական, այլ վարչական ազդակները: Ներկայումս ցանկացած կոլտնտեսությունում հողօգտագործման գործում կան



աղաղակող թերություններ, անտնտեսվարության, շռայլման փաստեր, իսկ կանոնադրության վերոհիշյալ պահանջները մնացել են միայն թղթի վրա: Լավագույն դեպքում հողի շռայլման կամ վատ օգտագործման համար առանձին պատասխանատու աշխատողներ վարչական կամ կուսակցական տույժ են կրել, որով, իհարկե, հողի օգտագործումը չի բարելավվել կամ շռայլումը չի կանխվել: Մեր հանրապետությունում ներկայումս տարեկան մոտ 25—30 հազար հեկտար վարելահող անօգտագործելի է մնում, լեռնային շրջաններում եղած վարելահողերի 15—20 տոկոսը չի օգտագործվում, կամ օգտագործվում է ցածր ինտենսիվությամբ:

Մեր կարծիքով, հողերի օգտագործման և պահպանման գործում պատշաճ կարգ ու կանոն սահմանելու համար պետք է ավելի որոշակի երևա պետության դերը, որպես հողատիրոջ: Անհրաժեշտ է վարչական մեթոդները փոխարինել *տնտեսական խթաններով: Այսինքն՝ ելնելով հողային կադաստրի տվյալներից, յուրաքանչյուր տնտեսությանն առաջադրել գյուղատնտեսության մթերքների արտադրության լավագույն պարտադիր պլաններ, այն 2—3 տարի չկատարելու դեպքում զրկել տվյալ հողօգտագործողին հողը տնօրինելու իրավունքից, վերցնել ամրացված հողերի մի մասը և տրամադրել այն կոլտնտեսությանը կամ սովխոզին, որն ի վիճակի է ապահովել գիտականորեն հիմնավորված լավագույն ելքը:* Նման միջոցառումներ նպատակահարմար է կիրառել նաև կոլտնտեսության ներսում տարբեր բրիգադաների միջև: Դա կլինի ազատ սոցիալիստական մրցություն հողի ռացիոնալ օգտագործման դեպքում:

Այնուհետև, հողի պահպանման և ռացիոնալ օգտագործման գործում կոլտնտեսությունների պատասխանատվությունը և շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով *անհրաժեշտ է եկամտահարկը գանձել ո՛չ թե ստացված զուտ եկամտից, այլ համախառն արտադրանքի պլանավորված լավագույն չափից, որը պետք է անփոփոխ լինի ոչ պակաս 5 տարի:* Արտադրության պլանավորման և եկամտահարկի գանձման նման կարգը կբարձրացնի կոլտնտեսությունների շահագրգռվածությունն իրենց հատկացված հողերը ռացիոնալ օգտագործելու համար:

*Կանոնադրության նախագծի 10-րդ գլխում* վերլուծված են կոլտնտեսականի ընտանիքի օժանդակ տնտեսության հարցերը:

Նախ, պետք է պարզություն մտցնել այս տերմինների մեջ: Թվում է, թե ժամանակն է, որ կոլտնտեսային արտելի կազմը հաշվել ո՛չ թե ընտանիքներով կամ ծխերով, այլ աշխատող անդամների թվով: Այսպես ստացվում է ձախ հավասարեցում այնպիսի ընտանիքների միջև, որոնցից մեկում աշխատում են 4—5 անդամ, մյուսում՝ միայն մեկը, իսկ մեկ ուրիշ ծխում կա միայն մեկ զառամյալ կոլտնտեսական, որը չի աշխատում: Բայց կոլտնտեսականին տրվող իրավունքներից ու արտոնություններից վերոհիշյալ երեք ընտանիքները օգտվում են գրեթե հավասարապես: Դա չի բխում գյուղատնտեսության արտադրության կազմակերպման սոցիալիստական սկզբունքներից: Այս երևույթը միանգամայն բացասաբար է անդրադառնում կոլտնտեսության աշխատանքային կարգապահության վրա: Դա է պատճառը, որ երբ հաշվում ենք կոլտնտեսության աշխատանքային ռեզերվների օգտագործումը, միշտ թղթի վրա բանվորական ուժի ավելցուկ է ստացվում, բայց երբ մտնում ենք կոլտնտեսության դաշտերը, ուսումնասիրում աշխատանքային պրոցեսները, բանուժի պակաս է զգացվում:

Նախագծի 43-րդ կետում նշված է, որ կոլտնտեսային ծխի հողամասի չափը և անասունների քանակը սահմանվում է կոլտնտեսականների ընդհանուր ժողովի կողմից, հաշվի առնելով այդ ընտանիքի անդամների քանակը և նրանց աշխատանքային մասնակցությունը հանրային տնտեսությունում: Նման ձևակերպումը միանգամայն ճիշտ է, սակայն, մեր կարծիքով, այն թերի է: Նպատակահարմար է ինչպես անձնական օգտագործման անասունների, այնպես էլ տնամերձ հողամասի չափը սահմանել ո՛չ թե ըստ ծխի, այլ ըստ աշխատողի: Դա պատճառաբանվում է հետևյալ կերպ.

Նախկինում կոլտնտեսականի ծխի աշխատունակ բոլոր անդամներն աշխատում էին տվյալ կոլտնտեսությու-

իդեալիստականի նկատմամբ: Սակայն նման տեսակետի որոշ կողմնակիցներ կյանքի ծագման վերաբերյալ հաճախ ունեցել են մետաֆիզիկական մոտեցում, օրգանիզմները համարելով ինքնաերման արդյունք՝ անկախ մատերիայի զարգացումից:

Կյանքի նախնական ինքնաերման գաղափարն այնքան խորն է արմատավորվել մարդկանց գիտակցության մեջ, որ վերածնության շրջանում, բնական գիտությունների բուռն զարգացումից հետո էլ, երբ արդեն ստեղծվել էին համեմատաբար ճիշտ պատկերացումներ մարդուն շրջապատող բնության մասին (Անանիա Շիրակացի— VI, Մխիթար Հերացի— VII դար, Նիկոլայ Կոպեռնիկոս— 1473—1543 թթ., Ջորդանո Բրունո— 1548—1600 թթ., Գալիլեո Գալիլեյ— 1564—1642 թթ.), այն երկար գոյատևեց:

Այսպիսով, կենդանի էակների ինքնագոյացումը ենթակա չէր վիճարկման: Տարաձայնում էին միայն այս հարցի շուրջ— ինքնաերումը պետք է դիտել որպես բնակա՞ն երևույթ, թե՞ «հոգու գործունեության» արդյունք:

Այս հարցում շրջադարձային կետ հանդիսացան տոսկանյան բժիշկ Ֆրանչեսկո Ռեդիի (1626—1698 թթ.) ուսումնասիրությունները, որոնք ժխտում էին կյանքի ինքնաերման տեսակետը: Նա ցույց տվեց, որ մսի նեխման ժամանակ առաջացած սպիտակ որդերը ոչ այլ ինչ են, եթե ոչ ճանճերի թրթուրներ: Սակայն Ռեդին հետևողական չեղավ: Շատ այլ դեպքերում նա դարձյալ ընդունում էր կենդանի էակների ինքնաերումը: Միայն հետագայում, գիտության զարգացմանը զուգընթաց, մարդիկ հրաժարվեցին բարդ էակների ինքնաերման գաղափարից: Սակայն, չկարողանալով ճիշտ բացատրել կյանքի ծագման օրինաչափությունները, շատ մտածողներ գիտական հայտնագործություններից սխալ եզրակացությունների էին հանգում: Այսպես՝ Անտոնի վան Լևենհուկի (1632—1723 թթ.) խոշորացույցի գյուտից հետո կենդանի էակների ինքնաերման ուսմունքը տարածվեց և մանրէների վրա: Ստեղծվեց այն կարծիքը, թե դրանք առաջանում են նեխող օրգանական նյութից (Գ. Վ. Լեյբնից, Ժ. Լ. Բյուֆոն և ուրիշներ— XVII—XVIII դդ.): Այս տեսակետը հերքեց իտալական գիտնական Լաձարո Սպալանցանին, ապացուցելով, որ միջավայրի լրիվ ախտահանման դեպքում մանրէներ չեն առաջանում: Իսկ Լուի Պաստյորը (1862 թ.) եզրակացրեց, որ օրգանական նյութի նեխումից ո՛չ միայն չեն կարող մանրէներ առաջանալ, այլև նեխման պրոցեսը հետևանք է մանրէների կենսագործունեության: Այսպիսով ժխտվեց հազարամյակներ իշխող կենդանի էակների ինքնաերման տեսակետը: Սակայն դարձյալ չէր բացատրվում կյանքի ծագումը:

Մեր դարասկզբում գոյություն ունեին կյանքի ծագումը բացատրող երկու ուղղություններ: Մի խումբ գիտնականներ առաջ էին քաշում հիպոթեզ, որի համաձայն մեր մոլորակի վրա կյանքը ներմուծվել է տիեզերքից՝ փոշու և մետեորների միջոցով: Վերջին հարյուրամյակում փորձեր էին կատարվում ապացուցելու, որ մետեորների վրա կան կենդանի էակներ կամ նրանց հետքերը:

Բայց ապարդյուն: Գիտնականների մի այլ խումբ գտնում էր, որ երկրի վրա կյանքը դարձյալ ինքնաերման հետևանք է, որ այն «երջանիկ պատահականություն» է, և, հավանաբար, երկրի գոյության պատմության ընթացքում կարող է լինել միայն մեկ անգամ. այդ իսկ պատճառով հնարավոր չէ կրկնել փորձնական ճանապարհով:

Նշված ուղղությունները կյանքի ծագումը նույնպես չէին կապում մատերիայի աստիճանական զարգացման հետ: Կյանքի ծագման մասին ճիշտ պատկերացում կազմել հնարավոր եղավ միայն այն ժամանակ, երբ այն սկըսեցին ուսումնասիրել, ելնելով դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերից: Վերջինիս համաձայն մատերիան գտնվում է անընդհատ շարժման ու զարգացման վիճակում. իսկ կյանքը, ինչպես նշել է Ֆ. Էնգելսը, չի գոյանում հանկարծակի. այն ծագում է մատերիայի էվոլյուցիայի ընթացքում միշտ և ամենուր, երբ նման էվոլյուցիայի համար ստեղծված են անհրաժեշտ պայմաններ: **Մատերիայի էվոլյուցիայի ընթացքում առաջացած բարդ ու որակապես նոր գոյացն է նյանքը:** Կենդանի նյութի ամենաբնորոշ առանձնահատկությունն այն է, որ շրջապատող միջավայրի հետ մի դիալեկտիկական ամբողջություն է կազմում այն, որի հիմքում ընկած է նյութափոխանակությունը՝ ասիմիլյացիան և դիսիմիլյացիան:

Սակայն այն ժամանակ շատ քչերն ըմբռնեցին էվոլյուցիոն սկզբունքի կիրառման նշանակությունը կյանքի ծագման պարզաբանման համար: Հիմնական խոչընդոտն այդ հարցում լայնորեն տարածված այն կարծիքն էր, թե օրգանական նյութերն ունեն կենսական (բիոգեն) ծագում: Մինչդեռ օրգանական նյութի նախասկզբնական սինթեզը բնության մեջ հանդիսացել է կյանքի ծագման ամենավճռական նախապայմանը:

Բնական գիտությունների (կենսաբանության, քիմիայի, ֆիզիկայի, աստղաբաշխության) վերջին տասնամյակների հաջողությունները հնարավորություն ընձեռեցին ճշգրիտ պատկերացում կազմելու բնության մեջ օրգանական նյութերի նախասկզբնական սինթեզի



և, հատկապես, կյանքի հետագա զարգացման մասին: Ինչպես հայտնի է, օրգանական նյութերի հիմքում ընկած է ածխածինը՝ միացած տարբեր տարրերի— ազոտի, ջրածնի, ծծմբի, թթվածնի, ֆոսֆորի հետ:

Ինչպե՞ս են առաջացել տարբեր օրգանական միացությունները մեր մոլորակի վրա:

Զարգացման տարբեր աստիճանների վրա գտնվող տիեզերական այլ մարմինների ուսումնասիրությունից պարզվել է, որ դրանցից շատերի վրա (թեև բացառվում է այնտեղ կյանքի գոյությունը) սինթեզվում են օրգանական միացություններ: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ ածխածին կարելի է հայտնաբերել այնպիսի աստղային մթնոլորտում, որտեղ ջերմությունը հասնում է 20000—28000 աստիճանի և որևէ միացության մասին դեռևս խոսք լինել չի կարող: Քիմիական տարրերն այնտեղ պլազմայի վիճակում են: Համեմատաբար սառը (12000 աստիճան և ցածր) աստղային մթնոլորտում ածխածնի և ջրածնի միացությունների առկայությունը դառնում է որոշակի: Օրինակ՝ արեգակի մոտ, որի մթնոլորտի ջերմությունը հասնում է մոտավորապես 6000 աստիճանի, հայտնաբերվում են մեթան և ցիան: Օրգանական միացություններ են հայտնաբերվել նաև արեգակնային համակարգության տարբեր մոլորակների՝ Երևակի (Յուպիտեր), Լուսնթագի (Սատուրն), Ուրանի, Նեպտունի և ուրիշների, ինչպես և մետեորների բաղադրության մեջ:

Ուսումնասիրելով ածխաջրատների գոյացման ուղիները՝ գիտնականները հանգել են այն եզրակացության, որ մեր մոլորակի վրա (որը մոտ 4,5—5 մլրդ տարեկան է) ածխաջրատներ կարող էին առաջանալ կարբիդների ու հիդրատացած լեռնապարների փոխազդեցությամբ, ազատ ջրածնի միջոցով, գրաֆիտի ու ամորֆ ածխածնի ուղղակի վերականգնմամբ, ապարների կողմից նախասկզբնային մեթանի կլանմամբ և այլն:

Այսպիսով, եթե ուղղակի ուսումնասիրություններով և դիտողություններով համեմատաբար հեշտ էր պարզել, որ ածխածնային տարբեր միացություններ առաջացել են երկրի կազմավորման դեռ վաղ շրջաններում, ապա դրանց հետագա ձևափոխումների մասին պատկերացում կարող ենք կազմել միայն լաբորատոր եղանակով, քանի որ մեր մոլորակի վրա արդի պայմանները խիստ տարբեր են նախկինից:

Գիտնականների կարծիքով հնում այդ ռեակցիաների համար էներգիայի աղբյուր են ծառայել ինչպես վերականգնված ածխածնային միացությունների պոտենցիալ էներգիան, այնպես էլ գերմանուշակագույն ճառագայթների, էլեկտրական պարպումների, իոնիզացնող ճառագայթման էներգիան և հրաբխային ժայթքումների ժամանակ անջատված ջերմությունը:

Էներգիայի նշված աղբյուրների օգտագործման միջոցով սովետական և արտասահմանյան գիտնականներին հաջողվել է փակ սիստեմներում (որոնք պարունակում են մեթան, ջրածին, ածխաթթու գազ, ազոտի, ամիակի և ջրի գոլորշիների խառնուրդ) սինթեզել բջիջների պրոտոպլազմայի բաղադրության մեջ մտնող բարդ օրգանական միացություններ՝ ամինաթթուներ, ածխաջրեր, ազոտային հիմքեր և այլն: Նման պայմաններում սինթեզված օրգանական միացությունները կարող են ենթարկվել հետագա ձևափոխումների (պոլիմերիզացիա և պոլիկոնդենսացիա), առաջացնելով նոր, ավելի բարդ մոլեկուլներ: Այսպես, օգտագործելով ջերմային էներգիան (156—180°), գիտնականներին հաջողվել է 18 տարբեր ամինաթթուներից ստանալ մի միացություն (պոլիպեպտիդ), որն իր ֆիզիկական ու քիմիական մի շարք հատկություններով համարյա չի տարբերվում կաթի սպիտակուցից: Համանման արդյունք է ստացվել նաև գերմանուշակագույն և իոնիզացված ճառագայթների էներգիան օգտագործելիս: Պարզվել է, որ նըման սինթեզների համար էներգիայի աղբյուր կարող էին հանդիսանալ և ֆոսֆորի անօրգանական բարդ միացությունները (պոլիֆոսֆատները):

Այսպիսով, ինչպես մեր մոլորակի և տիեզերական այլ մարմինների, այնպես էլ լաբորատոր պայմաններում կատարված ուսումնասիրությունները հանգեցնում են այն եզրակացության, որ բազմաթիվ պարզ և բարդ օրգանական միացություններ առաջացել են դեռ այն ժամանակ, երբ գոյություն չի ունեցել ոչ մի կենդանի էակ:

Հետագայում ոչ-կենսական (աբիոգեն) ծագում ունեցող այդ միացությունները հիմնականում կուտակվել և պահպանվել են օվկիանոսների ու ծովերի ջրերում: Ենթադրվում է, որ մոտ մեկ միլիարդ տարում այդ նյութերի խտությունը համաշխարհային օվկիանոսի ջրերում հասել է մեկ տոկոսի. ժամանակի ընթացքում այդ ջրերը վեր են ածվել «նախասկզբնական բուլյոնի», որը բաղկացած է ո՛չ միայն անօրգանական աղերից, այլև միմյանց հետ փոխազդեցության մեջ մտնելու ունակ բազմաթիվ պարզ ու բարդ օրգանական միացություններից: Վերջիններս հազարամյակների ընթացքում ենթարկվել են էվոլյուցիոն փոփոխությունների, որոնք առաջացրել են երկրի ֆիզիկո-քիմիական պայմանների փոփոխություն: Գոյացել են նոր որակի ու քանակի օրգանական միացություններ: Սակայն որա-

կական ու քանակական նշված փոփոխությունները, ի տարբերություն կենդանի բջիջներում տեղի ունեցող ձևափոխությունների, ընթացել են առանց որոշակի հաջորդականության և կրել քաոսային բնույթ: Ուստի, կյանքի ծագման հաջորդ կարևորագույն ժամանակահատվածը պետք է համարել այն շրջանը, երբ այդ «քաոսի» մեջ սկսվում է ձևավորվել նյութափոխանակության որոշակի կարգ: Անհրաժեշտ էր, որ նախնական պարզագույն սիստեմները օժտված լինեին շրջապատող միջավայրի հետ փոխազդեցության մեջ մտնելու ունակությամբ: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ բիոլոգիական շատ պոլիմերներ՝ սպիտակուցներ, նուկլեինաթթուներ և այլն, կարող են կազմել կոմպլեքսային զանազան միացություններ: Այսպես, Բունդենբերգ դե Յոնգը, խառնելով ժելատինի և գումիարաբիկի ջրային լուծույթները, նկատել է, որ միջավայրի սովորական պայմաններում որոշ ժամանակից հետո լուծույթը պղտորվում է: Նշված նյութերի մոլեկուլները միանալով միմյանց և հասնելով որոշակի մեծության, առանձին կաթիլների ձևով անջատվում են լուծույթից: Այդ կաթիլները կոչվել են կոացերվատներ: Այժմ գիտնականներին հաջողվել է ստանալ բազմաթիվ կոացերվատներ: Պարզվել է, որ նման կառուցվածքների առաջացումը պայմանավորված չէ այդ միացությունների կենսական կամ ոչ-կենսական ծագմամբ:

Վերոհիշյալ հանգամանքը վկայում է, որ հավանաբար «նախասկզբնական բուլյոնում» աբիոգեն ճանապարհով, պոլիմերների սինթեզմամբ կարող էին գոյանալ նման կոացերվատներ: Արտաքին միջավայրից սահմանազատված կոացերվատները կարող են փոխազդվել շրջապատող միջավայրից և ընտրողաբար կլանել զանազան միացություններ: Սա կոացերվատների կարևորագույն հատկություններից մեկն է, որը մեծ դեր է կատարել դրանց հետագա էվոլյուցիայի համար:

Սակայն, ի տարբերություն կենդանի բջիջների, կոացերվատային կաթիլները ինչ-որ չափով հագենալուց հետո դադարում են միջավայրից նյութեր կլանել. մինչդեռ բջիջները գտնվում են ստացիոնար վիճակում, կլանված նյութերը, ենթարկվելով ձևափոխումների, արտազատվում են արտաքին միջավայր. կլանման ու արտազատման այս երևույթները տեղի են ունենում անընդհատ: Ուստի, որպեսզի կոացերվատները իրենց բնույթով ինչ-որ չափով մոտենային կենդանի բջիջներին, դրանց փոխկապվածությունը միջավայրի հետ պետք է անընդհատ լիներ: Գիտնականներին հաջողվել է ստանալ այնպիսի կոացերվատներ, որոնց մեջ տեղի են ունենում սինթեզի և տարրալուծման երևույթներ:

«Նախասկզբնական բուլյոնում» առաջացել են նաև բազմամոլեկուլ սիստեմներ, որտեղ, ֆերմենտների փոխարեն, որպես կատալիզատոր հանդես են եկել համեմատաբար պարզ միացություններ, իսկ որպես էներգիայի աղբյուր՝ պոլիֆոսֆատներ: Սակայն ենթադրվում էր, որ հետագայում կարող էին գոյատևել այնպիսի կոացերվատներ, որոնք ընդունակ լինեին սինթեզելու մեծ քանակությամբ էներգիա պարունակող միացություններ: Վերջիններս կարող էին սինթեզվել ի հաշիվ օքսիդացման և վերականգնման ռեակցիաների, որոնք նյութափոխանակության ամենահին և պարտադիր ձևերից մեկն են բոլոր կենդանի էակների համար: Այդ վարկածը հաստատվեց փորձնական ճանապարհով: Հաջողվեց ստանալ կոացերվատներ, որտեղ օքսիդացման ու վերականգնման պրոցեսների ժամանակ անջատված էներգիան ծախսվում է նման միացությունների սինթեզի վրա:

Այսպիսով, նշված կոացերվատներում նյութերի ձևափոխումները տեղի են ունենում ի հաշիվ օքսիդա-վերականգնման ռեակցիաների ժամանակ անջատված էներգիայի. այդ ռեակցիաները կարող են ընթանալ նաև ի հաշիվ ճառագայթային էներգիայի: Եթե երկրագնդի զարգացման սկզբնական ժամանակաշրջաններում նման էներգիայի աղբյուր են հանդիսացել գերմանուշակագույն ճառագայթները, ապա էվոլյուցիայի ընթացքում դրանք փոխարինվել են փոքր էներգիայի երկարալիք ճառագայթներով: Վերջինիս դեպքում անհրաժեշտ են այդ ճառագայթային էներգիան կլանելու ունակ միացություններ (պիգմենտներ):

Այժմ փորձնական ճանապարհով հաջողվել է ստանալ կոացերվատներ, որոնք պարունակում են ֆոտոսինթեզն իրականացնող կանաչ պիգմենտ քլորոֆիլ: Եթե նշված կոացերվատների միջավայրին ավելացնենք ասկորբինաթթու ու մեթիլեն կարմիր և ճառագայթացնենք տեսանելի լուսային ճառագայթներով, ապա տեղի կունենա մի ռեակցիա, որի ընթացքում ասկորբինաթթուն իր ջրածինը կտա քլորոֆիլին, որից կանցնի մեթիլեն կարմիրին, և քլորոֆիլը դարձյալ կվերականգնվի, հասնելով իր նախկին վիճակին:

Վերոհիշյալ կոացերվատներում նյութերի ձևափոխումներն ընթանում են անհամեմատ ավելի արագ, քան շրջապատող միջավայրում, որը նպաստում է նրանց աճելուն և գործուն փոխազդեցությանը՝ շրջապատող միջավայրի հետ: Նման կոացերվատներն ակադեմիկոս Ալեքսանդր Իվանովիչ Օպարինը պայմանականորեն անվանել է «պրոտոբիոնտներ», այսինքն՝ նախակենսաձևեր: Վերջիններս չնայած համեմատաբար ավելի բարդ սիստեմներ են և ավելի են մոտենում բջիջների ստացիոնար վիճակին, քան պարզ կոացերվատային կաթիլները, դրանք, այնուամենայնիվ, շատ ավելի պարզ են, քան ամենապարզ կենդանի էակները: Միայն հետագա զարգացման ընթացքում «նախասկզբնական բուլյոնում» առաջացած այդ պրոտոբիոնտները, կատարելագործվելով, կարող էին առաջացնել ամենասկզբնական կենսական ձևերը:

Սակայն, չնայած բնական գիտությունների զարգացման ներկայիս բարձր մակարդակին, գիտնականներին դեռևս չի հաջողվել, գոնե մոտավոր ձևով, վերակրկնել վերոհիշյալ զարգացումը և ստանալ այն կենսական ձևերը, որոնք կարող էին առաջանալ պրոտոբիոնտներից: Կուտակված փորձերը հնարավորություն են տալիս միայն մեծ հավանականությամբ պատկերացնելու զարգացման այն ուղին, որն անցել են պրոտոբիոնտները մինչև նախնական կենսաձևերի առաջացումը: Այդ երևույթն ընթացել է նրանց կատարելագործման ճանապարհով. պրոտոբիոնտները ենթարկվել են, այսպես ասած՝ նախակենսական բնական ընտրության. ժամանակի ընթացքում, արտաքին միջավայրի փոփոխված պայմաններին համապատասխան, իրենց գոյությունը պահպանում էին այն պրոտոբիոնտները, որոնցում սինթեզը գերակշռում էր տրոհման պրոցեսներին և նման սիստեմների մեխանիկական տրոհման ժամանակ առաջանում էին նման հատկություններով օժտված «դուստր» պրոտոբիոնտներ:

Այսպիսով, աստիճանաբար, իրենց գոյությունը պահպանում էին ավելի կատարելագործված սիստեմները: Կատարելագործման ընթացքում կարևոր դեր էին խաղում կատալիզատորները, որոնք զարգացման սկզբնական շրջանում անօրգանական կամ պարզ օրգանական միացություններ էին (երկաթ, պղինձ, կալցիումի աղեր, մեթիլամին և այլն): Սակայն, երբ վերջիններս տարբեր օրգանական միացությունների հետ առաջացնում են որոշակի կոմպլեքսներ, ապա դրանց կատալիզող հատկությունը բազմապատկվում է: Այսպես, երբ երկաթը մտնում է ջրածնի պերօքսիդը տարրալուծող կատալազաֆերմենտի կազմի մեջ, նրա ակտիվությունն աճում է մոտ 10 միլիոն անգամ. այս դեպքում 0,001 գ երկաթի կատալիզող հատկությունը հավասարվում է 10 տոննա երկաթի այդ հատկությանը: Եթե առաջացած կատալիզատորը նպաստում էր պրոտոբիոնտների դինամիկ կայունությանն ու աճին, ապա նման սիստեմները, լինելով ավելի հարմարված, պահպանում էին իրենց գոյությունը և շարունակում զարգանալ ու կատարելագործվել, իսկ միջավայրի պայմաններին քիչ հարմարվածներն աստիճանաբար ոչնչանում էին: Այսպիսով, կատալիզատորների հնարավոր սինթեզը պրոտոբիոնտներում խոշոր քայլ պետք է հանդիսանար աստիճանական զարգացման ընթացքում:

Կատալիզատորների առկայությունն այդ համակարգերում ստեղծում է նրանց գոյության պահպանման հնարավորություն միջավայրի համեմատաբար աղքատ պայմաններում, աստիճանաբար առաջացնելով ավտոտրոֆ հատկություն, այսինքն՝ սնընդարար նյութեր սինթեզելու ունակություն՝ ի հաշիվ արտաքին միջավայրից կլանված միացությունների:

Պրոտոբիոնտների հետագա զարգացումը կապված էր նյութափոխանակության բարդացման և բազմազանության հետ, որոնք իրենց հերթին պահանջում էին ավելի կատարելագործված կատալիզատորներ, ինչպիսիք են ֆերմենտները, որոնք խիստ մասնագիտացված են այս կամ այն ռեակցիայի համար: Սակայն ֆերմենտների առաջացումը պայմանավորված էր սպիտակուցների սինթեզով, քանի որ բոլոր ֆերմենտների կազմի մեջ մտնում է սպիտակուց և այն էլ խիստ որոշակի մոլեկուլյար և տարածական կառուցվածքով:

Բիոքիմիայի ժամանակակից նվաճումները հնարավորություն են ընձեռում պատկերացնելու սպիտակուցի սինթեզի պրոցեսը կենդանի օրգանիզմներում: Պարզվել է, որ դա չափազանց բարդ երևույթ է, որին մասնակցում են տարբեր ենթաբջջային կառուցվածքներ՝ քրոմոսոմներ, ռիբոսոմներ, ինչպես նաև առանձին նյութեր՝ նուկլեինաթթուներ, ամինաթթուներ, ֆերմենտներ և այլն: Ըստ որում, սպիտակուցի սինթեզը պայմանավորված է բազում ռեակցիաների խիստ որոշակի հաջորդականությամբ ու փոխկապվածությամբ: Հետևապես սպիտակուցների սինթեզը— այդ կատարելագործված ու բարդ մեխանիզմը, չէր կարող գոյություն ունենալ պրոտոբիոնտներում, որոնցում բացակայում էին որոշակի բջջային կառուցվածքը և անհրաժեշտ այլ պայմաններ: Միաժամանակ կուտակված փաստերն այժմ հնարավորություն են տալիս որոշակի գաղափար կազմելու սպիտակուցային սինթեզի «ապարատի» աստիճանական կատարելագործման մասին:

Ինչպես վերը նշեցինք «նախասկզբնական բուլյոնում» և կոացերվատային կաթիլներում աբիոգեն ճանապարհով կարող էին սինթեզվել ամինաթթուներ, պոլինուկլեոտիդներ և այլն: Վերջիններս, մասնակցելով սպիտակուցի սին-

թեզին, պայմանավորում են ամինաթթուների որոշակի հաջորդականությունը սինթեզվող պոլիպեպտիդներում (սպիտակուցների նախնական կառուցվածքում):

Սակայն նման պրոտոբիոնտների գոյությունը և հետագա զարգացումը պետք է պայմանավորված լիներ նրանով, թե սինթեզված պոլիպեպտիդները արդյոք կատալիզատորի դեր կկատարե՞ն, թե՞ ոչ: Բնական ընտրության պրոցեսում ոչնչանում են այն համակարգերը, որոնցում սինթեզված պոլիպեպտիդները չեն նպաստում այս կամ այն ռեակցիայի ընթացքին: Ուստի, հետագայում արտաքին միջավայրի փոփոխման զուգընթաց առաջանում և իրենց գոյությունը պահպանում են այն պոլիպեպտիդները, որոնք առավելագույն չափով են նպաստել նյութափոխանակության այս կամ այն պրոցեսին:

Այսպիսով, աստիճանաբար սինթեզվում են այնպիսի կատալիզատորներ՝ ֆերմենտներ, որոնք օժտված են որոշակի ռեակցիաների խթանման չափազանց մեծ ակտիվությամբ: Պետք է նշել նաև, որ ժամանակակից օրգանիզմներում սինթեզվող ֆերմենտները չի կարելի նույնացնել նախկինում սինթեզված ֆերմենտների հետ, քանի որ զարգացման ընթացքում խիստ կատարելագործվել ու փոփոխվել է սպիտակուցի սինթեզը, որի շնորհիվ առաջանում են բազմաթիվ նոր, ավելի «կատարելագործված» ֆերմենտների մոլեկուլներ: Ուրեմն, կոացերվատների համեմատաբար ոչ-կայուն կաթիլներից աստիճանաբար գոյանում են արտաքին միջավայրին ավելի հարմարված, տարածականորեն կայուն ու շարժուն համակարգեր: Ահա այս գոյացումներն են այն առաջնային ձևերը, որոնք միլիոնավոր տարիների ընթացքում առաջացել են մեր մոլորակի վրա անկենդան նյութերի աստիճանական ձևափոխումների հետևանքով, և որոնց կառուցվածքն ունակ է կատարելու կենդանի օրգանիզմներին բնորոշ որոշակի կենսական ֆունկցիաներ: Այս գոյացումների հետագա կատարելագործումն ու բարդացումը հանգեցրին մատերիայի նոր որակի՝ կյանքի առաջացմանը:

Այսպիսով, միլիոնավոր տարիների ընթացքում անօրգանականից օրգանական նյութերի առաջացման, նրա հետագա բարդացման զանազան մոլեկուլյար համակարգերի (կոացերվատների) ու վերջիններիս արտաքին միջավայրի պայմաններին համապատասխան, աստիճանական ձևափոխությունների ու կատարելագործման ճանապարհով առաջանում են նախնական կենսաձևերը: Սակայն դրանք իրենց կառուցվածքով շատ ավելի պարզ էին, քան ժամանակակից պարզագույն ձևերը: Բավական է նշել, որ նրանք դեռ չունեին կազմակերպված բջջային կառուցվածք:

Կենդանի նյութից բջիջների գոյացման համար դարձյալ պահանջվել է բազմապիսի ձևափոխումներով ու կատարելագործումներով հարուստ մեծ ժամանակաշրջան: Կենդանի նյութի հետագա զարգացման կարևորագույն փուլը բազմաբջիջ օրգանիզմների առաջացումն է, որի զարգացումը հանգեցրեց այժմ մեր մոլորակի վրա գոյություն ունեցող կենդանական աշխարհի հսկայական բազմազանությանը:

Այս բոլորի մասին հարուստ փաստական տվյալներ են տալիս էվոլյուցիոն և համեմատական բիոքիմիան, պալեոնտոլոգիան, երկրաբանությունը և այլ գիտություններ:

**Հնարավո՞ր է արդյոք այժմ կյանքի նախասկզբնական ծագումը երկրի վրա:** Ժամանակակից կենսաբանությունը բացասաբար է պատասխանում այս հարցին, քանի որ այժմ գոյություն չունեն այն պայմանները, որոնք նպաստեցին մատերիայի՝ վերը նկարագրված զարգացմանը: Բացի այդ, կյանքի առկայությունը երկրի վրա արդեն բացասում է էվոլյուցիայի այն ուղին, որն անցել է օրգանական նյութը հեռավոր ժամանակներում: Դեռ իր ժամանակին Դարվինն այս կապակցությամբ ասել է. «...եթե քիմիապես առաջանար սպիտակուցային նյութ, որն ունակ լիներ հետագա բարդ ձևափոխումների, ապա այժմ այդպիսի միացությունը կկլանվեր, իսկ կենդանի էակների ծագմանը նախորդող ժամանակաշրջանում այդ չէր կարող տեղի ունենալ»:

Մեր մոլորակի վրա կյանքի ծագման մասին այս պատկերացումը ամենատարածվածն է, մոտ քառասուն տարվա պատմություն ունի և ստեղծվել է ակադեմիկոս Ա. Ի. Օպարինի և նրան համախոհ սովետական գիտնականների դպրոցի կողմից: Այս տեսակետը դեռևս կարիք ունի փորձնական ապացուցման և հետագա լրացումների: Բնական գիտությունների՝ վերջին տարիների աննախընթաց զարգացումն ավելի մեծ հնարավորություն է ընձեռում կյանքի ծագման հարցի պարզաբանման համար: Ինչպես Օպարինն է նշում, հեռու չէ այն ժամանակը, երբ հնարավոր կլինի արհեստական պայմաններում վերարտադրել կյանքի պարզագույն ձևերը:

**Լ. Ս. ՄԱՐԿՈՍՅԱՆ**
**Կենսաբանական գիտությունների թեկնածու**

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ԳԱՅԸ ԲԱՆՎՈՐ ԹՂԹԱԿԻՑ

Հայկ Բժշկյանը՝ Գայը, «Բանվոր Հայկ» ստորագրությամբ բազմիցս հանդես է եկել բաց մամուլում, արտահայտելով հեղափոխական համարձակ մտքեր: Բաքվում բանվորություն անելու օրերից սկսած, 20—21 տարեկան Հայկը մեծ եռանդով թղթակցել է Բաքվի, Թիֆլիսի, Աստրախանի հայատառ թերթերին, բանվորների համար գրելով բազմազան կենսական խնդիրների մասին:

Թերթերից շատերի կոմպլեկտները չկան կամ լրիվ չեն, և Հ. Բժշկյանի՝ հատկապես Բաքվում հրատարակվող թերթերում տպագրված թղթակցությունները չեն պահպանվել կամ առայժմ չեն գտնվել: Բաքվի «Անիվ» թերթում տպագրված նրա թղթակցություններից հայտնի է միայն «Փոքրիկ տզրուկները» հոդվածը (1908 թ., №№ 15 և 17), Թիֆլիսի «Ծավիղ» թերթում՝ «Կապիտալիզմի զոհերը» (1907 թ., № 8): Սակայն միայն Աստրախանի «Լրաբեր» թերթի 1908—1909 թթ. համարներում «Բանվոր Հայկ» ստորագրությամբ տպագրված թղթակցությունները լրիվ պատկերացում են տալիս քաղաքացիական պատերազմի այդ նշանավոր հերոսի հեղափոխական մտածելակերպի ձևավորման պրոցեսի մասին: Նրա թղթակցությունները կոնկրետ են, սերտորեն առնչված Բաքվի պրոլետարիատի կյանքին ու պայքարին:

Հ. Բժշկյանի առաջին թղթակցությունները «Լրաբերում» լույս են տեսել 1908 թ. հունիսի 22-ին **«Մանթաշյան» բանվորների գործադուլը և Ներկա կացությունը** վերնագրերով: Մանթաշյանների ֆիրմայում գործադուլը տևում է 40 օր, բայց նրան մասնակցում էին ոչ բոլոր բանվորները (400 հոգուց 180-ը): Թղթակիցն ընդգծում է, որ գործադուլի անհաջողության պատճառը անկազմակերպվածությունն է, միասնության բացակայությունը. բանվորների մի մասն էր համամիտ առաջադրված պահանջներին, ուստի և ադմինիստրացիան մերժում է գործադուլավորների պահանջները և երբ համաձայնում է միայն բանվորների աշխատավարձն ավելացնել ամսական մեկ ռուբլով, գործադուլավորները տեղի են տալիս և աշխատանքի անցնում,— ցավով նշում է Բանվոր Հայկը:

Երկրորդ հոդվածում, խոսելով 1905—6 թթ. հեղափոխության վերելքից հետո սկսված ռեակցիայի մասին, նկարագրում է անկազմակերպ, մանր գործադուլների անհաջողությունը, բացատրում դրա պատճառները: «Բանվոր Հայկը» մերկացնում է «նացրադնոյ», «ֆուտավոյ» և «տոկոսային» վճարումների կարգը՝ որպես շահագործման քողարկված մի նոր միջոց: Ապացուցելու համար իր տեսակետի ճշտությունը, նա բերում է «Տեր-Հակոբյան ընկերության» օրինակը: Միջնորդ պարոն Ս-ի միջոցով բանվորներին տոկոս խոստանալով, ընկերությունն ստացավ լրացուցիչ մեկ միլիոն փութ նավթ. մինչդեռ բանվորներին տրված տոկոսը միայն 6000 ռուբլի էր:

«Լրաբերի» 1908 թ. № 10-ում **Համագործակցական (կոոպերատիվ) սպառողական խանութների անհրաժեշտությունը մեզանում** հոդվածում Հ. Բժշկյանը գրում է. «Բանվորության տգիտությունից օգտվելով նրան շահագործում են ամենքը... սկսած բուրժուայից մինչև սրանց առաջ խունկ ծխող «դիպլոմավոր» լաքեյները, սկսած իժի ախորժակ ունեցող կապալառուներից մինչև կոկորդիլոսի արցունքներ թափող խանութպանները, սկսած անհոգի վաշխառուներից մինչև անխիղճ հողատերերը և վարձով սենյակ տվողները»:

Ամսական աշխատավարձ ստանալով, բանվորն ստիպված մանր խանութպաններից «զաբոռնի» գրքույկներ է վերցնում ու պարտք

անում մինչև մյուս աշխատավարձը, խանութպանների ձեռքին զենք է դառնում այդ՝ բարձր գներով իրացնելու փչացած մթերքները: Այդ վիճակից դուրս գալու համար հոդվածագիրը կոչ է անում բանվորներին՝ միավորվել կոոպերատիվների մեջ, անդամագրվել «Труд» սպառկոոպին:

Նույն տարում «Լրաբերի» № 34-ում Բանվոր Հայկը **Հակաբանվորական մի քայլ** հոդվածում խիստ դատապարտում է հայ նացիոնալիստներին, որոնք խանգարում են հայ բանվորներին՝ անդամագրվելու «Труд»-ին, որն ինտերնացիոնալ կազմ ունի:

«Լրաբերի» չորս համարներում (26, 27, 30, 31) տպագրված **Բանվորների առողջապահությունը** հոդվածաշարի նպատակն էր պատկերել Բաքվի և, մասնավորապես, Բալախանիի բանվորների վիճակը: Հայկական ազատամիտ մամուլում այդ տարիներին բավական առատ են բանվորության տնտեսական, առողջականկենցաղային և կուլտուրական ծանր վիճակն արտացոլող հոդվածներն ու ուսումնասիրությունները: Սակայն Բժշկյանի հոդվածներն առանձնապես տպավորիչ էին, քանի որ դրանք արտացոլում էին Բալախանիի ընկերների դըժվարին, դառնություններով լի կյանքը: Որքա՜ն ցավ, մտատանջություն կա նրա հետևյալ տողերում. «Երբ չորս կողմս տեսնում եմ մեր հանրակացարանների ամենակեղտոտ, ցածր, նեղ և մութ պատերը, երբ մտաբերում եմ մեր աշխատանքի անհանդուրժելի պայմանները, երբ նկատի եմ ունենում մեր շրջապատի գարշահոտությունը, կեղտոտ ջրերի վազքը, աղբակույտերը, մեր ցնցոտիներում փաթաթված ոսկրացած մարմինները, մեր սնունդը, դալկացած դեմքերը, անգործների մոտ 8—10 հազարանոց անոթի բանակը և վերջապես մեր նիհար, համարյա թե դատարկ քսակը, այն ժամանակ ինձ թվում է, որ բժիշկները կա՛մ խելագար են, կա՛մ թե ծաղրում են մեր թշվառությունը իրենց կանոններով ու խրատներով»:

Նա գրում է, որ վատ սննդից բացի, բանվորների առողջության վրա բացասաբար է անդրադառնում կանոնավոր հանգստից ու քնից զրկված լինելը՝ նավթահանքերում արմատավորված փոփոխվող հերթափոխության պատճառով: Ամբողջ Բաքվում, նավթահորերի շրջանում մթնոլորտը հագեցած է ածխաթթու գազով (սովորական 0,03 տոկոսի փոխարեն մինչև 1 տոկոս), որի հետևանքով տարածված են թոքային հիվանդությունները, մանավանդ թոքախտը: Հոդվածում հետաքրքրական տըվյալներ են բերվում Բաքվի բանվորների թվի, կազմի, տարիքի, կյանքի տևողության, դըժբախտ դեպքերի մասին:

Խոսելով նրանց կրթական ու կուլտուրական ցածր մակարդակի և այն բարձրացնելու անհրաժեշտության մասին, հոդվածագիրը հիշատակում է, որ Բալախանիում կա ընդամենը երկու երեկոյան դասընթաց հասակավոր բանվորների համար: Բայց 1908 թ. Նավթային խորհրդի անդամները ծախսերը կրճատելու նպատակով կրճատել են և խմբերի թիվը:

Այդ հոդվածում Հ. Բժշկյանը Ստեփան Շահումյանի մասին գրել է.

«Անցյալ տարի, երբ Բայիլ և Սև-քաղաք արվարձաններում գտնվող երկու ժողովրդական տների կառավարիչն էր Ս. Շահումյանը, գոնե նրա օրով և նրա ջանքերով կարելի եղավ մի շարք հանրամատչելի դասախոսություններ կազմակերպել, իսկ թե ինչ դժվարություն և թույլտվության իրավունք ստանալու համար որքան նեղություն, չարչարանք կրեց հարգելի ընկերը, այդ արդեն իրեն է հայտնի: Բայց այս տարվա համար Նավթային ընկ. խորհուրդը այդ ևս ավելորդ գտնելով, խափանեց այդ պաշտոնը, հեռացնելով անխոնջ և ժրաջան ընկերոջը»:

Հանգամանորեն խոսելով բանվորների մտավոր ու ֆիզիկական զարգացման արգելքների մասին՝ Հ. Բժշկյանը գրում է, որ զանազան բարեգործական, մարդասիրական, առողջապահական միջոցառումները չեն կարող բուժել աշխատավորության ցավոտ վերքերը: Հետևանքները մեղմացնելով, ցավը հանդարտեցնելով չի բուժվում խոցը, հետևապես, եզրակացնում է հոդվածագիրը՝ «պետք է արմատապես բարեփոխել նախ քաղաքական և ապա տնտեսական ներկա իրավակարգը... իսկ այդ բանը ձեռք բերելու համար հարկավոր է ուժ, կազմակերպված սերտ միացած ուժ...»:

Հոդվածի վերջում նա ընդգծում է, որ երեխաների մահացությունը, եվրոպական երկրների համեմատությամբ, շատ մեծ է Ռուսաստանում: «Այդ բացատրվում է,— գրում է Բանվոր Հայկը,— ժողովրդի տգիտությամբ և չքավորությամբ»: Զորակոչիկների մեջ զինծառայության համար ոչ-պիտանի ճանաչվածների տոկոսի բարձրացումը նա բացատրում է նրանով, որ «քիչ սնունդ ստանալով, բայց երկար ու լարված բանելով, կորցնում ենք մեր կենսական ուժերի մեծ պաշարը, այսպիսով լայն ճանապարհ բացում խոլերայի, ժանտախտի, թոքախտի, դիֆտերիայի և հազար տեսակ հիվանդությունների առաջ»: Իսկ դա հետևանք է այն բանի, որ դասակարգային ինքնագիտակցություն չունենք, որ միացած ու կազմակերպված չլինելով, չենք ստանում բավարար վարձ մեր աշխատանքի դիմաց: Բանվորական հիմնարկությունները, արհեստակցական միությունները, կոոպերատիվ ընկերակցությունները նա համարում է մեր ազգի առաջադիմության ա-



ռաջին քայլերը, այն «շավիղները, որոնք պարուրվելով քաղաքական մեծ կռվի հետ, մեզ պիտի տանեն մարդկության երջանիկ ապագան, դեպի սոցիալիզմը...»:

Հետաքրքրական է **Թուրք (համշարի) պրոլետարների կյանքից** թղթակցությունը («Լրաբեր, 1908 թ., № № 32, 33):

Բաքվում աշխատող մահմեդական բանվորների զգալի մասը, ասվում է հոդվածում, Պարսկաստանից եկած թուրք (ադրբեջանցի) գյուղացիներ են («համշարիներ»), որոնք չեն ձգտել ակտիվ մասնակցել Բաքվի բանվորության ազատագրական շարժումներին: Այդ պասիվության, պահպանողականության պատճառը հոդվածագիրը համարում է «համշարի» բանվորների ծայրահեղ խեղճությունը, ճնշվածությունը, սակավապետությունը, տգիտությունն ու նախապաշարվածությունը: Հիշատակելով, որ ինքը ևս «համշարի» է՝ պարսկաստանցի, լավ ծանոթ Ատրպատականի մահմեդական գյուղացիների նիստ ու կացին, վարք ու բարքին, նրանց տգիտության, մտավոր սահմանափակության և մոլեռանդության պատճառը համարում է ֆանատիկ կրոնավորների մեծ ազդեցությունը:

Հետամնացության արդյունք է հիմնականում տնտեսական ու իրավական այն դրությունը, ամենաթշվառ, բառիս բուն նշանակությամբ ստրացիկ այն կյանքը, որի մեջ դեգերում է թուրք ռանչպարը: Խաների, աղալարների, գյուղապետների ու մոլլաների կողմից շահագործված, սնանկացած, պարտքերի մեջ խըրված գյուղացին, չունենալով պաշտպան ու հովանավորող, ձեռքն է առնում պանդխտության ցուպը և ոտքով հարյուրավոր վերստեր կըտրելով, գցում իրեն Բաքու, համաձայնելով աշխատել ամենածանր պայմաններում և ամենացածր աշխատավարձով, որը, համենայն դեպս, անհամեմատ ավելի լավ է, քան նրանք կարող էին վաստակել Պարսկաստանում, եթե, իհարկե, աշխատանք գտնեին: Այդ «համշարիներն» են, որ Բաքվում համաձայնում են աշխատել «Նավթի չաներում, ամալայի ամբարներում, ցեխերի մեջ, փչացած գազային օդում, արտաքնոցներում»:

Միաժամանակ Բաքվում աշխատող ռուս, հայ և այլ ազգությունների բանվորները համշարիներից միջին հաշվով կրկնակի ավելի մեծ աշխատավարձ են ստանում: Ինտերնացիոնալիստ հեղինակը լավատես է և ցանկանում է թուրք բանվորների վիճակի բարելավում: Այստեղ արտահայտված է նրա ջերմ համակրանքը նոր ծնունդ առած սոցիալ-դեմոկրատական «Հյումմեթ» կազմակերպության նկատմամբ: Նա հույս է հայտնում, որ «Թուրք ընկերները ոչ հեռու ապագայում պատռելով տգիտության քողը, ազատվելով կրոնական մշուշից, դասակարգային դրոշը պիտի պարզեն, խտացնելով մեր շարքերը նորանոր կենսունակ տարրերով, որի առթիվ հուրախություն մեզ գոչում ենք՝ թո՛ղ ապրի թուրք հանուր պրոլետարիատը իր դեռևս ծաղիկ սոցիալ-դեմոկրատական «Հյումմեթ» խմբով»:

Հաջորդ նամակաշարը նավթաշխարհից տըպագրված է «Լրաբերի» 1909 թ. 4—10 համարներում և վերնագրված է **Բանվորական պրոֆեսիաները և նրանց մտավոր, տնտեսական դրությունը:**

Այդ տարիներին Բաքվի նավթարդյունաբերող բանվորների թիվը 46 հազարի էր հասել, աշխատում էին հարյուրավոր նավթահորեր, արդյունահանվում էր գլխավորապես սև ու սպիտակ նավթ, մասնավորապես՝ մեքենայի յուղ, ձյութ, գուդրոն:

Նավթաշխարհի բանվորությունը հեղինակը բաժանում է 3 մեծ խմբի՝ արհեստավորություն, հորատողներ, նավթարդյունաբերության մեջ անմիջապես աշխատող բանվորներ:

Այնուհետև, ըստ այդ խմբերի, թվարկվում են նեղ պրոֆեսիաները, նկարագրվում դրանցից յուրաքանչյուրի աշխատանքի բնույթն ու դըժվարությունները, աշխատավարձի չափերը, տնտեսական, կուլտուրական կենսապայմանները, բանվորների ազգային կազմը և այլն:

Հեղինակը գնահատում է արհեստավոր բանվորների ակտիվ մասնակցությունը բանվորական շարժմանը, նրանց ղեկավար դերը գործադուլների և ապստամբությունների ժամանակ: Այստեղ նա քննադատում է ձեռնարկատերերի մտցրած հավելյալ վարձատրության «նագրադնոյ», «փուտովոյ» կոչված ձևերը՝ որպես կապիտալիստների շահույթի տոկոսի բարձրացման աղբյուր: Հոդվածի վերջում նկարագրվում են սև բանվորների (որոնցից էր և ինքը՝ Բանվոր Հայկը) աշխատանքի ծանր պայմանները:

**Նավթարդյունաբերող բանվորների արհեստակցական միությունը Բաքվում** հոդվածում («Լրաբեր», 1909 թ., № № 10, 11, 12) Բանվոր Հայկը գտնում է, որ «1905 թվի հեղափոխական շարժման արդյունքներից մեկն է և արհեստակցական միություններ կազմելու «ազատ» իրավունքը, որից չկլացավ օգտվել չորրորդ դասակարգը՝ պրոլետարիատը»:

«Բանվորության իսկական բարեկամները,— շարունակում է նա,— ուժեղ պրոպագանդա մղեցին Բաքվի բանվորության մեջ հօգուտ մի ընդհանուր արհեստակցական միության, որն իր մեջ պիտի պարունակեր այն բանվորներին, որոնք կապված են նավթի արտահանման հետ»: Այդ եռանդուն աշխատանքը տվեց իր

միջոցով աշխատավորության ուշադրությունը շեղելու սոցիալական հրատապ խնդիրներից։ Չկարողանալով բացատրել կապիտալիստական իրականության արատները, կյանքի տենդագին ռիթմը, ընդհանուր խախտվածությունը, ահավոր պատերազմները, սոցիալական ցնցումները, խորացող հակասությունները, բուրժուական աշխարհի որոշ արվեստագետներ ապաստան գտան երևակայության ոստայնում։ Մեծ նշանակություն ունի նաև հոգևոր միջավայրը, որտեղ կուտակված սոցիալական փորձը, վերածվելով որոշիչ ուժի, ազդում է անձի ձևավորման վրա։

Այստեղ էական է էսթետիկական գործոնը, որը հաճախ տարերայնորեն մերժում է միապաղաղությունը, գորշությունը, նատուրալիստական պատճենավորումը։ Արվեստագետների համար դրանք ևս դառնում են աբստրակցիոնիստական հնարքներով հրապուրվելու պատճառ։ Դեպի աբստրակցիոնիզմը տանող ուղիներն ու պատճառները տարբեր են, բազմազան։ Արվեստագետի՝ այդ ուղղությանը հարելու դրդապատճառները ոչ միշտ են սոցիալական, այստեղ ոչ պակաս նշանակություն ունեն նրա անձնական կենսափորձը, հակումները, հոգեկան աշխարհը, իրականության գեղագիտական ընկալման սեփական երանգը։

Գործնականում իրականությունից, կյանքից, նրա առօրյա հրատապ քաղաքական խնդիրներից հեռանալու աբստրակցիոնիստական նկրտումները ձեռնտու են միայն բուրժուազիային։ «Մի՞թե,— ասում է Լուի Արագոնը,— մեր բոլոր հիանալի պատնեշներ խորտակողները, էսթետիկայում մեր կռվասերները, մեր երևակայելի խռովարարները չեն զգում՝ ո՞վ է իրենց կառավարում։ Մի՞թե նրանք չեն տեսնում՝ ո՛վ է իրենց հավանություն տալիս, խրախուսում, ով է արգելե նրանց դավաճանել։ Մի՞թե նրանք այդպես էլ չեն հասկանում, որ ամենևին չեն անում այն, ինչ ուզում են, այլ այն, ինչ նրանցից են ուզում»։

Զգտելով մեկուսանալ իրականությունից, աբստրակցիոնիստները հասնում են միայն սուբյեկտիվ ոլորտի աղքատացման, խեղաթյուրման, եթե ոչ նրա ոչնչացման։ Կյանքից հեռանալը չի կարող հարստացնել անձնավորության աշխարհը, քանի որ մարդու էությունը հասարակական հարաբերությունների միագումարն է։ Անձնավորության ներքին հարստությունը պայմանավորված է արտաքին աշխարհի հետ ունեցած կապերով։ Վերանալով օբյեկտիվ աշխարհից, նրանք անխուսափելիորեն վերանում են իսկական անհատականությունից, զրկելով իրենց արվեստը գեղարվեստական լիարժեք բովանդակությունից։ Կյանքից մեկուսանալը չի նշանակում, թե նրանք բացարձակապես են կտրվում իրականությունից։ Սակայն այդ կապը թույլ է, հեռու իրականությունն արտացոլելու միտումից։ Միակողմանիորեն բացարձակացնելով դեֆորմացիան և այն ներկայացնելով որպես արվեստի միակ ու պարտադիր սկզբունք, նրանք փաստորեն աղավաղում են գեղարվեստական ճանաչողությունը։ Աբստրակցիոնիզմն այն սահմանն է, որին անխուսափելիորեն մղում է ֆորմալիզմի ներքին տրամաբանությունը։

**Աբստրակցիոնիզմը և պատկերման ու արտահայտման փոխհարաբերությունն արվեստում** գլխում լուսաբանված են գեղարվեստական ստեղծագործության գեղագիտական-ճանաչողական հնարավորությունները, այդ առնչությամբ բացահայտված են վերացական արվեստի արատները։

Բնական է, որ արվեստում պատկերման ու արտահայտման փոխհարաբերության պրոբլեմը՝ վաղուց ի վեր հետաքրքրում է արվեստագետներին ու տեսաբաններին։

Աբստրակցիոնիստների ստեղծագործություններն անհնար է սովորականի պես վերլուծել, որովհետև դրանց մեջ չկան ո՛չ որոշակի բովանդակություն, ո՛չ ուղղակի ձև։ Դրա համար ճիշտ է նկատում հեղինակը՝ առանց իրոնիայի անհնար է կարդալ աբստրակցիոնիզմի տեսաբանների վերամբարձ դատողությունները գեղարվեստական արժանիքներից զուրկ ստեղծագործությունների մասին։ Այսպիսով, աբստրակցիոնիստ նկարը քննադատի համար նույնպիսի առիթ է «ինքնարտահայտման», ինչպես մաքուր կտավը՝ նկարչի «ինքնարտահայտման»։ Դրան նպաստում է նկարում օբյեկտիվ բովանդակության և վերջինիս գնահատման օբյեկտիվ չափանիշների բացակայությունը։

Հայտնի է, որ պատկերումն անմիջական արտացոլումն է, առաջնայինը, իսկ արտահայտչականությունը միջնորդավորված է, ածանցյալ։ Արվեստի ստեղծագործությունն այն ժամանակ է արտահայտիչ, երբ հաղորդում է ավելին, քան պատկերված է։ Սակայն արվեստի յուրաքանչյուր տեսակում պատկերումն ու արտահայտչականությունը յուրովի են դրսևորվում։

Արվեստում պատկերելուց հրաժարվելը աբստրակցիոնիզմի կողմնակիցները փորձում են կապել լուսանկարչության հետ։ Բայց արվեստի արտացոլման շրջանակներն ընդգրկում են ավելի լայն հասարակական խնդիրներ և չեն սահմանափակվում հուշագրային ֆունկցիայով։ Միայն հուշագրային նպատակներով օգտագործվելիս ստեղծագործությունը գեղագիտական արժեք է ներկայացնում, երբ զուգորդվում է գեղարվեստականի հետ, ավելի ճիշտ՝ բարձրացվում վերջինիս աստիճանին։ Հակառակ դեպքում, ստեղծվածը բնորդի թույլ պատճենն է, հեռու իսկական արվեստից։

**Աբստրակցիան, արվեստը և աբստրակցիոնիզմը** գլխում շարադրված են աբստրակցիայի կիրառման եղանակներն արվեստում ու գիտության մեջ, վերլուծական հիմնավորվածությամբ քննադատված է աբստրակցիոնիզմն այս բնագավառներում։ Հայտնի է աբստրակցիոնիստների դեկլարացիան, թե իբր իրենց արվեստը, մերձենալով ժամանակակից գիտությանը, ընդլայնում է իր ճանաչողական հնարավորությունները։ Կան նաև հակառակ տեսակետներ, թե գիտությունն ու արվեստը հակոտնյա են։ Բուրժուական առանձին տեսաբաններ հանգում են մտացածին եզրակացությունների, թե իբր արվեստի ու գիտության զարգացման միջև գոյություն ունի հակադարձ համեմատություն, որի հետևանքով արվեստի զարգացման բարձր մակարդակը ենթադրում է գիտության ցածր մակարդակ և հակառակը։ Ամերիկացի փիլիսոփա Ցեյբլեմը, փորձելով բուրժուական արվեստի ճգնաժամը բացատրել գիտության զարգացմամբ, գրում է. «Գիտության գերիշխանության դարում արվեստագետներին արհամարհանքով են վերաբերվում, արվեստն անտեսվում է։ Գիտությունը թշնամի է արվեստին, այժմ գիտական ճշմարտության որոնումներն ունեն այն նշանակությունը, ինչ առաջ ունեին գեղեցկության որոնումները»։

Անտեսելով, որ արվեստի անկման պատճառը կապիտալիստական հասարակական հարաբերություններն են և ոչ թե գիտությունը, նշված տեսակետի կողմնակիցները գիտության ու արվեստի կապն ըմբռնում են նեգատիվ ձևով. հայտարարելով, թե գիտությունը թշնամի է արվեստին՝ նրանք անտեսում են դրական փոխազդեցությունը դրանց զարգացման ընթացքում։

Այս գլխում հանգամանորեն լուսաբանված է աբստրակցիայի գիտատրամաբանական էությունը, քննարկված են աբստրակցիայի ձևավորման ուղիներն ու եղանակները։ Միաժամանակ բացահայտված ու արժեքավորված են գեղարվեստական աբստրակցիայի, գեղագիտական կատեգորիաների առանձնահատկությունները։ Իմացաբանական առումով հայեցման կերպարն իրենից ներկայացնում է ճանաչողության պրոցեսի սկզբնական փուլը, իսկ գեղարվեստական կերպարն արվեստում՝ նրա որոշակի արդյունքը։

Դրանցից առաջինն ունի միայն զգայական բովանդակություն, այնինչ երկրորդը, բացի դրանից, ընդգրկում է նաև ոչ զգայական բովանդակություն, հանդիսանում այս երկուսի սինթեզը։ Հայեցողության կերպարը, որպես մարդու զգայական օրգանների միջոցով իրականության անմիջական արտացոլում, սուբյեկտիվ է և իդեալական, հայեցման համար անհնար։ Գեղարվեստական կերպարը, որպես արտացոլման անդրադարձում, որպես իրականության միջնորդավորված արտացոլում, սուբյեկտիվի օբյեկտիվացումն է, նյութականացված իդեալականը. այն իրականության նոր փաստ է՝ ունակ ուրիշ օբյեկտների նման արտացոլելու իրականությունը և իր ընկալման ժամանակ ծնելու հայեցողության նոր օբյեկտներ։ Բայց այստեղ ի հայտ է գալիս էական տարբերություն գեղարվեստական կերպարի զգայական բնույթի և նախակերպարի միջև։ Երկրորդում այդ հատկանիշներն առարկայական են, իսկ առաջինում արտացոլված են առարկայի նյութականացված հատկանիշները։ Գեղարվեստական կերպարն իրականության զգայաբար ընկալվող կերպարի սեռումն է և օբյեկտիվացումը։ Այն ստեղծում է որոշ զգայական առարկաների նմանվելու պատրանք։ Այդ կապակցությամբ գեղարվեստական կերպարը ենթարկվում է նույն օրինաչափությանը, ինչ և հասկացությունը։ Հասկացությունը մարդուց օտարված արտացոլման ձև է, որը խոսքի շնորհիվ ստացել է ինքնուրույն կեցություն և դրա համար ընկալման ժամանակ ներառել զգայական տարրը՝ խոսքի կերպարը։

Խոսքը ինչ-որ չափով նյութական է և ընկալվում է զգայությունների միջոցով։ Սակայն այն նյութականացնում է միայն արտացոլված մտքի բովանդակությունը։ Գեղարվեստական կերպարը դրանից տարբերվում է նրանով, որ նյութականացնում, հետևապես ընկալման համար մատչելի է դարձնում նաև արտացոլվածի զգայական բովանդակությունը։ Խոսքում զգայական մոմենտը ֆունկցիոնալ տեսակետից անհամեմատ համեստ տեղ է գրավում, քան գեղարվեստական կերպարում, որտեղ զգայականը սովորաբար կապված չէ արվեստի տեսակներում օգտագործվող նյութին, այլ այդ նյութում մարմնավորված առարկայական աշխարհի զգայական կերպարին՝ բեկված արվեստագետի ընկալման պրիզմայի միջոցով։ Ինչպիսի աբստրակցիա էլ լինի արվեստում, այն պետք է բխի իրականության զգայաբար ընկալվող կողմերից ու հատկություններից և չի կարող ուղղակի անվանակոչվել։ Գաղափար-կերպարը սպեցիֆիկ է գեղարվեստական ստեղծագործության համար, որտեղ աբստրակցիոնիստները չեն կարող հանդես գալ կերպարային ձևից դուրս։

Աբստրակցիան արվեստում կարող է տեղ գտնել և դառնալ գեղարվեստական կերպարի բովանդակություն միայն այն չափով, որչափով ունակ է ձևափոխելու գեղարվեստական գաղափարը, այսինքն՝ միտքը, որը մարմնավորում է իրականության հանդեպ ճանաչողական ու գնահատող վերաբերմունք։ Առաջինը Հեգելն է նկատել. «Որպեսզի տվյալ ճշմարտությունը կարողանա դառնալ արվեստի իսկական բովանդակություն, պահանջվում է, որ նրա սեփական սահմանման մեջ հնարավոր լիներ անցում կատարել զգայականության ձևում, նրանում մնալով իրեն համապատասխան»։

Արվեստը, ճանաչելով իրականությունը, կատարում է ընդհանրացում, չի մերժում ընդհա-

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԽԱՐԴԱԽ ՄԵՏԱՂՆԵՐ

*Մետաղների ավելի քան 50 ընտանիքների ներկայացուցիչներ կան կենդանի օրգանիզմում, բնականաբար՝ չնչին քանակությամբ, որոնց առկայությունը, բիոլոգների կարծիքով, կարգավորում է վերահաս ծերությունը: Տարիքի հետ մետաղները կուտակվում են օրգանիզմում: Պղինձը, արծաթը, սնդիկը, կապարը ճնշում են ֆերմենտներին, զրկում նրանց ակտիվությունից, մարդն սկսում է վատ մարսել սնունդը: Ուրիշ մետաղներ «կարում են» կենդանի հյուսվածքի սպիտակուցային մոլեկուլներն առավել խոշոր բլոկներով: Հետևանքը լինում է այն, որ սպիտակուցները վատ են լուծվում և անբավարար են մասնակցում նյութափոխանակությանը:*

*Սովետական գիտնականներ Տ. Դուբինան և Վ. Լեոնովը գտնում են, որ եթե ստեղծվի այդ մետաղների ավելցուկը հեռացնող դեղամիջոց, հնարավոր կլինի հետաձգել օրգանիզմի ծերությունը: Մանավանդ որ հենց օրգանիզմում գոյություն ունեն ինչ-որ պահապան ուժեր, որոնք արգելակում են մետաղների արագ կուտակմանը:*

## ԱՆՁՐԵՎԸ ԵՎ ՔԱՄԻՆ

*Անձրևասարքերը՝ այդ վիթխարի շատրվանները, որոնք ջուրը նետում են մի քանի տասնյակ մետր հեռավորության վրա, խանգարվում են քամուց: Երբ ջրի շիթը ցայտում է քամու հոսանքի հակառակ ուղղությամբ: Օդի հոսանքը քշում-տանում է կաթիլները և գետնին է թափվում ջրի շատ փոքր մասը միայն: Հաճախ հարկ է լինում շրջագծային անձրևացումից անցնել հատվածայինի, այսինքն՝ անձրև տեղալ միայն քամու հոսանքի ուղղությամբ: Բանը նրանում է, որ շիթի անկման անկյունը պետք է լինի տարբեր: Գյուտարար Ա. Ջերոտարևի ստեղծած «Парус» սարքը ավտոմատ կերպով փոփոխում է ջրաշիթերի անկման անկյունը, քամու ուժին ու ուղղությանը համապատասխան: Արհեստական անձրևը թափվում է շատ հավասարաչափ: Այդ սարքով կարելի է ցանքը ջրել ուզած ժամանակ, անկախ եղանակից:*

## ՈՒՍՈՒՑԻՉ-ՌՈԲՈՏԸ

*Որքան էլ տարօրինակ է այս բառակապակցությունը, կրթության սիստեմի շատ մասնագետների կարծիքով հեռու չէ ուսուցող մեքենաների դարը: Ավելի ու ավելի հաճախ են ի հայտ գալիս այդ նպատակին ծառայող կոնստրուկցիաներ: Առանձնապես հետաքրքրական է դրանցից մեկը՝ չեխոսլովակյան «Тесла» ձեռնարկությունում պատրաստված «Ունիտատորը»:*

*Այն հիմնված է «նայիր, լսիր, պատասխանիր» պարզագույն սիստեմի վրա, որի շնորհիվ ռոբոտը պիտանի է ինչպես բոլոր առարկաների, այնպես էլ ընդհանուր և մասնավոր բնույթի հարցերի ուսումնասիրման համար: Պետք է միայն պատրաստել ուսումնական ծրագիրը, որը ֆոտոծածկագրով գրվում է կինոժապավենի կողաեզրերին:*

*Մեկ ծրագիրը քսանչորս ժամվա համար է: Սովորողները, նախ՝ հնչյունային դիաֆիլմի միջոցով ծանոթանում են առարկային. դրան հետևում է առարկայի յուրացման ստուգումը: Մեքենայի էկրանի վրա երևում են հարցերը: Պատասխանը տրվում է կա՛մ «պատասխանի այդ տարբերակին համաձայն եմ» ստեղի սեղմամբ, կա՛մ հավաքվում է տառաթվային ստեղնաշարի վրա:*

*Ստանալով պատասխանը՝ մեքենան ո՛չ միայն ստուգում է դրա ճշտությունը, այլև արժեքավորում այդ հարցի իմացության կարևորությունը: Չեխոսլովակյան մասնագետների ուսումնասիրությունները ցույց են տվել, որ դասավանդման սովորական մեթոդների հետ համեմատած, «Ունիտատորի» օգտագործմամբ 3—4 անգամ կրճատվում է նյութի յուրացման ժամկետը:*

## ՎԻՐՈՒՍՆԵՐԻ ԹՇՆԱՄԻՆ՝ ԲԱՄԲԱԿԸ

*Հայտնի է, որ մի քանի վիրուսներ (նաև այնպիսի վտանգավոր հիվանդությունների, ինչպիսիք են՝ պոլիոմիելիտը և ծաղիկը) բամբակյա գործվածքներում իրենց կենսունակությունը պահպանում են 3—5 օր, բրդյա գործվածքներում՝ 5 ամիս: Քիմիական մաքրման ենթարկված բամբակյա գործվածքներում վիրուսները մեկ օրում ոչնչանում են:*